## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՈՒՍՈՒՑՄԱՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏՆԵՐԻՆ ԵՎ ՈՒՆԿՆԴԻՐՆԵՐԻՆ

1970-71 ուսումնական տարում «Միջազգային հարաբերությունները», ինչպես և «Տնտեսագիտության հիմունքները» ուսումնասիրողների համար մեր ամսագրում, այս համարից սկսած, իբրև դասընթաց, հրապարակվում են ծրագրային նյութերը՝ հոդվածներով։

### ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ուսսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Սույն կանոնները խախտողների հոդվածները կմնան անհետևանք։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

9 | ՍԵՊՏԵՄԲԵՐ 1970

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов» — теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԱԴՐԲԵՋԱՆԻ ԱԶԳԱՅԻՆ ՄԵԾ ՏՈՆԸ



ՀՈԴՎԱԾՆԵՐ



ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ



ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ



ԴԵՊԻ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ 50-ԱՄՅԱԿԸ



ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ



ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ



ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ



ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՅԱՆՔԸ



ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ԳՐՔԵՐԻ ՄԱՍԻՆ



ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ

# Содержание





# ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԱԴՐԲԵՋԱՆԻ ԱԶԳԱՅԻՆ ՄԵԾ ՏՈՆԸ

## ԼԵՆԻՆԻ ԴՐՈՇՈՎ, ԵՂԲԱՅՐՈՒԹՅԱՆ ԴԱՇԻՆՔՈՎ

Եվ առաջինը Արևելքում,
բարիկադների վրա
Հոկտեմբերի,
Բարձրացավ Ադրբեջանը:
*Վ. ՄԱՅԱԿՈՎՍԿԻ*

Սովետական Ադրբեջանի հինավուրց, բայց նորոգ հողում ցնծություն է, համաժողովրդական տոնախմբություն: Եղբայրական ժողովուրդը հանդիսավորությամբ նշում է իր ազգային վերածննդի մեծ տոնը, Ադրբեջանում սովետական իշխանության հաստատման և իր մարտական ավանգարդի՝ Ադրբեջանի կոմունիստական կուսակցության հիմնադրման հիսնամյակը:

Ադրբեջանական ժողովրդի այդ փառապանծ հոբելյանը նաև մեր սոցիալիստական հայրենիքի բոլոր ազգերի ու ազգությունների տոնն է, կոմունիզմ կառուցող ժողովուրդների լենինյան բարեկամության ու եղբայրության հավերժացման տոնը:

Մարդկության պատմության մեջ կան արժանահիշատակ տարեթվեր ու իրադարձություններ, որոնք բախտորոշ նշանակություն ունեն յուրաքանչյուր ժողովրդի համար և ուղենշում են նրա կյանքի կտրուկ շրջադարձերը: Հենց այդպիսին է ադրբեջանական ժողովրդի համար 1920 թվականի ապրիլի 28-ը, երբ նրա մայր հողի վրա ծառացեց նոր կյանքի արշալույսը, երբ Կասպիականի ափերից մինչև Կովկասյան լեռնաշղթայի փեշերն ու Թալիշի լեռները հաղթականորեն ծածանվեց մեծ Հոկտեմբերի ազատարար դրոշը:

Իրականացան եղբայրական ժողովրդի լավագույն զավակների լուսավոր երազանքները. երկիրը դարձավ ազատ ու անկախ, փշրվեցին սոցիալական ու ազգային հարստահարման դարավոր կապանքները: Աշխատավոր մարդը դարձավ իր բախտի լիակատար տերն ու տնօրենը, ձեռք բերեց իսկական երջանկություն, նրա առջև բացվեցին սոցիալիստական զարգացման հրապուրիչ հեռանկարներ:

Սովետական ժողովրդի համերաշխ ընտանիքում Լենինի կրկնակի շքանշանակիր Ադրբեջանն անցել է կեսդարյա հերոսական ճանապարհ:

Կես դա՛ր: Պատմական առումով դա կարճ ժամանակահատված է: Սակայն հեղափոխական իրադարձությունների հարստությամբ, արմատական վերափոխումների ծավալով և լուծված խնդիրների վեհությամբ ադրբեջանական ժո-

ղովրդի բազմադարյա պատմության մեջ այն նշանավորում է մի ամբողջ դարաշրջան:

Դա նոր կյանքի ու ապրելակերպի համար եղբայրական ժողովրդի հերոսական մաքառումների ու մեծագույն փորձությունների, սխրալից աշխատանքի և նվաճված բարձունքների մի պերճախոս տարեգրություն է, լենինյան ազգային քաղաքականության կենսահաստատ ուժի ակնառու մարմնավորում: Սովետական Ադրբեջանը վառ օրինակն է այն բանի, թե ինչի կարող է հասնել շահագործման ու ճնշման շղթաները թոթափած և լենինյան ուսմունքով տոգորված ժողովուրդը:

Գեղեցիկ զուգադիպություն: Սովետական Ադրբեջանի հիսնամյակը նշվում է լենինյան հոբելյանական տարում, խորհրդանշելով Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության, լենինիզմի մեծ, վերափոխիչ դերը ադրբեջանական ժողովրդի պատմական ճակատագրում: Վլադիմիր Իլյիչ Լենինի անվան հետ է սերտորեն առնչվում Ադրբեջանի աշխատավորների և, հատկապես, Բաքվի պրոլետարիատի հերոսական պայքարն ընդդեմ ցարական ինքնակալության, կապիտալիստների ու կալվածատերերի, հանուն սոցիալական արդարության ու ազգային ազատագրության, հանուն երկրում սովետական իշխանության հաստատման ու ամրապնդման:

Բաքվի ինտերնացիոնալ պրոլետարիատը, որի շարքերում մարտնչել են ադրբեջանցիներն ու հայերը, ռուսներն ու վրացիները, Կովկասի լեռնականները, հերոսական էջեր է գրել Ռուսաստանի հեղափոխական շարժումների պատմության մեջ: Լենինը բարձր է գնահատել Բաքվի պրոլետարիատի հեղափոխական ելույթները, նրա մարտական ոգին և դասակարգային հասունությունը: Նա, որ մշտապես հետևել և ուղղություն է տվել Անդրկովկասի, այդ թվում Բաքվի բոլշևիկների գործունեությանը, բազմիցս ընդգծել է, որ Սև քաղաքի բոլշևիկյան կազմակերպությունը հանդիսանում է մեր կուսակցության առաջավոր ու մարտական ջոկատներից մեկը, Անդրկովկասում պրոլետարական ինտերնացիոնալիզմի ջահակիրը:

Այդ նրանք, Բաքվի բոլշևիկ-լենինյաններն են գլխավորել հին աշխարհի դեմ Ադրբեջանի բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիների հերոսական գոտեմարտերը ռուսական առաջին հեղափոխության, ռեակցիայի ու բանվորական շարժման նոր վերելքի տարիներին, կազմակերպել գործադուլային հուզումները և գյուղացիական ընդվզումները, առաջնորդել մասսաներին դեպի սոցիալիստական հեղափոխություն:

Իրավամբ Բաքուն եղել է Անդրկովկասի աշխատավորական զանգվածների հեղափոխական պայքարի դարբնոցը, բոլշևիզմի կովկասյան ամրոցը: Այստեղ, բազմազգ պրոլետարիատի ինտերնացիոնալ շարքերում աճել ու կոփվել է լենինյան գվարդիայի մի փառավոր կոհորտա, հանձինս Ստ. Շահումյանի, Մ. Ազիզբեկովի, Բ. Կնունյանցի, Ի. Ֆիոլետովի, Ա. Ջափարիձեի, Ս. Սպանդարյանի, Ն. Նարիմանովի, Ի. Ստալինի, Ալ. Մյասնիկյանի, Գ. Օրջոնիկիձեի, Ա. Միկոյանի և շատ ուրիշների:

Բաքվի պրոլետարիատն Արևելքում առաջինը բարձրացրեց մեծ Հոկտեմբերի դրոշը: 1917 թ. նոյեմբերի 13-ին Բաքվում հռչակվեց սովետական իշխանություն, որը շուտով տարածվեց Ադրբեջանի մի շարք գավառներում: Բարձր գնահատելով Բաքվի բոլշևիկների գործունեությունը, Ստ. Շահումյանին հղած հեռագրում Լենինը գրել է. «Մենք հիացած ենք Ձեր վճռական ու հաստատակամ քաղաքականությամբ»:



Օրհասական ծանր մարտեր էր մղում Բաքվի կոմունան անգլիական, գերմանական և թուրքական ինտերվենտների, օտարերկրյա նավթային մոնոպոլիաների ու ներքին հակահեղափոխական միացյալ ուժերի դեմ: Մարտն անհավասար էր և ռեակցիայի գերակշիռ ուժերի ճնշման տակ 1918 թ. հուլիսի 31-ին առժամանակ պարտվեց սովետական իշխանությունն Ադրբեջանում:

Վրա հասան օտարերկրյա օկուպանտների և նրանց մարիոնետային մուսաֆաթական «կառավարության» տիրապետության մղձավանջային ծանր տարիները: Նրանք նենգաբար գլխատեցին կոմունիզմի քաջարի մարտիկներ, հավատարիմ լենինյաններ Բաքվի 26 կոմիսարներին: Բայց նրանք չկարողացան ծնկի բերել հեղափոխական զոռ մարտերում կոփված բանվոր դասակարգին ու նրա ավանգարդին:

Երկրում հասունանում էր հեղափոխությունը, սպասվում էին վճռական գոտեմարտեր: Սովետական իշխանության հաղթանակի համար մղվող պայքարում հսկայական նշանակություն ունեցավ Ադրբեջանի կոմունիստական կուսակցության ստեղծումը, որի հիմնադիր առաջին համագումարը տեղի ունեցավ 1920 թ. փետրվարին:

1920 թ. ապրիլի վերջերին ապստամբեցին Ադրբեջանի աշխատավորները, որոնց օգնության հասավ XI կարմիր բանակը: Երկրի իսկական տերերը՝ բանվորներն ու գյուղացիները իշխանությունը վերցրին իրենց ձեռքը: Ադրբեջանում ժողովրդական իշխանության հաստատումը նոր թափ հաղորդեց Հայաստանի ու Վրաստանի աշխատավորական զանգվածների հեղափոխական շարժումներին, Ադրբեջանի վրայով ռուս ժողովուրդը օգնեց նրանց ազատագրվելու օտարերկրյա իմպերիալիստների ու նրանց վարձկանների՝ դաշնակցականների ու մենշևիկների լծից:

Ջերմորեն ողջունելով երկրում սովետական իշխանության հաղթանակը, Վ. Ի. Լենինը Ադրբեջանի աշխատավորների առջև խնդիր դրեց ամեն կերպ ամրապնդել Ադրբեջանի և Ռուսաստանի բանվորների ու գյուղացիների դաշինքը: Հենց լենինյան այդ պատգամած դաշինքն էլ դարձավ ադրբեջանական ժողովրդի հզոր ուժը, նրա հուսալի հենարանը տնտեսության վերականգնման ու սոցիալիստական բուռն շինարարության տարիներին:

Հեղափոխության հաղթանակից հետո Ադրբեջանի կոմունիստների առջև ծառացան նոր խնդիրներ: Անհրաժեշտ էր արագորեն վերականգնել ժողովրդական տնտեսությունը, վերաշինել ավերվածը: Նավթի հանույթը կրճատվել էր երեք անգամ, անկման եզրին էին հասել գյուղատնտեսությունը, տրանսպորտը:

Եվ սկսվեց համառ ու տքնաջան աշխատանքը: Հանրապետության էկոնոմիկայի առաջատար ճյուղի՝ նավթարդյունաբերության վերականգնումն ընթանում էր դասակարգային սուր պայքարի պայմաններում. թշնամին հրկիզում էր նավթահորերը, խափանում սարքավորումները: Ադրբեջանական ժողովուրդը ապավինած Ռուսաստանի և սովետական մյուս հանրապետությունների եղբայրական օգնությանն ու աջակցությանը, ոչ միայն կարճ ժամանակամիջոցում վերականգնեց էկոնոմիկան, այլև շինարարական ու ոռոգման խոշոր աշխատանքներ ծավալեց, ինչպես պատգամել էր Վ. Ի. Լենինը 1921 թ. ապրիլին Կովկասի կոմունիստներին հղած իր ծրագրային նամակում:

Անցած հիսուն տարում հիմնովին փոխվել է Սովետական Ադրբեջանի համայնապատկերը, կատարվել են սոցիալ-քաղաքական, տնտեսական խոշոր տեղաշարժեր: Երկրի նյութական ու հոգևոր ուժերի աննախընթաց զարգացման

շնորհիվ ցարական Ռուսաստանի երբեմնի հետամնաց ծայրամասը վերածվել է ծաղկուն սոցիալիստական հանրապետության՝ բարձր զարգացման հասած բազմաճյուղ արդյունաբերությամբ, առաջավոր գյուղատնտեսությամբ. նա դարձել է լույսի ու գիտության երկիր:

Նախասովետական Ադրբեջանում փաստորեն գոյություն ուներ ինդուստրիայի միայն մեկ ճյուղ՝ նավթարդյունաբերությունը, որում ներդրված կապիտալի 56 տոկոսը բաժին էր ընկնում օտարերկրյա մոնոպոլիաներին: Արդյունաբերության մյուս ճյուղերը ներկայացված էին մի քանի տասնյակ տնայնագործական բնույթի արհեստանոցներով: Պարադոքս է, բայց փաստ: Անցյալում Բաքուն հանդիսանում էր նավթի արդյունաբերության համաշխարհային կենտրոններից մեկը, XX դարի սկզբին նա տալիս էր մեր մոլորակի նավթի հանույթի շուրջ կեսը: Չնայած դրան, Ադրբեջանը հարկադրված էր դրսից ներմուծել իրեն անհրաժեշտ արդյունաբերական համարյա բոլոր ապրանքները, արուրքները:

Հնգամյակների տարիներին կառուցվեցին հարյուրավոր ժամանակակից խոշոր գործարաններ, ֆաբրիկաներ, էլեկտրակայաններ, տրանսպորտային ուղիներ, շահագործման հանձնվեցին նոր հանքավայրեր: Դրանց շնորհիվ խոր փոփոխություններ տեղի ունեցան հանրապետության արդյունաբերության կառուցվածքում:

Ինդուստրիայի առաջատար ճյուղը եղել ու մնում է նավթի արդյունաբերությունը: Արդի տեխնիկայի վերջին խոսքով հիմնովին վերակառուցվել է արդյունաբերության այդ ճյուղը. նավթ է արդյունահանվում Կասպից ծովի հատակից, ստեղծվել է գազի արդյունաբերություն: 1913 թ. 7,7 միլիոն տոննայի դիմաց ընթացիկ տարվա միայն առաջին կիսամյակում արդյունահանվել է 10,1 միլիոն տոննա նավթ և 2,8 միլիարդ խոր. մետր գազ:

Ստեղծվել են արդյունաբերության բոլորովին նոր, ժամանակակից քսան ճյուղեր, ինչպիսիք են՝ մեքենաշինությունն ու սարքաշինությունը, սև ու գունավոր մետաղաձուլությունը, նավթաքիմիան, ռադիոտեխնիկան, լեռնահանքային ու շինանյութերի արդյունաբերությունը, էլեկտրատեխնիկան: Բարձր զարգացման է հասել թեթև ու սննդի արդյունաբերությունը:

Արմատական տեղաշարժեր են կատարվել արդյունաբերական օջախների տեղաբաշխման մեջ: Եթե անցյալում արդյունաբերությունը հիմնականում կենտրոնացված էր Բաքվում (վերջինս տալիս էր Ադրբեջանի արդյունաբերական արտադրանքի 91 տոկոսը), ապա ներկայումս մայրաքաղաքի տեսակարար կշիռն իջել է 50 տոկոսի: Հանրապետության քարտեզի վրա վերջին 15—20 տարում երևան են եկել արդյունաբերական նոր, խոշոր կենտրոններ, ինչպիսիք են Սումգայիթը, Կիրովաբադ-Դաշքեսանը, Մինգեչաուր-Եվլաղը, Ալի Բայրամլի-Սալյան արդյունաբերական հանգույցները և այլն:

Բացի նավթից ու նավթանյութերից, Ադրբեջանը արտադրում է բազմատեսակ մեքենաներ ու սարքավորումներ, պողպատ ու գլանվածք, պողպատե խողովակներ, ալյումին, քիմիական բազմաթիվ նյութեր ու ապրանքներ, տրանսֆորմատորներ ու պոմպեր, բամբակյա, բրդյա և մետաքսյա գործվածքներ: Նա տալիս է ՍՍՀՄ-ում արտադրվող նավթի սարքավորումների 46 տոկոսը: Համատարած էլեկտրիֆիկացման է ենթարկվել Ադրբեջանը. անցյալ տարի այստեղ արտադրվել է 12 միլիարդ կիլովատ ժամ էլեկտրաէներգիա՝ 1913 թ. 111 միլիոնի դիմաց: Էներգազինվածությամբ նա մրցում է աշխարհի զարգացած կապիտալիստական բազմաթիվ երկրների հետ:



Բարձր են արդյունաբերության զարգացման տեմպերը: 1913 թ. համեմատությամբ արդյունաբերության համախառն արտադրանքի արտադրության ծավալը ավելացել է 69,6 անգամ կամ բանվորական մեկ շաբաթում այժմ արտադրվում է այնքան արդյունաբերական արտադրանք, որքան թողարկվել է ամբողջ 1921 թ.:

Սովետական Ադրբեջանը վաղուց դուրս է եկել համաշխարհային շուկա: Նրա մակնիշով արտադրված ավելի քան երեք հարյուր արդյունաբերական արտադրատեսակներ առաքվում են արտասահմանյան վաթսուն երկրներ: Ադրբեջանական շինվածքներն ու ապրանքները մեծ պահանջարկ ունեն բոլոր մայր ցամաքներում և դրանցից շատերը հասել են համաշխարհային ստանդարտին:

Իսկական հեղաշրջում է կատարվել ադրբեջանական գյուղում, անճանաչելիորեն փոխվել է նրա դեմքը: Հուշ է դարձել կիսաֆեոդալական հարաբերություններով կաշկանդված գյուղը՝ իր խղճուկ հյուղակներով ու հին բարքերով: Սոցիալիզմը աշխատավոր գյուղացիներին դուրս բերեց զարգացման լայն ճանապարհ, նրանց հաղորդակից դարձրեց գիտությանն ու մշակույթին. հողի աշխատավորը ճաշակեց ազատ աշխատանքի ողջ հմայքը, բերկրանքը: Ներկայումս իրենց նիստ ու կացով, կենցաղով, կրթական մակարդակով շատ քիչ բանով են նրանք տարբերվում քաղաքի բնակիչներից:

Գյուղատնտեսական արտադրությունը դրված է գիտական հիմքի վրա, մեքենայացվել ու էլեկտրիֆիկացվել են աշխատատար պրոցեսները: Համայնական դաշտերում ներկայումս գործում են 44 հազար տրակտոր, 4700 հացահատիկային կոմբայն, 1500 բամբակահավաք մեքենա, 20 հազար բեռնատար ավտոմեքենա և մեծ թվով գյուղատնտեսական այլ մեքենաներ ու սարքավորումներ: Կոլտնտեսություններում ու սովխոզներում աշխատում են բարձրագույն ու միջնակարգ կրթությամբ տասնյակ հազարավոր մասնագետներ՝ գյուղատնտեսներ, անասնաբույժներ և անասնաբույծներ, մեխանիզատորներ, ինժեներներ: Ջրաշինարարական խոշոր աշխատանքների շնորհիվ մշակելի հողատարածությունները անցյալի համեմատությամբ ավելացել են 2,5 անգամ:

Ադրբեջանական հողի աշխատավորների քրտնաջան աշխատանքով տարեցտարի բարձրանում է բամբակենու, հացահատիկային կուլտուրաների, ծխախոտի, թեյի, մերձարևադարձային կուլտուրաների, այգիների բերքատվությունը և անասնապահության մթերատվությունը:

Բարձր զարգացման է հասել ադրբեջանական ժողովրդի հոգևոր մշակույթը: Ծաղկում է ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան: Սոցիալիստական շինարարության տարիներին ամբողջ խորությամբ իրագործվեց կուլտուրական հեղափոխությունը: Վերացվեց անգրագիտությունը (ի դեպ, մինչ հեղափոխությունը բնակչության 90 տոկոսը անգրագետ էր), բոլոր պայմանները ստեղծվեցին կրթության, գիտության ու կուլտուրայի զարգացման համար:

Այժմ հանրապետության բնակիչների համարյա երեքից մեկը սովորում է: Հանրակրթական դպրոցներում ուսանում են մեկ միլիոն 350 հազար երեխաներ, իսկ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում՝ 112 հազար պատանիներ ու աղջիկներ: Եթե 1921 թ. ադրբեջանցիներից ընդամենը 65 մարդ ուներ բարձրագույն կրթության դիպլոմ, ապա միայն ընթացիկ տարում բուհերն ավարտեցին 15 հազար երիտասարդներ: Ավելին, ներկայումս ժողովրդական տնտեսության մեջ հաջողությամբ աշխատում են շուրջ 250 հազար դիպլոմավոր մասնագետներ:

Ամեն մի գյուղ ու ավան ունի իր դպրոցը, իր մշակույթի օջախը, գրադարանը. կինոն, ռադիոն ու հեռուստատեսությունը վաղուց դարձել են քաղաքի ու գյուղի աշխատավորների առօրյա կյանքի բաղկացուցիչ տարրեր:

Հանրապետության գիտական մտքի կենտրոնն է գիտությունների ակադեմիան, գործում են 130 գիտահետազոտական ինստիտուտներ՝ 16,6 հազար գիտական աշխատողներով: Ադրբեջանի գիտնականները հաջողությամբ լուծում են ժողովրդատնտեսական նշանակություն ունեցող խոշոր պրոբլեմներ, տեսական կարևորագույն հարցեր:

Բարգավաճում են ադրբեջանական ժողովրդի արվեստն ու գրականությունը, ստեղծվել են գեղարվեստական սքանչելի երկեր, մեր ժամանակներին արժանի երաժշտական գործեր, թատերական և օպերային բարձրարվեստ ներկայացումներ:

Խոշոր գործ է կատարվել ժողովրդական առողջապահության, սոցիալական ապահովության, ֆիզիկական կուլտուրայի ու սպորտի զարգացման, քաղաքաշինության բնագավառներում:

Աշխատավորների նյութական-կենցաղային պայմանների, բժշկական դրվածքի կտրուկ բարելավման շնորհիվ Ադրբեջանում վաղուց վերացվել են համաճարակային, վարակիչ և սոցիալական շատ հիվանդություններ, խիստ կրճատվել է մահացությունը: Սովետական Միությունում Ադրբեջանն առաջինն է ալեհեր բնակիչների թվով. մեկ միլիոն բնակչին ընկնում է 840 մարդ, որոնք ունեն հարյուր և ավելի տարիք:

Սովետական իշխանության մեծագույն նվաճումներից մեկն էլ՝ դա ադրբեջանուհիների ազատագրումն է կիսաստրկական վիճակից, նրանց մուտքը հասարակական-քաղաքական լայն ասպարեզ: Անցյալում բնակչության կես մասը, այն է՝ կանայք, իրավազուրկ էին, չէին մասնակցում արտադրությանը, լիովին կտրված էին հասարակական-քաղաքական կյանքից, զամված օրօրոցին ու խոհանոցին: Ներկայումս կանայք կազմում են ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բանվոր-ծառայողների 40 տոկոսը, գիտական աշխատողների՝ 37 տոկոսը: Բազմաթիվ կանայք պետական, կուսակցական և տնտեսական խոշոր գործիչներ են, արտադրության հրամանատարներ: Հազարավոր կանայք ընտրվել են Միության, հանրապետության և տեղական սովետների դեպուտատներ, արժանացել են կառավարական բարձր պարգևների, կոչումների, դարձել են սոցիալիստական աշխատանքի հերոսներ:

Անտարակույս, հոյակապ են եղբայրական ադրբեջանական ժողովրդի նվաճումները տնտեսության և կուլտուրայի զարգացման բոլոր ոլորտներում, տարեցտարի նա մեծացնում է իր ավանդը կոմունիստական շինարարության ընդհանուր գործում: Ինչպես առաջին հնգամյակների, խաղաղ շինարարության, այնպես էլ Հայրենական պատերազմի դժվարին տարիներին արևաշող Ադրբեջանի որդիներն ու դուստրերը արիաբար մարտնչել են նոր կյանքի կառուցման, ֆաշիստական ոսոխների դեմ հաղթանակը կոփելու համար: Մեր օրերում սովետական բոլոր ժողովուրդների հետ համաքայլ նրանք ընթանում են դեպի իրենց լուսաշող գալիքը, համատեղ ջանքերով իրականացնում ՍՄԿԿ XXIII համագումարի վիթխարի կանխագծումները:

Այդ հաջողությունների հուսալի գրավականը, նրանց ուժի հորդառատ աղբյուրը եղել ու մնում են մեր հասարակության մեջ հաստատված ազգերի հավասարության, լենինյան բարեկամության, փոխադարձ օգնության և համագործակցության հարաբերությունները: Կոմունիզմի կառուցման համար



համատեղ ստեղծագործական աշխատանքը կայուն հիմքեր է ստեղծել սովետական բոլոր ժողովուրդների ապրելակերպի հետագա բարգավաճման և նրանց կուլտուրաների առավել մերձեցման համար:

Դարերի խորքից է գալիս հայ և ադրբեջանցի ժողովուրդների բարեկամությունը, որը դիմացել է ժամանակի ծանր փորձություններին: Նրանք համատեղ կենաց ու մահու կռիվ են մղել օտար ոսոխների դեմ ու երազել լուսավոր ապագայի մասին, միասին բաժանել վիշտն ու ուրախությունը, բանվորական գծերում ու գյուղացիական ապստամբական ջոկատներում գրոհել ինքնակալության ու սեփական կեղեքիչների դեմ, դաժան մարտերում միասին կռել մեր այսօրվա պատմական հաղթանակը:

Պատմությանը հայտնի են երկու բախտակից ժողովուրդների իսկական եղբայրության ու բարեկամության սրտառուչ բազմաթիվ փաստեր: Սակայն այդ դաշինքը նոր իմաստ ու բովանդակություն ստացավ սոցիալիզմի կառուցման հերոսական տարիներին: Բաքվի 26 կոմիսարների պարզած պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշը, որն այնպես բարձր պահեց ու առաջ տարավ ավագ սերունդը, այժմ գտնվում է կոմունիզմ կառուցողների անպարտ բանակի հուսալի ձեռքերում:

Կոմունիստական շինարարության բոլոր մարզերում արդյունավետ համագործակցում են մեր ժողովուրդները: Հայերն ու ադրբեջանցիները փոխադարձաբար օգնում են միմյանց կառուցելու արդյունաբերական ձեռնարկություններ, ջրանցքներ, էլեկտրակայաններ, բարձրացնելու հանրային դաշտերի բերքատվությունը: Նրանց միջև ամրացող տնտեսական համագործակցությունը և կապերը, գիտական-կուլտուրական արժեքների մշտական փոխանակությունն ավելի սերտացրել ու ցեմենտել է եղբայրական երկու ժողովուրդների հավիտենական և անխախտ բարեկամությունը:

Երկու ժողովուրդների միջև ստեղծվել է բազմակողմանի և արդյունավետ տնտեսական համագործակցություն, մի բան, որ նպաստում է նրանց ազգային էկոնոմիկայի արագաքայլ զարգացմանը: Ադրբեջանական ՍՍՀ-ից մեր հանրապետություն են ներմուծվում տասնյակ արդյունաբերական ապրանքներ և գյուղատնտեսական հումք, ինչպես, օրինակ, նավթ, նավթամթերքներ, պողպատյա խողովակներ, մետաղներ, հորատման սարքավորումներ, բազմատեսակ առաջնակարգ մեքենաներ, կենցաղային իրեր և այլն: Հայաստանի մեծ քիմիայի, էլեկտրատեխնիկական, հաստոցաշինության ու սարքաշինության, թեթև ու սննդի արդյունաբերության արտադրանքը լայն կիրառություն ունի Ադրբեջանում:

Բարեկամության հրաշալի կոթողներ են Բաքու—Թբիլիսի—Երևան գազամուղը, Սումգայիթը, Արփա—Սևան ստորերկրյա ուղին, Մինգեչաուրի հիդրոհանգույցը, Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատը: Այդ բարեկամությունը դրսևորվում է նաև երկու հանրապետությունների առանձին քաղաքների ու շրջանների, արդյունաբերական ձեռնարկությունների ու կոլտնտեսությունների, գիտական հաստատությունների միջև ծավալվող սոցիալիստական մրցության մեջ: Մրցում են Կիրովաբադի և Լենինականի տեքստիլագործները, Սումգայիթի և Կիրովականի քիմիագործները, Լաչինի ու Գորիսի, Ղափանի ու Կուբաթլուի շրջանների հողի աշխատավորները և այլն: Ավանդույթ են դարձել մրցակիցների փոխայցելությունները, որոնց ժամանակ կատարվում է առաջավոր փորձի փոխանակություն:

Օր-օրի ամրապնդվում են հայ-ադրբեջանական մշակութային կապերը,

ընդլայնվում գիտական և կուլտուրական արժեքների փոխանակությունը: Դա, անկասկած, նպաստում է ազգային կուլտուրաների հարստացմանն ու զարգացմանը, մերձեցնում ժողովուրդներին:

Գրողները, կոմպոզիտորները, նկարիչները, երաժշտական և թատերական կոլեկտիվները պարբերաբար ու փոխադարձաբար այցելում են միմյանց, իրենց ստեղծագործություններով, համերգներով ու ներկայացումներով հանդես գալիս աշխատավորների առջև: Բարեկամական ամուր կապեր են հաստատվել եղբայրական երկու հանրապետությունների միջև, որոնք համատեղ ջանքերով լուծում են գիտատեխնիկական կարևորագույն պրոբլեմներ:

Հայ ընթերցողը մայրենի լեզվով կարդում է ադրբեջանցի անվանի գրողների բարձրարվեստ ստեղծագործությունները: Միայն 1928—1969 թթ. մեր հանրապետության հրատարակչությունները լույս են ընծայել ադրբեջանական հեղինակների 419 անուն գիրք՝ 625 հազար ընդհանուր տպաքանակով:

Դարեր ի վեր հայկական լեռնաշխարհում կողք-կողքի, որպես մի գերդաստանի հարազատ զավակներ, համերաշխ ապրում և համատեղ ուժերով իրենց հայրենի ոստանն են շենացնում հայերն ու ադրբեջանցիները, աշխատանքային սխրանքներով փառաբանում իրենց հանրապետությունը:

Սովետական Հայաստանում բնակվող ադրբեջանցի աշխատավորներն իրենց մայրենի լեզվով ընթերցում են հանրապետական ու շրջանային թերթերը, ունկնդրում են Երևանի ռադիոկայանից տրվող հաղորդումները, դիտում ադրբեջանական պետական դրամատիկական թատրոնի ներկայացումները: Բազմաթիվ ադրբեջանցի երիտասարդներ սովորում են հանրապետության բարձրագույն ու միջնակարգ ուսումնական հաստատություններում: Միաժամանակ Խ. Աբովյանի մանկավարժական ինստիտուտն ունի ադրբեջանական ֆակուլտետ, գործում է գյուղատնտեսական ադրբեջանական տեխնիկում: Հանրապետական 221 ադրբեջանական դպրոցներում սովորում են շուրջ 40 հազար երեխաներ:

Մեր խնդիրն է աչքի լույսի պես պահպանել և մշտապես ամրապնդել սոցիալիզմի կառուցման հերոսական տարիներին առավել զոդված հայ և ադրբեջանցի ժողովուրդների լենինյան բարեկամությունը:

Սովետական Ադրբեջանի աշխատավորները սերտորեն համախմբված լենինյան կուսակցության շուրջը, ջանքեր չեն խնայում ՍՄԿԿ XXIV համագումարը նշանավորել նորանոր նվաճումներով, հաջողությամբ եզրափակել ութերորդ հնգամյակը: Նրանք լի են վճռականությամբ, ստեղծագործական քրտնաջան գործերով է՛լ ավելի շենացնելու իրենց երկիրը, ավելի հզորացնելու սոցիալիստական մեծ Հայրենիքը:

Կ. Ա. ԽԱԼԻԼՈՎ

Ադրբեջանական ՍՍՀ Գերագույն սովետի
նախագահության նախագահ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ 50 ՏԱՐԻՆԵՐ

*Ադրբեջանի բանվորներն ու գյուղացիները կես դար առաջ զենքը ձեռքին, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, Սովետական Ռուսաստանի եղբայրական օգնությամբ ադրբեջանական հինավուրց հողի վրա ծածանեցին Հոկտեմբերի կարմիր դրոշը:*

*«Ամբողջ իշխանությունը երկրում անցավ աշխատավոր դասակարգերի ձեռքը, Ադրբեջանի բանվորների և գյուղացիների համար բացվեց նոր, պայծառ դարագլուխ»: Ժամանակավոր հեղափոխական կոմիտեն 1920 թվականի ապրիլի 28-ին այս խոսքերով դիմեց Ադրբեջանի ամբողջ բնակչությանը: Այսպես սկսվեց ադրբեջանական ժողովրդի նոր պատմության առաջին էջը:*

*Մեր հանրապետության աշխատավորները սովետական իշխանության հաստատման և կոմունիստական կուսակցության ստեղծման կեսդարյա հոբելյանը նշում են խորապես ուրախալի և հանդիսավոր տարում՝ կոմունիստական կուսակցության հիմնադրի, սովետական պետության ստեղծողի, ողջ աշխարհի աշխատավորության մեծ առաջնորդի և ուսուցչի՝ Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 100-ամյակի տարում:*

*Սովետական իշխանությունն Ադրբեջանում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության ծնունդն է: Վ. Ի. Լենինը կանգնած էր Բաքվի փառապանծ պրոլետարիատի հեղափոխական շարժման, Ադրբեջանի բոլշևիկյան կազմակերպության օրրանի մոտ: Նա էր ուղղություն տալիս ադրբեջանական ժողովրդին՝ սովետական իշխանության համար նրա հաղթական պայքարում: Մեր ժողովուրդն իր սրտում վառ է պահում անսահման սերն ու երախտապարտության զգացմունքը մեծ Լենինի նկատմամբ, որի անմահ հանճարով է լուսավորված Ադրբեջանի բանվորների և աշխատավոր գյուղացիների պայքարի ողջ պատմությունը, պայքար, որ նրանք մղում էին հանուն իրենց սոցիալական և ազգային ազատագրության, հանուն Ադրբեջանական Սովետական Սոցիալիստական Հանրապետության ստեղծման, զարգացման ու բարգավաճման:*

*Ադրբեջանի բանվորական շարժումը սկզբից ևեթ համառուսական*

հեղափոխական շարժման անբաժանելի մասն է եղել, որի դրոշակակիրը ռուսական պրոլետարիատն էր։ Ադրբեջանում հեղափոխական սոցիալ-դեմոկրատական կազմակերպություն ստեղծելու գործում աչքի ընկնող դեր են խաղացել ռուս բանվորները— հեղափոխականները, որոնք աշխատավոր մասսաների շրջանում տարածում էին լենինյան ճշմարտության կենարար խոսքը։

Իր բախտը կապելով ռուս և Ռուսաստանի մյուս ժողովուրդների ճակատագրի հետ, ադրբեջանական ժողովուրդը նրանց հետ մեկտեղ պայքարում էր ցարիզմի, կալվածատերերի և կապիտալիստների ճնշման դեմ։ Ադրբեջանում դասակարգային պայքարի ընթացքում բոլշևիկների ղեկավարությամբ կոփվում էր տարբեր ազգությունների բանվորների մարտական միասնությունը, կուտակվում էր ինտերնացիոնալ աշխատանքի և ազգային հարցի լենինյան լուծման հիանալի փորձը։

Մեծ նշանակություն տալով Բաքվի պրոլետարիատի հեղափոխական պայքարին, Վ. Ի. Լենինը Բաքու էր ուղարկում բոլշևիկյան կուսակցության լավագույն ուժերին, հայրական հոգատարություն և ուշադրություն էր ցուցաբերում ադրբեջանցի, հայ, վրացի և Կովկասի մյուս ազգություններին պատկանող առաջավոր բանվորներից հեղափոխականների շարքերը համալրելու գործին։

Բաքվի բոլշևիկյան կազմակերպությունն Ադրբեջանի պրոլետարական հեղափոխության շարժման մարտական ոգին էր։ Նրա հաստատակամությունն ու արիությունը ռուսական երեք հեղափոխությունների բոցերում, ցարիզմի և կապիտալիզմի դեմ մղած կատաղի մարտերում կոփում էին բոլշևիկների լենինյան փառապանծ գվարդիայի ներկայացուցիչները։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը սոցիալական ու ազգային ազատագրության պայքարի հզոր վերելք առաջացրեց Ռուսաստանի բոլոր ժողովուրդների մեջ։ Անդրկովկասում առաջինը Բաքվի հեղափոխական պրոլետարիատը կանգնեց մեծ Հոկտեմբերի դրոշի ներքո։ Արդեն 1917 թվականի հոկտեմբերի 31-ին Բաքվի սովետի ընդլայնված նիստը հաստատակամորեն վճռեց երկրում իշխանությունը վերցնել սովետների ձեռքը։

Սակայն, ձգտելով ամեն կերպ ճնշել ադրբեջանական ժողովրդի հեղափոխական պոռթկումը, սոցիալիստական հեղափոխությունը զրկել Բաքվի նավթային ռեսուրսներից, միջազգային իմպերիալիզմը անհապաղ մոբիլիզացրեց ու միավորեց ռեակցիայի և հակահեղափոխության բոլոր ուժերը։ Չնայած պրոլետարական Բաքվի պաշտպանների հերոսական դիմադրությանը, արիության հրաշքներին, 1918 թվականի հուլիսի վերջին սովետական իշխանությունը ժամանակավորապես ընկավ։

Անդրկովկասում սոցիալիստական հեղափոխության հաղթական դրոշը բարձրացրած հիանալի հեղափոխական բոլշևիկները՝ Ստեփան Շահումյանը, Մեշադի Ազիզբեկովը, Ալյոշա Ջափարիձեն, Իվան Ֆիոլետովը և Բաքվի մյուս կոմիսարները գազանաբար գնդակահարվեցին անգլիական իմպերիալիզմի գործակալների կողմից։ Անդրկովկասի և մեր ողջ հայրենիքի աշխատավորները երբեք չեն մոռանա հեղափոխության հերոսներին. նրանց անունները կանցնեն սերնդից սերունդ որպես հեղափոխությանը, պրոլետարական ինտերնացիոնալիզմին և ժողովուրդների բարեկամությանն անձնուրացաբար ծառայելու օրինակ։

Բայց Ադրբեջանի բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության հեղափոխական ուժերը չջլատվեցին։ 1920 թվականի փետրվարի 11—12-ին



Բաքվում, ընդհատակի պայմաններում, կայացավ Ադրբեջանի կոմունիստների առաջին (հիմնադիր) համագումարը, որը ստեղծեց Ադրբեջանի կոմունիստական (բոլշևիկների) կուսակցությունը։ Համագումարը բանաձև ընդունեց բանվորների և գյուղացիների վճռական ելույթի անհրաժեշտության մասին և կուսակցությունը վճռեց զինված ապստամբության կուրս վերցնել։

1920 թվականի ապրիլի 27-ի լույս 28-ի գիշերը, ապստամբած աշխատավոր ժողովուրդը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ տապալեց բուրժուական մուսավաթական կառավարությունը։ Ադրբեջանի վրա ծածանվեց կարմիր դրոշը։ Ստեղծված ժամանակավոր հեղափոխական կոմիտեն, որը ղեկավարում էր հավատարիմ լենինյան Նարիման Նարիմանովը, դիմեց Ռուսաստանի կառավարությանը, Վլադիմիր Իլյիչ Լենինին, խնդրելով օգնություն ցույց տալ հակահեղափոխության ուժերի դեմ մղած պայքարում։ Կատարելով իր ինտերնացիոնալ հեղափոխական միսիան, Սովետական Ադրբեջանին օգնության հասավ լեգենդար 11-րդ կարմիր բանակը։

Սկսվեց ադրբեջանական ժողովրդի կյանքի նոր, սովետական պատմությունը, նրա նյութական ու հոգևոր ուժերի ծաղկումը։

Ինչպես սովետների ողջ երկրի, այնպես և Ադրբեջանի աշխատավորները, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ ձեռնամուխ եղան սոցիալիստական վերափոխությունների կենսագործմանը։ Սովետական իշխանությունը ստրկությունից ազատագրված ժողովրդի մեջ ի հայտ բերեց ստեղծագործական ունակություններ ու տաղանդներ։ 1921 թվականի մայիսին սովետների առաջին համաադրբեջանական համագումարն ընդունեց Ադրբեջանական ՍՍՀ սահմանադրությունը, որն ամրապնդեց սովետական իշխանության նվաճումները Ադրբեջանում։

Սովետական իշխանության ամրապնդման, սոցիալիստական վերափոխությունների համար մղված պայքարի տարիներին Վ. Ի. Լենինը սերտ կապ էր պահպանում Ադրբեջանի կոմունիստների հետ։ Ադրբեջանի կոմունիստների, ինչպես և Կովկասի բոլոր կոմունիստական կազմակերպությունների գործունեության համար անգնահատելի ծրագրային նշանակություն ունեցավ Վ. Ի. Լենինի 1921 թ. ապրիլի 14-ի՝ «Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների հանրապետության կոմունիստ ընկերներին» նամակը։

Սոցիալիստական շինարարության բոլոր փուլերում Ադրբեջանի կոմունիստական կուսակցությունը հաստատակամորեն և անշեղորեն կիրառել է կուսակցության լենինյան գլխավոր գիծը, զգոն կերպով կանգնել կուսակցության շարքերի մոնոլիտ միասնության դիրքերում։

Վ. Ի. Լենինը գտնում էր, որ Ադրբեջանը պետք է դառնա ամեն բանով օրինակելի հանրապետություն։ Դա կլինի,— ասում էր նա,— մեր գործի լավագույն ագիտացիան, լավագույն պրոպագանդան ողջ հսկայական, բազմազգ Արևելքում։

Շնորհիվ բանվորների ու տեխնիկական ինտելիգենցիայի անձնուրաց ստեղծագործական աշխատանքի, կոմունիստական կուսակցության ու սովետական կառավարության հոգատարության և օգնության, ամբողջ երկրի ժողովուրդների եղբայրական համագործակցության, Ադրբեջանը առաջին հնգամյակի տարիներին դարձավ բարձր զարգացած ինդուստրիալ հանրապետություն։ Աշխատանքային հերոսության վառ օրինակ էր Բաքվի նավթագործների կողմից առաջին հնգամյակի պլանի կատարումը երկու և կես տարում։

Գյուղատնտեսության սոցիալիստական զարգացման համար կարևորա-

գույն նշանակություն ունեցավ լենինյան կոոպերատիվ պլանի կենսագործումը։ Ադրբեջանը դարձավ համատարած կոլեկտիվացման հանրապետություն։ Կոլտնտեսային կարգը վերջ տվեց Ադրբեջանի գյուղատնտեսության դարավոր հետամնացությանը. սովետական իշխանության տարիներին այն մեքենայացվեց և դարձավ բազմաճյուղ։

Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ Ադրբեջանում կատարվեց իսկական կուլտուրական հեղափոխություն, որը աշխատավոր ժողովրդին պատմական կարճ ժամանակամիջոցում դուրս բերեց հետամնացության խավարից և նրան հաղորդակից դարձրեց գիտելիքներին, սոցիալիստական առաջավոր կուլտուրային ու գիտությանը։

Բայց մեր երկրի լայն ստեղծագործական աշխատանքը խախտվեց ֆաշիստական Գերմանիայի ուխտադրուժ հարձակմամբ։ Հայրենական պատերազմի առաջին իսկ օրերից ադրբեջանական ժողովուրդը սովետական բոլոր ժողովուրդների հետ ուս-ուսի պաշտպանեց սոցիալիստական հայրենիքի ազատությունը, պատիվն ու անկախությունը։ Բազմազգ Սովետական Ադրբեջանի ավելի քան 500 հազար որդիներ ու դուստրեր անկոտրում մարտնչում էին ռազմաճակատներում։ Հիտլերյան օկուպանտների դեմ մղվող մարտերում ցուցաբերած արիության ու հերոսության համար Ադրբեջանից մեկնած 114 մարտիկներ արժանացան Սովետական Միության հերոսի կոչման։

Հերոսության օրինակներ դրսևորեցին նաև թիկունքի աշխատավորները։ Ադրբեջանի նավթագործները 1941 թվականին հայրենիքին տվեցին ռեկորդային քանակության՝ ավելի քան 23,5 միլիոն տոննա նավթ։ Մեծ են Բաքվի և բաքվեցիների ծառայությունները թշնամու դեմ տարած հաղթանակում։ Բաքուն սովետական բանակի հզոր զինանոցն էր։ Նա տվեց սովետական նավթի գրեթե երեք քառորդը, արտադրեց 130 տեսակ զինամթերք, սպառազինություն, հանդերձանք։

Ետպատերազմյան տարիները Ադրբեջանի սոցիալիստական էկոնոմիկայի և կուլտուրայի աննախընթաց վերելքի ժամանակաշրջանը դարձան։

ՍՄԿԿ XXIII համագումարը նոր փուլ նշանավորեց մեր հանրապետության, ինչպես և ողջ երկրի զարգացման համար։ Նա որոշեց հանրապետության բոլոր աշխատավորների մարտական խնդիրները սոցիալիստական արտադրության հետագա զարգացման, աշխատավորների աճող նյութական ու կուլտուրական պահանջմունքների ապահովման համար մղվող պայքարում։

Մեր պատմության 50 տարիները ողջ ժողովրդի անձնվեր, համառ աշխատանքի տարիներ են։ Անցած ուղու վրա հայացք գցելիս ակամա համակվում ես հպարտության գիտակցությամբ այն իսկապես վիթխարի աշխատանքի համար, որ կատարել է մեր ժողովուրդը ներկայիս բարձունքները նվաճելիս։

Ադրբեջանի համար ավանդութային ինդուստրիայի՝ նավթահանման և նավթամշակման հետ մեկտեղ մենք այսօր ունենք հզոր քիմիական, գազի, էներգետիկական, մետաղագործական, մեքենաշինական, թեթև, սննդի և մի շարք այլ ճյուղային հզոր արդյունաբերություն։ 50 տարվա ընթացքում հանրապետությունում գործարկվել են ավելի քան 300 խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ, ինդուստրիայի համախառն արտադրանքն ավելացել է 70 անգամ։ Ներկայումս յուրաքանչյուր 12 օրում մենք տալիս ենք այնքան արդյունաբերական արտադրանք, որքան արտադրում էր նախահեղափոխական Ադրբեջանը մեկ տարվա ընթացքում։ Էլեկտրաէներգիայի արտադրությունը նախահեղափոխական ժամանակաշրջանի համեմատ աճել է 105 անգամ։ 1913 թվա-



կանի համեմատությամբ 363 անգամ աճել է մեքենաշինության ու մետաղամշակման արտադրանքը։ Նավթամթերքներից բացի հանրապետությունը արտադրում է պողպատ, գլանվածք, նավթային սարքավորումներ, էլեկտրաշարժիչներ, տուրբինային հորատիչներ, պողպատե խողովակներ, շարժական հորատիչներ, ագրեգատներ, խորքային պոմպեր, ճշգրիտ սարքեր, տրանսֆորմատորներ, առանցքակալներ, ավտոդողեր, ռադիոսարքավորումներ, հեռուստացույցներ, ցեմենտ, գործվածքեղեն և ծանր ու թեթև արդյունաբերության շատ ու շատ այլ արտադրանքներ։ Կար ժամանակ, երբ Ադրբեջանը նույնիսկ լուցկի ու մեխ էր ներմուծում։ Ներկայումս հանրապետությունը շուրջ 300 արդյունաբերական արտադրանք է արտահանում աշխարհի 56 երկրներ։

Անչափ աճել և որակապես փոխվել է Ադրբեջանի բանվոր դասակարգը՝ սովետական բանվոր դասակարգի խոշոր ջոկատներից մեկը։

Արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության զարգացման հաջողությունները նպաստեցին հանրապետության աշխատավորների կենսամակարդակի բարելավմանն ու նյութական բարեկեցության բարձրացմանը։ Դա մեր հասարակության զարգացման օրենքն է։ Կուլտուր-կենցաղային շինարարության լայն թափը, աշխատավարձի մշտական աճը, բժշկական սպասարկման բարելավումը, կենսաթոշակներով ապահովելը սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման՝ կուսակցության և պետության մշտական հոգատարության ցայտուն վկայությունն են։ 1920 թվականի համեմատությամբ, հանրապետության հասարակական բնակելի ֆոնդն ավելացավ գրեթե 10 անգամ և հասավ 23,6 միլիոն քառ. մետրի։ Շատ գյուղեր դարձել են քաղաքատիպ բարեկարգ խոշոր ավաններ։ Ներկայումս հիվանդանոցային մահճակալները 42 անգամ ավելի են, քան 1913 թվականին. բժիշկների թիվը կես դարում ավելացել է 35 անգամ. այժմ առողջապահության սիստեմում աշխատում են 12,4 հազար բժիշկ և 38,5 հազար միջին բուժանձնակազմ։ Սովետական Ադրբեջանը երկարակյացների թվով աշխարհում առաջին տեղերից մեկն է գրավում։

Հսկայական հաջողությունների է հասել ադրբեջանական ժողովուրդը կուլտուրական շինարարության բնագավառում։ Բերենք մի քանի փաստեր։ Եթե մինչև հեղափոխությունն Ադրբեջանի բնակչության ճնշող մեծամասնությունն անգրագետ էր, ապա այժմ մենք կարող ենք համարձակ ասել, որ մեր հանրապետությունը համատարած գրագիտության երկիր է։ Ուսումնական բոլոր հաստատություններում այժմ սովորում են մեկ ու կես միլիոն պատանիներ ու աղջիկներ, իսկ դա նշանակում է, որ հանրապետության յուրաքանչյուր երրորդ քաղաքացին սովորում է։

Առաջներում որևէ ժողովրդի կուլտուրական մակարդակը որոշելու համար՝ որպես ցուցանիշ վերցնում էին բնակչության մեկ շնչին ընկնող օգտագործած օճառի քանակը։ Այժմ սոցիոլոգները հաճախ ցուցանիշ են ընտրում գիրքը։ Այսպես, հանրապետությունում հրատարակվող գրքերի տպաքանակը, 1913 թվականի համեմատությամբ, ավելացել է 73 անգամ, իսկ ադրբեջաներեն լույս տեսած գրքերինը՝ 90։ Հանրապետության գաղափարական-քաղաքական կյանքում կարևոր իրադարձություն հանդիսացավ վերջերս Վ. Ի. Լենինի երկերի չորրորդ հրատարակության 45 հատորների լույս ընծայումը ադրբեջաներեն։

Մինչև հեղափոխությունը Ադրբեջանում չկար գիտական որևէ հիմնարկություն, ներկայումս Ադրբեջանական գիտությունների ակադեմիայի գլխավորած

136 գիտահետազոտական հաստատություններում գիտնականների բազմահազարանոց բանակ է աշխատում։

Սովետական իշխանության տարիներին իր բազմազանությամբ ու գեղեցկությամբ ծաղկել է ադրբեջանական արվեստը։ Մեր շատ կոմպոզիտորների, նկարիչների, գրողների երկերը, վոկալիստների, նվագողների, խորեոգրաֆիկ անսամբլների կատարողական վարպետությունը ճանաչում են գտել ոչ միայն մեր երկրում, այլև նրա սահմաններից դուրս։

Արմատական փոփոխություններ են տեղի ունեցել Ադրբեջանի կանանց հասարակական-սոցիալական դրության մեջ։ Մեր կանայք երկրի հասարակական-քաղաքական, տնտեսական և կուլտուրական կյանքի ակտիվ մասնակիցներն են դարձել։ Ներկայումս հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ կանայք բանվորների և ծառայողների ընդհանուր թվի գրեթե 40 տոկոսն են կազմում։ Բարձրագույն և միջնակարգ կրթություն ունեցող մասնագետների 41,4 տոկոսը կանայք են։ Վերջիններիս թվում կան 973 գիտությունների դոկտորներ և թեկնածուներ, 192 կանանց շնորհվել է սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում, 145 կին ՍՍՀՄ Գերագույն սովետի և Ադրբեջանական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատներ են։

Հանրապետության աշխատավորները բոլոր հիմքերն ունեն հպարտանալու էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման, ժողովրդական բարեկեցության բնագավառներում ձեռք բերված նվաճումներով։ Այդ նվաճումների համար Ադրբեջանական ՍՍՀ-ն պարգևատրվել է Լենինի երկու շքանշանով։ Լենինի շքանշանով են պարգևատրվել Նախիջևանի ԱՍՍՀ-ն և Լեռնային-Ղարաբաղի ինքնավար մարզը։ Սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր կոչման են արժանացել 476 հոգի։ Սովետական Միության շքանշաններ են ստացել 39 արդյունաբերական ու շինարարական ձեռնարկություններ, կոլտնտեսություններ ու սովխոզներ, գիտության, կուլտուրայի, լուսավորական հիմնարկներ։

Հսկայական են Սովետական Ադրբեջանի հաջողությունները 50 տարում։ Սակայն մենք չենք կարող բավարարվել ձեռք բերված արդյունքներով։ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևն ընդգծել է. «Մենք, կոմունիստներ ենք, մենք առաջ կընթանանք, մենք առավելին ենք ձգտում, և որքան էլ դժվար լինեն մեր առջև ծառացած ու ծառացող խնդիրները, կլուծենք դրանք»։

ՍՄԿԿ XXIII համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների պատմական որոշումների լույսի տակ, Ադրբեջանի կոմկուսակցության Կենտկոմի՝ 1969 թվականի օգոստոսին և դեկտեմբերին, 1970 թվականի մարտին և օգոստոսին կայացած պլենումներում քննադատորեն խոր ու բազմակողմանի վերլուծվեցին արդյունաբերության ու գյուղատնտեսության աշխատանքը, կուսակցական, սովետական և տնտեսական օրգանների գործունեությունը, մշակվեցին և կենսագործվում են կոնկրետ միջոցառումներ արագ վերացնելու աշխատանքում տեղ գտած թերությունները, հաջողությամբ կատարելու հանրապետության առջև ծառացած տնտեսական ու քաղաքական խնդիրները։

Այդ առումով մեզ համար գործողության ծրագիր դարձան ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1969 թ.) և հուլիսյան (1970 թ.) պլենումների որոշումները։ Այժմ մեզ մոտ, հանրապետությունում քաղաքական ու կազմակերպական մեծ աշխատանք է տարվում ընթացիկ հնգամյակը հաջողությամբ ավարտելու և ՍՄԿԿ XXIV համագումարն արժանավայել դիմավորելու նպատակով բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ինտելիգենցիայի ջանքերի մոբիլիզացման համար։ Պետք է ասել, որ Ադրբեջանի կոմունիստները, բոլոր աշխատավորները մեծ ոգևորությամբ ընկալեցին ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը՝ ՍՄԿԿ հերթական համագումար հրավիրելու մասին։ Համագումար հրավիրելու լուրը քաղաքական ու աշխատանքային մեծ վերելք առաջացրեց հանրապետության բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ինտելիգենցիայի շարքերում։ Օրեցօր ավելի շատ արտադրական կոլեկտիվներ են ներգրավվում նախահամագումարյան հերթափոխության մեջ։ Շատ ֆաբրիկաների, գործարանների, կառույցների, կուլտուրական հիմնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատավորներ պարտավորվում են ապահովել հնգամյա պլանի գերակատարումը, համագումարը դիմավորել աշխատանքային բարձր ցուցանիշներով։



Մեծ են մեր հեռանկարները նոր հնգամյակում։ Այն պետք է դառնա արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի և աշխատավորների կենսամակարդակի մեծ վերելքի ժամանակաշրջան։ Հնգամյա պլանի կենսագործմամբ մեր հանրապետությունը ավելի ևս կամրապնդի իր էկոնոմիկան, կընդլայնի տնտեսական կապերը մյուս միութենական հանրապետությունների հետ, ավելի ակտիվորեն կմասնակցի արտասահմանյան երկրների հետ ՍՍՀՄ տնտեսական ու առևտրական կապերին։

Ինչպես հայտնի է, վերջին տարիներին սովետների դերը կոմունիստական շինարարության խնդիրների լուծման գործում զգալիորեն աճել է։ Աճել ու բարդացել են սովետների խնդիրները նրանց գործունեության հենց այն բնագավառներում, որոնք ամբողջովին կապված են բնակչության նյութական ու հոգևոր պահանջմունքների բավարարման, այսինքն՝ տնտեսական-կազմակերպչական և կուլտուր-դաստիարակչական գործունեության հետ։ Գյուղատնտեսության արտադրական վարչությունների վերակառուցումը, դրանց ներգրավումը շրջանային սովետների գործկոմների սիստեմում՝ շրջանում բարձրացրին վերջինների պատասխանատվությունը գյուղատնտեսության զարգացման համար, նրանց դերը կոլտնտեսությունների և սովխոզների կյանքում։ Տեղական սովետների դերի բարձրացումը զգալի չափով նպաստեց դեպուտատների և ակտիվիստների աշխատանքի աշխուժացմանը։ Մեզ մոտ տեղական սովետներում այժմ հաշվվում է 45 հազար դեպուտատ, որոնց գիտելիքները, կենսափորձը ուղղված են հանրապետության աշխատավորների առջև ծառացած ամենահրատապ խնդիրների լուծմանը։

ՍՍՀՄ Գերագույն սովետի վերջին ընտրությունները, կոմունիստների և անկուսակցականների բլոկի, սոցիալիստական դեմոկրատիայի հաղթանակի արտահայտությունն են։ Այդ ընտրությունները մեկ անգամ ևս ցուցադրեցին սովետական ժողովրդի համախմբվածությունը կոմունիստական կուսակցության շուրջը, ժողովրդի և կուսակցության շահերի միասնությունը։ Ակտիվ ընտրական կամպանիայի ընթացքում մեզ մոտ մի անգամ ևս դրսևորվեց պետական իշխանության բոլոր օրգանների՝ տեղական սովետներից սկսած մինչև հանրապետության գերագույն սովետի գործունեությունը։

Սովետական Ադրբեջանի զարգացման 50-ամյա հանրագումարը լենինյան ազգային քաղաքականության մեծ ուժի ցայտուն վկայություններից է։ Սովետական իշխանությունն ուղի հարթեց ազգերի մերձեցման, ժողովուրդների միջև բարեկամության ու եղբայրության ամրապնդման համար։ Միայն այդ բարեկամության շնորհիվ Ադրբեջանը պատմական կարճ ժամանակամիջոցում հասավ այդպիսի վիթխարի աճի։ Հանրապետության ժողովրդական տնտեսու-

թյան մեջ չկա այնպիսի մի ճյուղ, ուր իրենց ավանդը մուծած չլինեն մյուս հանրապետությունների ու երկրի տարբեր շրջանների աշխատավորները։

Ադրբեջանական և հայ ժողովուրդների բարեկամությունը պատմական խոր արմատներ ունի։ Այդ բարեկամությունը լենինյան գաղափարների կենսագործման համար մղված պայքարի պրոցեսում հարստացավ սոցիալիստական նոր բովանդակությամբ։ Մենք երախտապարտ ենք եղբայրական Սովետական Հայաստանին, նրա տաղանդավոր, աշխատասեր ժողովրդին, որը մեր երկրի մյուս ժողովուրդների հետ մեկտեղ, ակտիվորեն օգնել է Սովետական Ադրբեջանին ժողովրդական տնտեսության զարգացման, նոր կյանքի կառուցմանը։

Մեր ժողովուրդների բարեկամության հիանալի դրսևորումը սոցիալիստական մրցությունն է։ Եղբայրացել և ահա երկար տարիներ միմյանց օգնելով մրցում են Կիրովաբադն ու Լենինականը, Սումգայիթն ու Կիրովականը, Թոուզի ու Ղափանի, Շամշադինի ու Իջևանի շրջանները։ Այդ բարեկամությունը, եղբայրական օգնությունը՝ փոխադարձ ըմբռնում է, փոխադարձ հարստացում։

Ուրախությամբ և հպարտությամբ նշելով Սովետական Ադրբեջանի և Ադրբեջանի կոմունիստական կուսակցության 50 տարին, մեր հանրապետության աշխատավորները վստահ են նայում վաղվա օրվան։ Ադրբեջանի յուրաքանչյուր աշխատավորի համար ավելի պարզորոշ է դառնում կոմունիզմի վեհաշուք շենքը, որը մենք կառուցում ենք Լենինի մեծ կուսակցության իմաստուն ղեկավարությամբ։

Ընթանալով լենինյան ուղիով,— ասված է Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի թեզիսներում,— Սովետական Միության կոմկուսը կոմունիզմի կառուցման գլխավոր խնդիրը նախ և առաջ տեսնում է նրա նյութատեխնիկական բազայի ստեղծման մեջ։ Կուսակցության տնտեսական քաղաքականության էությունն այն է, որ գիտության ու տեխնիկայի նվաճումների համակողմանի օգտագործման, ամբողջ հանրային արտադրության ինդուստրիալ զարգացման, նրա արդյունավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա ապահովվի արդյունաբերության հետագա նշանակալից աճ, գյուղատնտեսության զարգացման կայուն, արագ տեմպեր և դրա շնորհիվ հասնի ժողովրդի կենսամակարդակի էական բարձրացման, սովետական բոլոր մարդկանց նյութական ու կուլտուրական պահանջմունքների առավել լրիվ բավարարման։

Կոմունիստական շինարարության՝ կուսակցության առաջադրած խնդիրների լուծման գործում Սովետական Ադրբեջանի ողջ բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը և մտավորականությունը մասսայական հերոսության օրինակներ են տալիս ու նորանոր հաջողություններ ձեռք բերում։

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՄԵԾ ԳՈՐԾ

Մ. Ս. ՄԵԼՔՈՆՅԱՆ

ՀԿԿ Կենտկոմի քարտուղար

Սովետական ժողովուրդը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ հաջողությամբ ավարտում է ընթացիկ հնգամյա պլանի կատարումը։ Մեր երկրի բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և մտավորականության ջանքերով հնգամյակի տարիներին խոշոր հաջողություններ են ձեռք բերվել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի, ինչպես նաև կուլտուրայի ու գիտության զարգացման, աշխատավորների բարեկեցության բարձրացման գործում։ Հնգամյակի տարիներին մեր հայրենիքը նոր բարձունքների հասավ կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման գործում։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հուլիսյան (1970 թ.) պլենումը քննարկեց ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման կարևոր բնագավառներից մեկի՝ գյուղատնտեսության արտադրության նյութատեխնիկական բազայի հետագա ամրապնդման հարցը։ Պլենումը միահամուռ հավանություն տվեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևի՝ «Կուսակցության հերթական խնդիրները գյուղատնտեսության բնագավառում» զեկուցման մեջ շարադրված հետևություններին, ընդունեց ծրագրային որոշում։

Պլենումը գոհունակությամբ նշեց, որ կատարելով կուսակցության XXIII համագումարի որոշումները, գյուղի աշխատավորները քաղաքի աշխատավորության ակտիվ աջակցությամբ հնգամյակի տարիներին հասան գյուղատնտեսական արտադրության հետագա վերելքի։ Գյուղատնտեսական մթերքների տարեկան միջին համախառն արտադրանքը 1966—1969 թթ. կազմեց 79 միլիարդ ռուբլի, որը 12,7 միլիարդ ռուբլով ավելի է, քան նախորդ հնգամյակում։

Այդ տարիներին հացահատիկի միջին տարեկան համախառն արտադրանքը, նախորդ հնգամյակի միջին տարեկանի համեմատությամբ, ավելացավ 32 միլիոն տոննայով։ Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացումը տեղի ունեցավ հիմնականում բերքատվության բարձրացման շնորհիվ։ Հացահատիկի միջին բերքատվությունը նախորդ տարիների 8—10 ցենտների դիմաց միջին հաշվով երկրում հասավ 13,2 ցենտների։ Նույնպիսի քանակական և որակական առաջընթաց տեղի ունեցավ նաև անասնաբուծության զարգացման բնագավառում։ Նույն ժամանակամիջոցում մսի արտադրու-

թյան տարեկան միջին աճը երկրում կազմեց 2,1 միլիոն տոննա, կաթինը՝ 15,3 միլիոն տոննա, ձվինը՝ 5,8 միլիարդ հատ, բրդինը՝ 31 հազար տոննա։

Այդ հաջողությունները հողերի քիմիացման, մելիորացման և գյուղատնտեսության արտադրության կոմպլեքսային մեքենայացման, կոլտնտեսությունների և սովխոզների զարգացման գործում տնտեսական խթանների բարձրացման՝ կուսակցության մշակած ծրագրի իրագործման արգասիքն են։

Զգալի չափով ավելացավ գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումների ծավալը։ Ոռոգվող հողատարածությունները 4 տարվա ընթացքում երկրում ընդարձակվեցին 1,2 միլիոն հեկտարով և չորացվեցին 3,1 միլիոն հեկտար գերխոնավ հողատարածություններ։ Այդ տարիներին կոլտնտեսություններին ու սովխոզներին մատակարարվել է 1,8 անգամ շատ հանքային պարարտանյութ, 251 հազարով ավելի տրակտոր, 55 հազարով ավելի հացահատիկի կոմբայն, 168 հազարով ավելի բեռնատար ավտոմեքենա, 1 միլիարդ 100 միլիոն ռուբլու արժողությամբ ավելի գյուղատնտեսական այլ մեքենաներ և գործիքներ, քան նախորդ քառամյակում։

Կոլտնտեսություններն ու սովխոզները ամրապնդվել են տնտեսապես և կազմակերպչորեն, ավելացել են նրանց եկամուտները։ Գյուղերում մեծ աշխատանք է կատարված բնակարանային, կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարության ուղղությամբ։ Զգալիորեն բարելավվել է գյուղի աշխատավորության նյութական և կուլտուրական բարեկեցությունը։

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը միաժամանակ նշեց, որ ձեռք բերած հաջողությունների հետ միասին ծագում են կարևոր, խոշոր մասշտաբների նոր խնդիրներ, որոնք պետք է ստանան իրենց լուծումը։

Սոցիալիզմի կառուցումը մեր երկրում և աշխատավորության ստեղծագործական բեղմնավոր աշխատանքը կոմունիստական հասարակարգի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում, բնականաբար, բարձրացրել են ժողովրդի նյութական բարեկեցությունը և նրա բազմակողմանի պահանջարկները։ Եթե գյուղատնտեսության զարգացման արդյունքները գնահատելու լինենք երկրի սննդամթերքների և արդյունաբերության հումքի հարաճուն պահանջմունքները բավարարելու առումով, ապա գյուղատնտեսության արտադրության ներկա մակարդակը բավարար համարել չի կարելի։ Հացահատիկի, բամբակի, կարտոֆիլի, բանջարեղենի, մրգի արտադրությունը վերջին տարիներին դանդաղ է ավելանում, իսկ անասնաբուծական մթերքների և, հատկապես, մսի նկատմամբ բնակչության կարիքները դեռևս լրիվ չեն բավարարվում։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը ընդգծեց, որ դեռ շատ տնտեսություններում վատ է օգտագործվում գյուղատնտեսական տեխնիկան, խախտվում են նրանց շահագործման կանոնները, որը հանգեցնում է դրանց ժամկետից շուտ դուրսգրմանը. վատ են օգտագործվում հողային ռեսուրսները։ Դեռևս ցածր է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասունների մթերատվությունը։ Գյուղատնտեսական, սովետական և կուսակցական որոշ օրգաններ թուլացրել են ղեկավարությունը և հսկողությունը կոլտնտեսությունների և սովխոզների ֆինանսա-տնտեսական գործունեության նկատմամբ։

Պլենումը միաժամանակ նշեց, որ վերջին տարիների ընթացքում մի շարք պատճառներով երկրի գյուղատնտեսությանը չեն հատկացվել պլանով նախատեսված չափի կապիտալ ներդրումներ և գյուղատնտեսական տեխնիկա, չեն կատարվել հանքային պարարտանյութերի արտադրության նոր կարողությունների շահագործման հանձնման առաջադրանքները, որը բացասաբար է անդրադարձել գյուղատնտեսության զարգացման վրա։



Հողագործության և անասնապահական մթերքների արտադրության հետագա ավելացման շահերը հրամայաբար պահանջում են արագ կերպով ամրապնդելու գյուղատնտեսության նյութատեխնիկական բազան և ըստ ամենայնի հագեցնել նրա տեխնիկական զինվածությունը։

Պլենումում տված զեկուցման մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևը հանգամանորեն շարադրեց առաջիկա հնգամյակի տարիներին գյուղատնտեսական մթերքների արտադրության և վաճառքի հետագա ավելացման առաջադրանքները, գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի է՛լ ավելի ամրապնդման, գյուղում կապիտալ շինարարության ծավալման, գյուղատնտեսության քիմիացման աշխատանքների արագացման, հողերի մելիորացիայի, արտադրության կոմպլեքսային մեքենայացման և գյուղատնտեսության նկատմամբ կուսակցական օրգանների ղեկավարության բարելավման խնդիրները, որոնք միահամուռ հավանության արժանացան պլենումի կողմից։

Ամեն անգամ, երբ մեր կուսակցությունը և կառավարությունը քննարկում են գյուղատնտեսության զարգացման հարցերը, կապիտալիստական աշխարհում հերյուրանքներ են հորինում այն մասին, որ իբր մեր երկրում դժվարություններ են ստեղծվել մթերքների արտադրության գործում, որ սոցիալիստական գյուղատնտեսությունը իբր ի վիճակի չէ լուծելու իր առջև դրած խնդիրները և հաղթահարելու գոյություն ունեցող խոչընդոտները։ Դրանք, իհարկե, բացարձակ հերյուրանքներ են և ընդհանուր ոչինչ չունեն այն խնդիրների հետ, որոնք քննարկվում և լուծում են ստանում մեր կուսակցության և կառավարության կողմից։

Այն դժվարությունները, որոնց մասին խոսվում է մեզանում, միայն առաջընթացի, աճման դժվարություններ են։ Խոսքը վերաբերում է նրան, որ ավելի բարձրացվեն գյուղատնտեսական մթերքների արտադրության աճի տեմպերը։ Հենց այդ նպատակներին էր նվիրված մեր կուսակցության Կենտկոմի հուլիսյան պլենումը, որը ծրագրային որոշում ընդունեց առաջիկա հնգամյակի տարիներին ամրապնդելու գյուղատնտեսության արտադրության նյութատեխնիկական բազան, գյուղատնտեսությունը վերազինելու նոր, հզոր տեխնիկայով և այդ միջոցով հասնելու գյուղատնտեսության արտադրության բոլոր ճյուղերի ինտենսիվացմանը։ Պլենումի որոշումներին համապատասխան առաջիկա հնգամյակի տարիներին (1971—1975 թվականներին) երկրի գյուղատնտեսության մեջ միայն պետական կապիտալ ներդրումների ծավալը կկազմի 77,6 միլիարդ ռուբլի, բացի այդ, կոլտնտեսությունները իրենց միջոցներից կներդնեն 43 միլիարդ ռուբլի։ Գյուղատնտեսությունը 1975 թվականին կստանա 72 միլիոն տոննա հանքային պարարտանյութեր, ոռոգվող հողատարածությունները կավելանան 3 միլիոն հեկտարով և կչորացվեն 5 միլիոն հեկտար գերխոնավ հողատարածություններ, կոլտնտեսությունները և սովխոզները համարյա կրկնակի չափով ավելի տրակտորներ, կոմբայններ, բեռնատար ավտոմեքենաներ և գյուղատնտեսական այլ մեքենաներ ու գործիքներ կստանան, քան ստացել են ընթացիկ հնգամյակի տարիներին։

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումները նոր հեռանկարներ են բացում նաև Հայաստանի գյուղատնտեսության հետագա զարգացման համար։ Վերջին տարիների ընթացքում ինչպես ամբողջ երկրում, այնպես էլ Հայաս-

տանում որոշակի հաջողություններ են ձեռք բերվել գյուղատնտեսական մթերքների արտադրության և դրանց մթերումների բնագավառում:

Ընթացիկ հնգամյակի անցած չորս տարում՝ 1966—1969 թվականներին, նախորդ հնգամյակի 1961—1965 թվականների համեմատությամբ, հացահատիկի միջին տարեկան արտադրությունը ավելացավ 22 հազար տոննայով, շաքարի ճակնդեղինը՝ 11, կարտոֆիլինը՝ 12, բանջարեղենինը՝ 53, բոստանային մթերքներինը՝ 36, խաղողինը՝ 24 և պտուղներինը՝ 10 հազար տոննայով: Այդ նույն ժամանակամիջոցում ավելացել է հանրային անասունների գլխաքանակը: Մսի արտադրության միջին տարեկան աճը կազմեց 13 հազար տոննա, կաթինը՝ 36 հազար տոննա, ձվինը՝ 23 միլիոն հատ: 1969 թ., 1965 թ. համեմատությամբ, գյուղի աշխատավորների աշխատավարձը ավելացել է 22 տոկոսով:

Հանրապետության գյուղական վայրերում լայն թափ է ստացել բնակարանային և կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարությունը: 1966—1969 թվականներին պետական կապիտալ ներդրումների հաշվին կառուցվել է 240 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, բացի այդ կոլտնտեսականներն ու սովխոզների բանվորները սեփական միջոցներով կառուցել են մեկ միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն: Գյուղական վայրերում կառուցվել են բազմաթիվ դպրոցներ, ակումբներ, հիվանդանոցներ, մսուր-մանկապարտեզներ, բաղնիքներ և կենցաղային սպասարկման այլ օբյեկտներ:

Դրա հետ միասին անհրաժեշտ է նշել, որ ձեռք բերած այդ հաջողությունները չի կարելի գոհացուցիչ համարել, քանի որ հանրապետության շատ կոլտնտեսություններում և սովխոզներում դեռևս անբավարար են օգտագործվում եղած հնարավորությունները և արտադրության միջոցները: ՍՄԿԿ հուլիսյան պլենումում ընկ. Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ քննադատական լուրջ խոսք ասվեց նաև մեր հանրապետության անասնաբուծության ասպարեզում տեղ գտած թերությունների մասին: Միանգամայն արդարացի համարելով այդ քննադատությունը, միաժամանակ պետք է ուշադրություն հրավիրել այն բանի վրա, որ մենք էական թերություններ ունենք նաև գյուղատնտեսության արտադրության մյուս ճյուղերում: Բավական է նշել, որ 1966—1969 թվականներին հացահատիկային կուլտուրաների տարեկան միջին բերքատվությունը հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում կազմել է միայն 11,7 ցենտներ, կարտոֆիլինը՝ 102,7, բանջարեղենինը՝ 175,2, խաղողինը՝ 51,3 ցենտներ: Ցածր մակարդակի վրա է գտնվում անասունների մթերատվությունը: Կովերի տարեկան միջին կաթնատվությունը վերջին չորս տարիներին կազմեց միայն 1500 կգ., մեկ ոչխարի բրդատվությունը՝ 2 կգ., մեկ հավի ձվատվությունը՝ 110 հատ: Սրանք ցուցանիշներ են, որոնք պետք է մտահոգեն հանրապետության կուսակցական, սովետական և գյուղատնտեսական օրգաններին, կոլտնտեսությունների և սովխոզների աշխատավորներին: Մինչդեռ մեր հանրապետությունում կան բազմաթիվ կոլտնտեսություններ և սովխոզներ, որոնք ունեցած արտադրական միջոցների և ստեղծված պայմանների արդյունավետ ու խելացի օգտագործման, արտադրությունը գիտական հիմունքներով վարելու շնորհիվ ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել են 35—45 ցենտներ հացահատիկ, 180—200 ցենտներ կարտոֆիլ, 450—500 ցենտներ բանջարեղեն: Նույնը կարելի է ասել նաև անասունների մթերատվության մասին: Կովի միջին կաթնատվությունը շատ կոլտնտեսություններում և սովխոզներում հասել է 3500—4300 կիլոգրամի, ոչխարի բրդատվությունը՝ 3—3,5



կիլոգրամի, մեկ հավի ձվատվությունը՝ 150—200 հատի. դրանք 2—3 անգամով գերազանցում են հանրապետության միջին ցուցանիշները:

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը ուշադրություն հրավիրեց այն բանի վրա, որ գյուղատնտեսության զարգացման հանգուցային պրոբլեմը եղել և մնում է հացահատիկի արտադրության ըստ ամենայնի ավելացումը, քանի որ գյուղատնտեսության մյուս ճյուղերի և, հատկապես, անասնապահության զարգացումը անմիջականորեն կախված է հացահատիկային տնտեսության զարգացման մակարդակից:

Ցավոք, պետք է նշել, որ վերջին տարիներին հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում չափազանց դանդաղ է աճել հացահատիկի արտադրությունը: Դրա գլխավոր պատճառը հանրապետության շատ շրջաններում դեռևս չափազանց ցածր բերքատվությունն է: Այսպես. Կրասնոսելսկի, Ղուկասյանի, Եղեգնաձորի, Ամասիայի, Աբովյանի, Ապարանի, Իջևանի շրջաններում անցած չորս տարում հացահատիկի միջին տարեկան բերքատվությունը հեկտարից կազմել է ընդամենը 5—7 ցենտներ: Անհրաժեշտ է արմատապես փոխել վերաբերմունքը հացահատիկային տնտեսության նկատմամբ և կտրուկ միջոցների դիմել եղած թերությունները վերացնելու և հացահատիկի արտադրության գործում շրջադարձային բեկում ստեղծելու համար:

Վերջին տարիների ընթացքում հանրապետությունում որոշակի հաջողություններ են ձեռք բերվել կարտոֆիլի, բանջարեղենի, բոստանային մթերքների արտադրության բնագավառում: Երևանի և հանրապետության մյուս քաղաքների ու արդյունաբերական կենտրոնների շրջակայքում ստեղծվել են բանջարաբոստանային կուլտուրաների և վաղահաս կարտոֆիլի արտադրության մասնագիտացված տնտեսություններ, որոնք զգալի կերպով բարելավեցին բնակչության մատակարարումը այդ մթերքներով:

Անհրաժեշտ է նշել, որ այս բնագավառում ևս կան լուրջ թերություններ: Բազմաթիվ տնտեսություններում և, հատկապես, սովխոզներում ցածր է կարտոֆիլի և բանջարեղենի բերքատվությունը, դեռևս չեն լուծվել բանջարեղենի վաղ ժամկետներում արտադրության խնդիրները, չափազանց դանդաղ է ընթանում ջերմոցային տնտեսության ընդլայնումը:

Ինչպես հայտնի է, հանրապետության գյուղատնտեսության արտադրության մեջ խաղողագործությունը և պտղաբուծությունը առաջատար ճյուղեր են: Հետագայում ևս մթերքների համախառն արտադրության մեջ դրանց տեսակարար կշիռը պետք է բարձր լինի: Խաղողի և պտղատու այգիների տարածությունները զգալի չափով կընդարձակվեն հիմնականում նոր յուրացվող, ջրովի տարածությունների հաշվին: Առաջիկա հնգամյակի տարիներին նախատեսվում է մոտավորապես 1,5 անգամ ավելացնել խաղողի և պտուղների արտադրությունը: Սակայն պետք է նշել, որ դեռևս մեծ թերություններ կան նաև խաղողի, պտղի և բանջարեղենի մթերման, վերամշակման և իրացման գործում, որի հետևանքով երբեմն լինում են աճեցրած ու լավ բերքի խոշոր կորուստներ: Պահածոների գործարանների ներկա կարողությունները չեն ապահովում մասսայական բերքահավաքի ժամանակ հումքի անխափան ընդունումը:

Վերջին տարիների ընթացքում առևտրական կազմակերպությունները չեն կատարում բնակչությանը բանջարեղենի, խաղողի և պտուղների վաճառքի պլանները, չնայած այն բանին, որ այդ մթերքների արտադրության ծավալները լրիվ հնարավորություն են ստեղծում ավելի լավ սպասարկելու բնակչությանը: Ժամանակն է, որպեսզի հանրապետության պետպլանը, սննդի

արդյունաբերության և առևտրի մինիստրությունները ու Հայկոոպը պլանավորեն և իրականացնեն կոնկրետ միջոցառումներ՝ նոր պահեստային և սառնարանային տարողություններ ստեղծելու համար, այն հաշվով, որպեսզի լրիվ ապահովվի հնգամյա պլանով նախատեսված քանակությամբ կարտոֆիլի, բանջարեղենի, խաղողի, պտուղների մթերումը, պահպանումը և վաճառքը։

. ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հուլիսյան պլենումը հատուկ ուշադրություն նվիրեց անասնաբուծության հետագա զարգացման հարցերին։ Հանրապետության շատ շրջաններում, բազմաթիվ կոլտնտեսություններում և սովխոզներում պատշաճ ուշադրություն չի նվիրվում ինչպես անասունների գլխաքանակի ավելացման, այնպես և նրանց մթերատվության բարձրացման վրա։ Ապարանի, Հրազդանի, Իջևանի, Ստեփանավանի, Թումանյանի, Ամասիայի, Եղեգնաձորի, Թալինի և Սպիտակի շրջանների կոլտնտեսություններում և սովխոզներում վերջին տարիների ընթացքում անասունների գլխաքանակը գրեթե չի աճել, իսկ առանձին տնտեսություններում, նույնիսկ նվազել է։ Շատ տնտեսություններում դեռևս չափազանց ցածր է կովերի կաթնատվությունը. 1966—1969 թվականներին Ազիզբեկովի, Ապարանի, Վարդենիսի, Եղեգնաձորի, Իջևանի, Ղափանի, Մեղրու շրջանների կոլտնտեսություններում և սովխոզներում յուրաքանչյուր կովի կաթնատվությունը կազմեց ընդամենը 1000—1200 կգ.։ Մեղրու, Աբովյանի, Ապարանի, Ազիզբեկովի, Արտաշատի, Գորիսի, Իջևանի, Հրազդանի և Թալինի շրջաններում մսի արտադրությունն ընթացիկ հնգամյակի տարիներին համարյա չի ավելացել, իսկ առանձին տնտեսություններում պակասել է։

Մեր հանրապետության բազմաթիվ կոլտնտեսություններում և սովխոզներում մսի, կաթի, բրդի արտադրության դանդաղ աճը գերազանցապես հետևանք է կերի բազայի անբավարար վիճակի։

Կոլտնտեսությունների ու սովխոզների մեծ մասը սիստեմատիկ թերակատարել են կերի կուտակման պլանները։ Դրա հետևանքով հնարավոր չի եղել բավարարել հանրային հոտի կարիքը և որոշ քանակությամբ կեր առանձնացնել կոլտնտեսականների և սովխոզների բանվոր-ծառայողների սեփական անասունների համար։ Շատ կոլտնտեսություններում և սովխոզներում կերային կուլտուրաների բերքատվությունը շատ ցածր է։ Պատշաճ ուշադրություն չի նվիրվում բնական խոտհարքների և արոտավայրերի բերքատվության բարձրացման վրա։ Էական թերություններ կան նաև համակցված կերի արտադրության գործում, Երևանի համակցված կերի գործարանի արտադրանքը լիարժեք չէ, նրանում բացակայում են պահանջվող անհրաժեշտ կոմպոնենտներ։

Կերի արտադրության նման վիճակը լուրջ մտահոգության առարկա պիտի դառնա գյուղատնտեսության, մելիորացիայի և ջրային տնտեսության ու մթերումների մինիստրությունների, «Հայգյուղտնտեխնիկա» հանրապետական միավորման ղեկավարության և կուսակցական կազմակերպությունների համար։ Նրանք պետք է ակտիվ գործունեություն ծավալեն ամենակարճ ժամանակամիջոցում բարձր հիմքերի վրա դնելու կերի արտադրության գործը։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը մեր հանրապետության համար և սահմանեց առաջիկա հնգամյակում (1971—1975 թթ.) գյուղատնտեսական մթերքների արտադրության և պետական գնումների ու հանձնումների առաջադրանքները։ 1975 թվականին, 1970 թվականի համեմատությամբ, հանրապետությունում հացահատիկի պետական գնումներն ու մթերումները կավելանան 10, պտուղներինը՝ 58,3, խաղողինը՝ 25,0, կարտոֆիլինը՝ 71,6 տոկոսով, բանջարեղենինը՝



47,8, բոստանային կուլտուրաներինը՝ 70,0, մսինը՝ 30,6, կաթինը՝ 11, ձվինը՝ 95,1 տոկոսով։

Գյուղատնտեսական մթերքների արտադրությունը ավելացնելու հիմնական ուղին գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասունների մթերատվության բարձրացումն է։ Հանրապետության կուսակցական, սովետական և գյուղատնտեսական օրգանների, կոլտնտեսությունների և սովխոզների խնդիրն է՝ հացահատիկային կուլտուրաների հեկտարի միջին բերքատվությունը 1975 թվականին հասցնել 16—17, այդ թվում ջրովի հողատարածություններում առնվազն՝ 30 ցենտների, կարտոֆիլինը՝ 125, բանջարեղենինը՝ 225, խաղողինը՝ 80, պտղինը՝ 50 ցենտների, կովի կաթնատվությունը կոլտնտեսություններում և սովխոզներում՝ 1800 կիլոգրամի, ոչխարի բրդատվությունը՝ 2,4 կիլոգրամի և հավի ձվատվությունը՝ 155 հատի։

Այս ցուցանիշներին հասնելու համար հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզները ունեն բոլոր հնարավորությունները։

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումներին համապատասխան առաջիկա հնգամյակի տարիներին Հայաստանի գյուղատնտեսության արտադրական բազայի ընդլայնման նպատակներով կներդրվի ավելի քան 810 միլիոն ռուբլի։ Այդ միջոցները կօգտագործվեն հողատարածությունների ոռոգման, թռչնաբուծական ֆաբրիկաների և անասնապահական կոմպլեքսների շինարարության, գյուղատնտեսության արտադրության մեքենայացման և քիմիացման, գյուղում բնակարանային և կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարության նպատակներով։ Միայն ջրաշինարարական նպատակների համար կներդրվի 155 միլիոն ռուբլի, որը հնարավորություն կտա ոռոգելի դարձնելու մոտ 50 հազար հեկտար տարածություն։ Հնգամյակի տարիներին կիրականացվի Արզնի—Շամիրամի ջրանցքի երկրորդ հերթի շինարարությունը, որը ոռոգելի կդարձնի 17,5 հազար հեկտար հողատարածություններ , Ախուրյանի աջափնյա ջրանցքը ոռոգելի կդարձնի 7200 հեկտար, Որոտանի ջրանցքը՝ 6400 հեկտար, Քասախի ջրանցքը՝ 4700 հեկտար, Թալինի 2-րդ հերթը՝ 10 հազար հեկտար։ Կավարտվի նաև մի քանի այլ ջրանցքների և ջրհան կայանների շինարարությունը։

Մեծ ծավալի աշխատանք կտարվի ջրամբարների շինարարության ուղղությամբ, որպեսզի ձմռան և գարնան ընթացքում ջրերը կուտակվեն և օգտագործվեն ոռոգման համար։ Հնգամյակի տարիներին կձեռնարկվի Ախուրյանի խոշոր ջրամբարի շինարարությունը՝ 525 միլիոն խորանարդ մետր ծավալով, Գետիկի ջրամբարը՝ 35 միլիոն, Ազատի ջրամբարը՝ 70 միլիոն խորանարդ մետր ծավալով և այլն։ Դրանց ընդհանուր ծավալը կկազմի մոտ մեկ միլիարդ խորանարդ մետր։ Հնգամյակի տարիներին կավարտվի նաև Արփա—Սևան ջրատարի շինարարությունը, որի շնորհիվ տարեկան մոտ 300 միլիոն խորանարդ մետր ջուր կհոսի Սևանա լիճը, որի մի մասը նույնպես կօգտագործվի ոռոգման նպատակների համար։ Հայաստանում ոռոգման զարգացման վերոհիշյալ ծրագրի իրականացումը լայն հնարավորություններ կստեղծի գյուղատնտեսության բոլոր ճյուղերի զարգացման համար։

Հնգամյակի տարիներին կկառուցվեն և շահագործման կհանձնվեն մի քանի թռչնաբուծական ֆաբրիկա՝ տարեկան 175 միլիոն ձվի և 10 հազար տոննա թռչունի մսի արտադրության կարողությամբ։ Կկառուցվեն նաև արդյունաբերական հիմունքներով տավարի և խոզի մսի արտադրության անասնապահա-

կան կոմպլեքսներ՝ տարեկան մոտ 10 հազար տոննա մսի արտադրության կարողությամբ:

Առաջիկա հնգամյակի տարիներին նոր իրացված և ոռոգելի դարձած հողատարածությունների վրա կտնկվեն 8 հազար հեկտար խաղողի և պտղատու նոր այգիներ: 1971—1975 թվականներին հանրապետության կոլտնտեսությունները ու սովխոզները կստանան մոտ 1 միլիոն 800 հազար տոննա հանքային պարարտանյութեր, 7700 տրակտոր, 1000 հացահատիկային կոմբայն, մոտ 6000 բեռնատար ավտոմեքենա և գյուղատնտեսական բազմաթիվ այլ մեքենաներ ու գործիքներ, որոնք հնարավորություն կտան հիմնականում կոմպլեքսային մեքենայացման ենթարկելու գյուղատնտեսական բոլոր աշխատանքները:

Գյուղատնտեսության արտադրական բազայի ընդլայնման համար առանձնացված խոշոր կապիտալ ներդրումների լրիվ օգտագործման համար մեծ ջանքեր են պահանջվում: Մինչդեռ ընթացիկ հնգամյակի անցած տարիներին այդ գործում նկատվեցին լուրջ թերություններ: Զգալիորեն թերակատարվեցին թռչնաբուծական ֆաբրիկաների, կովանոցների, ոչխարանոցների, բնակելի տների շինարարության պլանները:

Գյուղական շինարարության մինիստրությունը ուշացնում է Սովետաշենի և Բարձրաշենի թռչնաբուծական ֆաբրիկաների, Սպիտակի ալրաղաց կոմբինատի և համակցված կերերի արտադրամասի շահագործման հանձնելը: Արդյունաբերական շինարարության մինիստրությունը չափազանց դանդաղ տեմպերով է առաջ տանում Սևանի ալրաղաց կոմբինատի և թռչնաբուծական ֆաբրիկայի շինարարությունը, ինչպես նաև Երևանի ալրաղաց կոմբինատի ու համակցված կերերի գործարանի վերակառուցման և ընդարձակման շինարարական աշխատանքները:

Գյուղական և արդյունաբերական շինարարության մինիստրությունները պետք է արմատապես փոխեն իրենց վերաբերմունքը և լուրջ բեկում մտցնեն գյուղում կատարվող շինարարության աշխատանքներում: Պետշինը, մինիստրությունները և գերատեսչությունները գյուղական շինարարությունը պետք է դիտեն որպես պետական առաջնահերթ նշանակություն ունեցող գործ:

Գյուղատնտեսական արտադրության կոմպլեքսային մեքենայացումը աշխատանքի արտադրողականության բարձրացման և հողագործության ու անասնաբուծության արտադրանքի ինքնարժեքի իջեցման վճռական գործոնն է: Ահա թե ինչու դա պետք է գտնվի ինչպես հանրապետության գերատեսչությունների, այնպես էլ շրջանային կուսակցական, սովետական օրգանների, կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարների ուշադրության կենտրոնում:

Հանրապետության շատ կոլտնտեսություններ և սովխոզներ ապահովված չեն համապատասխան որակյալ մեխանիզատորական կադրերով, որի հետևանքով տեխնիկան օգտագործվում է ցածր արտադրողականությամբ և երբեմն էլ ժամանակից շուտ մաշվում ու փչանում: Գյուղատնտեսության արտադրության կոմպլեքսային մեքենայացման գործում գոյություն ունեն նաև այլ դժվարություններ: Հանրապետության քարքարոտ, թեք և կտրտված հողակտորների մշակության համար Միության գործարանները անհրաժեշտ մեքենաների ու գործիքների շատ տեսակներ չեն արտադրում: Մինչդեռ դրանցից շատերի արտադրությունը կարելի է կազմակերպել հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում: Ելնելով գյուղատնտեսության արտադրության մեր առանձնահատկություններից, գյուղմեխանիզացիայի և էլեկտրիֆիկացիայի հանրապետական գիտահետազոտական ինստիտուտը ստեղծել է



շատ անհրաժեշտ գործիքներ և հարմարանքներ: Ժամանակն է կազմակերպել դրանց արտադրությունը:

Գյուղատնտեսության արտադրության նյութատեխնիկական բազայի արագ ամրապնդումը, նրա տեխնիկական վերազինումը մեծ մասշտաբների խնդիրներ են, որոնց լուծումը համաժողովրդական գործ է: Ահա թե ինչու ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը գտավ, որ կոլտնտեսային ու սովխոզային արտադրության տեխնիկական վերազինման խնդրի լուծմանը պետք է, որպես կանոն, մասնակցեն արդյունաբերության բոլոր ճյուղերը: Հարկավոր է գործն այնպես կազմակերպել, որ ոչ մի գործարան, անկախ նրա գերատեսչական ենթակայությունից, մի կողմ չմնա այդ պետական մեծ գործից: Շատ գործարաններ կարող են առանց իրենց հիմնական արտադրությանը վնաս հասցնելու յուրացնել գյուղին հարկավոր մեքենաների ու նյութերի թողարկումը:

«Հայէլեկտրավերանորոգման» գործարանը անցյալ տարի ձեռնամուխ եղավ խաղողի այգիները ծածկող նորաստեղծ փորձնական մեքենայի թողարկմանը՝ առանց պակասեցնելու հիմնական արտադրանքը: Ցավոք, դա եզակի երևույթ է բազմակողմանիորեն զարգացած արդյունաբերություն ունեցող մեր հանրապետությունում: Մինչդեռ հանրապետության ավտոպահեստամասերի, ավտոդողերի, ռետինատեխնիկական գործարանները, մեքենաշինական, էլեկտրատեխնիկական, հաստոցաշինական և արդյունաբերական մյուս ձեռնարկությունները կարող են անգնահատելի օգնություն ցույց տալ հանրապետության գյուղատնտեսությանը: Նրանք ի վիճակի են և պետք է ձեռնարկեն հանրապետության կոլտնտեսությունների և սովխոզների համար համապատասխան մեքենաների և պահեստամասերի արտադրությունը, կատարելագործելու եղած մեքենաները և գործիքները, ստեղծելու ջերմոցային տնտեսություններ, մշակելու և արտադրելու ջերմատների կառուցվածքներ և այլն:

Գյուղատնտեսության առջև ծառացած խնդիրների լուծման գործում մեծ է գիտության դերը: Գյուղատնտեսության բնագավառի գիտական աշխատողները այսուհետև է՛լ ավելի պետք է ամրապնդեն կապը արտադրության հետ: Գիտահետազոտական աշխատանքների հետ միասին, նրանք ակտիվ գործունեություն պետք է ծավալեն կոլտնտեսություններում և սովխոզներում գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերքատու նոր սորտերի ներդրման և մթերատու անասունների տեսակների և ցեղերի բարելավման, նոր տեխնիկայի արմատավորման և աշխատանքների կոմպլեքսային մեքենայացման ուղղությամբ: Անհրաժեշտ է ըստ առանձին գոտիների մշակել հողագործության և անասնաբուծության մթերքների արտադրության գիտականորեն հիմնավորված տեխնոլոգիա և աշխատանքի կազմակերպման պրոգրեսիվ եղանակներ:

Այդ խնդիրների լուծման գործում իրենց կոնկրետ անելիքներն ունեն ո՛չ միայն գյուղատնտեսական գիտահետազոտական ինստիտուտները, այլ նաև ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի և մյուս գերատեսչությունների ինստիտուտներն ու լաբորատորիաները: Նրանք պետք է առաջիկայում հետազոտական աշխատանքներ ծավալեն նաև գյուղատնտեսական արտադրության առջև կանգնած մի շարք պրոբլեմներ գիտականորեն լուծելու համար:

Գյուղատնտեսական բարձրագույն ուսումնական հաստատությունները, հայկական գյուղատնտեսական և Երևանի անասնաբուժական-անասնաբուծական ինստիտուտները պետք է բարձրացնեն պատրաստվող մասնագետների որակը: Նոր գիտելիքներ տալու հետ միասին հոգ պետք է տարվի երիտասարդ մասնագետներին հաղորդելու պրակտիկ աշխատանքի անհրաժեշտ փորձ:

*Գյուղատնտեսության զարգացման, նրա նյութատեխնիկական բազայի ամրապնդման և տեխնիկական վերազինման գործում մեծ և որոշակի դեր պետք է խաղան կուսակցական կազմակերպությունները։ Քաղաքային և շրջանային կոմիտեները պետք է բարձրացնեն պահանջկոտությունը ինչպես կոլտնտեսությունների և սովխոզների, այնպես էլ արտադրական և գիտական հիմնարկների, մինիստրությունների և գերատեսչությունների սկզբնական կուսակցական կազմակերպությունների նկատմամբ։ Անհրաժեշտ է, որպեսզի յուրաքանչյուր կոլտնտեսությունում, սովխոզում, արդյունաբերական ձեռնարկությունում, յուրաքանչյուր գիտական հիմնարկում, պետական ու տնտեսական ղեկավար օրգանում ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշման կենսագործման նպատակով մշակվեն և իրականացվեն կոնկրետ միջոցառումներ։*

*Կուսակցական սկզբնական կազմակերպությունները պետք է ագիտացիոն-մասսայական և պրոպագանդիստական լայն աշխատանք ծավալեն պլենումի որոշումները, նրա կողմից առաջ քաշված խնդիրներն ու նրանց նշանակությունը աշխատավորությանը պարզաբանելու համար։ Կուսակցական բարձր պահանջկոտություն պետք է ցուցաբերել առաջադրված խնդիրների հաջողակ լուծման համար։ Քաղկոմները և շրջկոմները պետք է ամենօրյա հսկողություն սահմանեն՝ ամեն մի կոլտնտեսության, սովխոզի, հիմնարկության և ձեռնարկության կողմից հուլիսյան պլենումի որոշումների կատարման վրա։*

*Կուսակցական կազմակերպությունները պետք է գլխավորեն աշխատավորների ստեղծագործական եռանդը և պայմաններ ստեղծեն նրանց նախաձեռնության զարգացման համար։ Անհրաժեշտ է լայն թափ հաղորդել սոցիալիստական մրցությանը։ Միաժամանակ պետք է պայքար մղել մրցման գործում երբեմն դրսևորվող ձևականության ու ցուցամոլության դեմ։*

*Անհրաժեշտ է ընդլայնել և գործնական բնույթ տալ արդյունաբերական հիմնարկ-ձեռնարկությունների կողմից կոլտնտեսությունների և սովխոզների նկատմամբ շեֆական աշխատանքներին։*

*Մենք գտնվում ենք հնգամյակի եզրափակիչ տարվա գյուղատնտեսական աշխատանքների եռուն ժամանակաշրջանում։*

*Հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում աճեցվել է խաղողի, պտուղների և բանջարեղենի առատ բերք։ Աշխատանքները լավ կազմակերպելու դեպքում հանրապետությունը կարող է հիմնականում կատարել գյուղատնտեսական մթերքների պետական գնման և հանձնման առաջադրանքները։*

*Նոյեմբերի 29-ին հանրապետության աշխատավորությունը կտոնի Հայաստանում սովետական կարգերի հաստատման 50-րդ տարեդարձը։ Մեր հանրապետության աշխատավորները պատրաստվում են հայրենանվեր գործերով դիմավորելու հարազատ կուսակցության XXIV համագումարը և Հայաստանում սովետական կարգերի ստեղծման 50-րդ տարեդարձը։*

*Կասկած լինել չի կարող, որ հանրապետության կուսակցական կազմակերպությունը, բանվորները, գիտնականները, գյուղի և քաղաքի բոլոր աշխատողները ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումները կընդունեն որպես պրակտիկ գործունեության ծրագիր և ամեն ինչ կանեն գյուղատնտեսության հետագա վերելքն ապահովելու, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում իրենց արժանի ավանդը ներդնելու համար։*

# ԲԱՐԵԼԱՎԵԼ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԴԱՍԱՎԱՆԴՈՒՄԸ

Կոմունիստական հասարակության կառուցման արդի փուլում նոր, ավելի պատասխանատու խնդիրներ են դրվում բարձրագույն ուսումնական հաստատությունների առջև: Երիտասարդության հասարակական ակտիվ գործունեության մեջ ներգրավումը, գիտատեխնիկական հեղափոխությունը, երկու հակադիր սիստեմների միջև մղվող գաղափարական սուր պայքարը պահանջում են սովորող երիտասարդության գաղափարական կոփվածություն, մարքսիզմ-լենինիզմի տեսության խոր իմացություն, պրակտիկայի հետ տեսության սերտ կուզորդում: Այս պայմաններում ավելի են բարձրանում հասարակական գիտությունների դերն ու նշանակությունը:

ՍՄԿԿ XXIII համագումարն ընդգծելով հասարակական գիտությունների դերն արդի պայմաններում, վճռականորեն պահանջեց ստեղծագործաբար մըշակել կոմունիստական շինարարության կոնկրետ խնդիրների հետ սերտորեն առնչվող տեսական հարցերը, բարձրացնել հասարակական գիտությունների դասավանդման և կադրերի մարքս-լենինյան ուսուցման մակարդակը:

Կոմունիստական շինարարության ասպարեզում հասարակական գիտությունների դերի բարձրացման գործում կարևոր նշանակություն ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի 1967 թվականի օգոստոսին կայացրած որոշումը, ուր մի շարք կոնկրետ միջոցառումներ են նշվել բարձրագույն ուսումնական հաստատություններում հասարակական գիտությունների դասավանդումը և սովորողների կոմունիստական դաստիարակությունը բարելավելու համար:

Հայտնի է, որ վերջին տարիների ընթացքում զգալիորեն աճել է հանրապետության բուհերի ուսանողների թիվը, ընդլայնվել է պրոֆեսորա-դասախոսական կազմը: 1967—68 ուսումնական տարում հանրապետության բուհերում սովորող 48.273 ուսանողի դիմաց ընթացիկ տարում սովորում են 53.275 ուսանող: Բուհերում դասավանդում են 3.818 դասախոս, այդ թվում՝ 218 պրոֆեսոր ու դոկտոր, 1.320 դոցենտ ու թեկնածու: Առանձնապես մեծացել են Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտը, պետական համալսարանը, Խ. Աբովյանի անվան մանկավարժական և Երևանի բժշկական ինստիտուտները: Նոր ինստիտուտներ ու ֆիլիալներ են բացվել Լենինականում, Կիրովականում, Գորիսում:

Նկատելիորեն բարելավվել է հանրապետության բարձրագույն ուսում-

նական հաստատությունների աշխատանքը, ամրապնդվել է նրանց նյութատեխնիկական բազան, կատարելագործվել են դասախոսական կադրերը: Գրեթե բոլոր բուհերում կիրառվում են ուսուցման ժամանակակից արդյունավետ ձևեր ու մեթոդներ:

Բարձրագույն ուսումնական հաստատությունների աշխատանքի էական չափանիշը ուսման բարձր առաջադիմության ապահովումն է, ուսանողների՝ ժամանակակից պահանջներին համապատասխան ռեալ գիտելիքներ ձեռք բերելը: Այդ բնագավառում վերջին տարիներս կզալի աշխատանք են կատարել մի շարք բուհերի ռեկտորատներ, կուսակցական կոմիտեներն ու ամբիոնները, որի արդյունքը ուսման առաջադիմության բարձրացումն է:

Սակայն, ուսման ծրագրերի յուրացման մարզում ձեռք բերված հաջողությունները չպետք է երբեք հանգստացնեն մեզ: Պաշտոնական ինֆորմացիայի համաձայն հասարակական գիտությունների յուրացման տվյալները բարձր են մյուս գիտություններից: Որչափո՞վ հիմնավոր է այս «պաշտոնական» գնահատականը: Չէ՞ որ իրականում հասարակական առարկաների որոշ դասախոսներ իրենց գնահատականներում բավականին առատաձեռն են: Այլ կերպ չի կարելի հասկանալ այն ցավալի և բավականին ակնառու իրողությունը, երբ կյանքում փոքր չէ միանգամայն աղքատիկ գիտելիքներով յոլա գնացող բուհերն ավարտած մարդկանց թիվը:

Լենինն ուսուցում էր, որ մենք չպետք է վախենանք մեր պակասությունները բացահայտելուց: Մեր թերությունների անտեսումը, շեշտում էր նա, վըտանգավոր է: Հիրավի, ուսման որակի ոլորտում եղած բազմաթիվ պակասությունները չպետք է վրիպեն բուհական ղեկավարության և կուսակցական կազմակերպությունների տեսադաշտից: Առաջադիմության վիճակագրական տվյալներն ու տոկոսները չպետք է սքողեն այն իսկությունը, որ ինչպես էլ լինի, քննությունների ընթացքում սուբյեկտիվ շարժառիթները երկուստեք անխուսափելի են, մանավանդ, որ քննության պահին խոշոր դեր է խաղում քննվողի հուզական վիճակը: Համաձայնվենք, որ ուսման ցածր առաջադիմության վկայությունն է նաև միջակությունը, «բավարար» գնահատականների չափազանց բարձր տոկոսը: Ուսանողների որոշ մասը ոչ գիտակցական, անպատասխանատու վերաբերմունք ունի ուսման նկատմամբ, խոր գիտելիքների ձեռքբերումը համարում է ջանքերի կուր վատնում և անհրաժեշտ ուշադրություն չի նվիրում՝ ուսումնասիրելու տրված գրականությունը, սահմանափակվում է «բավարար» գնահատականով: Նման ուսանողների շրջանում, ասես, թուլացել է բարձրորակ մասնագետ դառնալու ձգտումը: Այս տագնապալի հանգամանքը պետք է անհանգստացնի բուհերի ռեկտորատներին, կուսկոմիտեներին ու բյուրոներին, բոլոր դասախոսներին, բարձրագույն կրթության մինիստրությանը:

Ուսման ռեալ առաջադիմության բարձրացմանը մեծ չափով վնասում են ծնողների և այլ կողմնակի «խնամակալների» միջնորդություններն ընդունելության և ընթացիկ քննությունների ժամանակ: Չդիմանալով կողմնակի միջամտությունների ճնշմանը, երբեմն էլ թույլ տալով լիբերալ մոտեցում, որոշ դասախոսներ դրական գնահատական են նշանակում այնպիսի ուսանողների, որոնց գիտելիքները չեն համապատասխանում ներկայացվող պահանջներին: Նման երևույթի վնասը ո՛չ միայն այն է, որ այդ ճանապարհով դրական գնահատականներ են ստանում, կուրսից-կուրս փոխադրվում և, ի վերջո, բարձրագույն կրթության փաստաթուղթ ձեռք բերում անհրաժեշտ գիտելիքներ չունեցող մարդիկ, այլև այն, որ դա բացասաբար է ազդում սովորելու ցանկություն



ունեցող ուսանողների վրա, թուլանում է գիտելիքներ ձեռք բերելու նրանց ձգտումը:

Հարկ է նկատել, որ վերջին տարիներս ուսանողության մեծ մասի և որոշ դասախոսների կարծիքով սովորողները չափից ավելի են ծանրաբեռնված դասախոսություններով ու գործնական պարապմունքներով, անհրաժեշտ է կրճատել դրանք և ավելացնել ուսանողների ինքնուրույն աշխատանքի ժամերը: Սակայն չպետք է մոռանալ, որ ներկայումս բուհում սովորելու համար պահանջվում են ավելի մեծ համառություն ու ջանք: Ուսանողների ինքնուրույն աշխատանքի ծավալումը, անշուշտ, կարևոր է: Սակայն ուսանողներին չափից ավելի «ազատ ժամանակ» տրամադրելը հազիվ թե բոլոր ուսանողների կողմից ճիշտ ընկալվի և նպատակին օգտագործվի. մյուս կողմից, որպեսզի ուսանողը կարողանա ինքնուրույն աշխատել և առավել մեծ արդյունքի հասնել, անհրաժեշտ է, որ նա նախ սովորի ինքնուրույն պարապել, իսկ դրան կարող է նպաստել միայն դասախոսի հետ նրա համատեղ աշխատանքը:

Ուսումնական յուրաքանչյուր հաստատության նպատակը պետք է լինի ոչ թե միջակ ուսուցումը, այլ ժամանակակից գիտության զարգացման բարձր մակարդակին համապատասխան գիտելիքներով զինված մասնագետների պատրաստումը:

Երիտասարդ մասնագետների պատրաստման, նրանց գիտական աշխարհայացքի ձևավորման գործում մեծ է հասարակական գիտությունների ամբիոնների դերը: Գոհունակությամբ կարելի է նշել, որ վերջին տարիներին որոշակի բեկում է նկատվում այդ ամբիոնների աշխատանքում:

Զգալիորեն բարելավվել է ՍՄԿԿ պատմության, մարքս-լենինյան փիլիսոփայության, գիտական կոմունիզմի և քաղաքատնտեսության դասավանդումը. խորացել է տեսության արմատական պրոբլեմների լուսաբանումը, դրանց կապը արդիականության հետ: Որոշակի աշխատանք է կատարվել դոգմատիզմի և վերացականության հաղթահարման ասպարեզում: Հասարակական գիտությունների դասախոսները կուսակցականության դիրքերից վերլուծում, պարզաբանում են տեսության առավել հրատապ պրոբլեմները, գիտությունների նորագույն նվաճումները: Ավելի մեծ ուշադրություն է նվիրվում դասախոսությունների և սեմինար պարապմունքների որակի բարձրացմանը, մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրների երկերի և կուսակցական փաստաթղթերի ուսումնասիրմանը, ուսանողների ինքնուրույն աշխատանքի զարգացմանը:

Հանրապետության բարձրագույն ուսումնական հաստատություններում հասարակական գիտությունների ամբիոններում աճել է պրոֆեսորա-դասախոսական աշխատողների մեծ ջոկատ: Ներկայումս հանրապետության 12 բուհերի հասարակական գիտությունների 34 ամբիոններում աշխատում են 326 դասախոս: Նրանց մեծ մասը պատվով է կատարում դասախոսի և դաստիարակի վեհ պարտականությունը: Հասարակական գիտությունների դասախոսների մեծ մասը դասախոսությունները կարդում են քաղաքական ու տեսական բարձր մակարդակով, մարքս-լենինյան տեսության պրոբլեմները սերտորեն շաղկապելով արդիականության ակտուալ խնդիրների, կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ:

Դրական աշխատանքի մեծ փորձ են կուտակել հանրապետության բուհերի հասարակական գիտությունների մի շարք ամբիոններ՝ պետական համալսարանի փիլիսոփայության, քաղաքատնտեսության, բժշկական ինստիտուտի ՍՄԿԿ պատմության և քաղաքատնտեսության, պոլիտեխնիկական ինստիտուտի ՍՄԿԿ

պատմության և քաղաքատնտեսության, անասնաբուծական-անասնաբուժա-
կան ինստիտուտի քաղաքատնտեսության, Խ. Աբովյանի անվան մանկավար-
ժական ինստիտուտի քաղաքատնտեսության, Վ. Բրյուսովի անվան ռուսաց և
օտար լեզուների ինստիտուտի փիլիսոփայության, ՍՄԿԿ պատմության, գյու-
ղատնտեսական ինստիտուտի ՍՄԿԿ պատմության, փիլիսոփայության, քաղա-
քատնտեսության և այլն: Այդ ամբիոնները կոմպլեկտավորված են որակյալ,
առավելապես երիտասարդ կադրերով: Կազմակերպվող դասախոսությունների ու
սեմինար պարապմունքների կոլեկտիվ ունկնդրումներն ու համատեղ քննար-
կումները մեծապես օգնում են դասավանդման գաղափարական-տեսական մա-
կարդակի բարձրացմանը: Ամբիոնների նիստերում հաճախակի լսվում են մեթո-
դական հաղորդումներ, կատարվում է դասախոսական աշխատանքի փորձի փո-
խանակում: Որոշակի աշխատանք է տարվում դասախոսների որակավորման
բարձրացման ուղղությամբ: Վերջին մի քանի տարիների ընթացքում այդ ամ-
բիոնների շատ դասախոսներ պաշտպանել են թեկնածուական և դոկտորական
դիսերտացիաներ, գործուղվել հասարակական գիտությունների դասախոսների
որակավորման բարձրացման ինստիտուտներ: Ամբիոններում կզալի գիտա-մե-
թոդական աշխատանք է կատարվում, հրատարակվել են արժեքավոր մենագրու-
թյուններ, դասագրքեր ու ձեռնարկներ, բազմաթիվ գրքույկներ ու հոդվածներ:

Հանրապետության բուհերի հասարակագիտական ամբիոնները եռանդուն
աշխատանք ծավալեցին Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը ստեղծագործա-
կան բարձր ցուցանիշներով նշելու համար: Մեծ հոբելյանի պատվին ամբիոն-
ները մշակեցին կոնկրետ միջոցառումներ, ստանձնեցին լրացուցիչ պարտա-
վորություններ: Ամենուրեք կայացան գիտական կոնֆերանսներ ու նստաշըր-
ջաններ, Վ. Ի. Լենինի տեսական ժառանգությունը լուսաբանող թեմաները մեծ
տեղ գտան գիտահետազոտական պլաններում: Լենինի կյանքին ու գործու-
նեությանը նվիրված դասախոսություններ կարդացվեցին արդյունաբերական
ձեռնարկություններում ու կառույցներում, կոլտնտեսություններում ու սով-
խոզներում, կուլտուր-լուսավորական հիմնարկներում:

Սակայն, դեռևս լուրջ թերություններ կան բուհերում հասարակական գի-
տությունների ամբիոնների գործունեության, ուսանող երիտասարդության
մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման, նրա դաստիարակության, կո-
մունիստական հասարակության կառուցման արդի պահանջներին համապա-
տասխան բազմակողմանի զարգացած կադրերի պատրաստման գործում:

Բարձրագույն դպրոցի հասարակական գիտությունների դասախոսություն-
ները պետք է լինեն վերլուծական, այլ ոչ միայն պատմողական, հագեցած
քաղաքական-գաղափարական պատշաճ մեկնաբանություններով ու լուրջ եզ-
րակացություններով: Ելնելով մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներից, հենվելով
կուսակցական փաստաթղթերի վրա, դասախոսը պետք է տվյալ նյութը ունկըն-
դիրներին մատուցի անձանձիր, հրապուրիչ ձևով, կարողանա մագնիսել լսա-
րանի ուշադրությունը: Հասարակական գիտությունների դասախոսների առաջ-
նահերթ խնդիրն է՝ ուսանող երիտասարդությանը տոգորել մարքսիզմ-լենի-
նիզմի ամենահաղթ գաղափարներով, հասնել այն բանին, որ հեղափոխական
ուսմունքը դառնա երիտասարդ մասնագետի համոզմունքը: Հասարակագետ
դասախոսին մեծ և պատվավոր գործ է վիճակված. նա պատասխանատու է ոչ
միայն իրեն վստահված կուրսի առաջադիմության, այլև ուսանողների քաղա-
քական համոզմունքների, տրամադրությունների համար:

Հասարակագիտական առարկաների դասախոսները գաղափարական ճա-



կատի առաջամարտիկներ են: Կուսակցությունը նրանցից պահանջում է հեղա-
փոխական սկզբունքայնություն, կյանքի երևույթների սթափ վերլուծություն:

Հասարակական գիտությունների ամբիոնների գործունեության վերլու-
ծությունը ցույց է տալիս, որ դասախոսների որոշ մասը դեռևս լիովին չի ձեր-
բազատվել դոգմատիզմի, վերացականության ազդեցությունից: Նրանց դասա-
խոսությունները նկարագրական, ընդհանուր-ակնարկային բնույթ ունեն, տե-
սության և արդիականության կարևոր հարցերը մեկնաբանվում են մակերե-
սայնորեն, առանց տեսական լուրջ ընդհանրացումների: Որոշ դասախոսներ
գիտության կուրսը վարում են տեսական-գաղափարական ցածր մակարդակով,
մերթ սահմանափակվելով մարքսիզմ-լենինիզմի հանրահայտ դրույթների ան-
հարկի կրկնությամբ: Նրանք երբեմն խուսափում են մարքսիստորեն, կուսակ-
ցականության դիրքերից մեկնաբանել կյանքի բարդ երևույթները, մեր իրա-
կանության մեջ գոյություն ունեցող առանձին թերությունները: Անկիրք, անակ-
յուն, քաղաքացիական պաթոսից զուրկ խոսքը լինում է ապարդյուն, անկոր է
ցանկալի ներգործություն ունենալ երիտասարդ մարդու վրա:

Հասարակագիտական մի շարք ամբիոններում աշխատանք չի տարվում
դեռևս բավարար փորձ չունեցող դասախոսներին տեսական ու մեթոդական օգ-
նություն ցույց տալու նպատակով: Այդպիսիների համար քիչ են կազմակերպ-
վում դասախոսությունների, սեմինար պարապմունքների փոխադարձ ունկըն-
դրումներ և քննարկումներ, հազվադեպ են ձայնագրվում, սղագրվում դասա-
խոսությունները, տեղի չեն ունենում կոլեկտիվ քննարկումներ: Երբեմն, տար-
վելով ընթացիկ հարցերի քննարկմամբ, ամբիոններն անուշադրության են
մատնում դասախոսությունների տեսական-գաղափարական մակարդակի բարձ-
րացման, դասավանդման մեթոդիկայի կատարելագործման հարցերը: Ոչ բո-
լոր ամբիոններում են կազմակերպվում գիտական պրոբլեմատիկ հարցերի
քննարկումներ, որոնք, անշուշտ, կբարձրացնեն դասավանդման որակը:

Անտարակույս, որակյալ մասնագետների պատրաստումն անմիջականո-
րեն պայմանավորված է դասախոսների որակով, նրանց մանկավարժական
հմտությամբ, աշխատանքային եռանդով: Հասարակական գիտությունների
բարձրորակ դասախոսների պատրաստման մարզում մեր հանրապետությու-
նում ձեռք բերված հաջողություններն ակնառու են: Այսպես, եթե բոլոր բու-
հերի պրոֆեսորա-դասախոսական աշխատողների ընդհանուր թվում գիտական
աստիճաններ ու կոչումներ ունեցողները կազմում են 40,3 տոկոս, ապա հա-
սարակական գիտությունների գծով՝ 59,5 տոկոս: Սակայն, չի կարելի չնշել,
որ շատ փոքր է պրոֆեսոր-դոկտորների տոկոսը (ընդամենը 7): Պետա-
կան համալսարանում, պոլիտեխնիկական, Խ. Աբովյանի անվան մանկավար-
ժական, Վ. Բրյուսովի անվան ռուսաց և օտար լեզուների ինստիտուտներում
ավանդում են ընդամենը 2—4, բժշկական և գյուղատնտեսական ինստիտուտ-
ներում՝ մեկական պրոֆեսոր-դոկտոր. իսկ մնացած բուհերում՝ հասարակական
գիտությունների գծով ոչ մի պրոֆեսոր-դոկտոր չի աշխատում: Մի շարք բու-
հերում դեռևս մեծ է գիտական աստիճան և կոչում չունեցողների թիվը (պե-
տական համալսարանում՝ 25, պոլիտեխնիկական ինստիտուտում՝ 45, Խ. Ա-
բովյանի և Վ. Բրյուսովի անվան ինստիտուտներում՝ 13, Կիրովականի ման-
կավարժական ինստիտուտում՝ 10 հոգի և այլն: Նման վիճակը ասպիրանտու-
րայում նոր կադրերի անբավարար պատրաստման արդյունք է: ՀՍՍՀ բարձ-
րագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությանը ենթակա
բուհերում վերջին երեք տարում ասպիրանտուրա են ավարտել 39 հոգի, որոն-

ցից դիսերտացիա են պաշտպանել 3-ը և պաշտպանության ներկայացրել 6-ը:

Առանձնապես մեծ դժվարություններ կան գիտական կոմունիզմի ամբիոն-
ները որակյալ դասախոսներով կոմպլեկտավորելու գործում: Ինչպես հայտնի է.
մի քանի տարի է, ինչ բուհերում ավանդվում է գիտական կոմունիզմ: Այդ ա-
ռարկան ավանդում են տվյալ մասնագիտությունը չունեցող, մեծ մասամբ
ՍՄԿԿ պատմության դասախոսները: Այդ պատճառով նրանց դասախոսություն-
ներում գերակշռում է պատմական դեպքերի, միջազգային դրությանը վերա-
բերող հարցերի շարադրանքը, իսկ գիտական կոմունիզմի տեսական պրոբլեմ-
ների լուսաբանումը հաճախ դուրս է մնում նրանց տեսադաշտից:

Գիտական կոմունիզմի և փիլիսոփայության որակյալ երիտասարդ դասա-
խոսներ պատրաստելու պոտենցիալ հնարավորություններ ունի պետական հա-
մալսարանի պատմության ֆակուլտետի փիլիսոփայության բաժինը, որն առա-
ջին շրջանավարտները տվեց անցյալ տարի: Նրա շրջանավարտների զգալի
մասն ընդունվել է ասպիրանտուրա կամ աշխատանքի անցել բուհերի հասարա-
կագիտական ամբիոններում: Անհրաժեշտ է այդ բաժնում ընդունել առավել ըն-
դունակ երիտասարդների, որոնք որակյալ դասախոսներ ու գիտական աշխա-
տողներ դառնալու ակնհայտ տվյալներ ունեն:

Անհանգստություն է պատճառում նաև այն հանգամանքը, որ հասարա-
կական գիտությունների դասախոսների, հատկապես գիտական աստիճան ու
կոչում ունեցողների զգալի մասի տարիքն անցնում է 60-ից: Մինչդեռ համաշ-
խարհային գիտության զարգացման պրակտիկ փորձը վկայում է, որ գիտնա-
կանի անհատական արդյունավետության առավել լավագույն շրջանը 25—45
տարեկան հասակն է: Իսկ ինչպիսի՞ն է վիճակը մեր բուհերում: Առանց չափա-
զանցության կարելի է ասել, որ հանրապետության բուհերի շատ դասախոսներ
(հատկապես հասարակական գիտությունների), որոնք 15—20 և ավելի տարի-
ների աշխատանքային ստաժ ունեն, թեկնածուական դիսերտացիա պաշտպա-
նելուց հետո ո՛չ միայն դոկտորական դիսերտացիա չեն պաշտպանել, այլև
շատ թե քիչ աչքի ընկնող գիտահետազոտական աշխատանք չեն կատարել:
Բայց չէ՞ որ նրանց մեծամասնությունն այնպիսի տարիքում է, երբ այլևս հա-
զիվ թե խոսք լինի նրանց ստեղծագործական ու գիտական ակտիվ, արդյունա-
վետ գործունեության մասին:

Մեր բուհերի շատ ամբիոններում դեռևս անբավարար է երիտասարդ ո-
րակյալ դասախոսների պատրաստման նպատակով տարվող աշխատանքը: Բա-
վարար չի կարելի համարել նաև բարձրագույն և միջնակարգ մասնագիտական
կրթության մինիստրության աշխատանքն այդ բնագավառում: Երիտասարդ
կադրերի պատրաստման գործում պահանջվող հոգատարություն և պատրաս-
տակամություն չեն դրսևորում մեր որոշ պրոֆեսոր-դոկտորները:

Ինչպես հանրապետության բարձրագույն և միջնակարգ մասնագիտական
կրթության մինիստրությունը, այնպես էլ բուհերի հասարակագիտական առա-
ջատար ամբիոնները պետք է ամեն ջանք գործադրեն՝ առաջիկա 3—4 տարում
հանրապետության բուհերը հասարակական գիտությունների որակյալ, երիտա-
սարդ դասախոսներով ապահովելու համար:

Վերջին տարիներին հանրապետության բուհերի ռեկտորատները, կուսակ-
ցական և կոմերիտական կոմիտեները, հասարակական կազմակերպություն-
ներն ու ամբիոններն զգալի չափով բարելավել են ուսանող երիտասարդու-
թյան շրջանում տարվող դաստիարակչական աշխատանքը: Կազմակերպվող



միջոցառումներն անցնում են ավելի նպատակասլաց ու բովանդակալից, ավե-
լի կոնկրետ է դարձել արտալսարանային աշխատանքը ուսանողների շրջանում:
Տարբեր բուհերում կիրառվում են գաղափարական-դաստիարակչական բնույթի
բազմազան միջոցներ, հետաքրքրական և աշխույժ երեկույթներ, հանդիպում-
ներ արտադրական ձեռնարկությունների աշխատողների, աշխատանքի վետե-
րանների, Հայրենական պատերազմի մասնակիցների հետ և այլն: Դաստիա-
րակչական մեծ նշանակություն ունեցան կուլտուրայի նշանավոր գործիչների՝
Հովհ. Թումանյանի, Կոմիտասի, քաղաքացիական կռիվների ականավոր զորա-
վար Գայի հոբելյաններին նվիրված միջոցառումները: Ուսանողների գաղա-
փարական դաստիարակության գործում կարևոր նշանակություն ունեցան Կ.
Մարքսի ծննդյան 150, Վ. Ի. Լենինի ծննդյան 100 և ՀամԼԿԵՄ-ի հիմնադրը-
ման 50-ամյա հոբելյանների առթիվ կազմակերպված միջոցառումները: Բազ-
մաթիվ ուսանողներ մասնակցեցին ուսանողների գիտական աշխատանքների
համամիութենական մրցույթին և լենինյան ստուգարքին:

Ուսանողության կոմունիստական դաստիարակության գործում ավանդա-
կան է, անշուշտ, հասարակական գիտությունների ամբիոնների դերը: Հասա-
րակական գիտությունների դասախոսները հանդես են գալիս ո՛չ միայն որպես
ուսուցողներ, այլև որպես դաստիարակներ: Նրանց նախաձեռնությամբ ուսա-
նողների համար կազմակերպվում են պանապան միջոցառումներ, ունկնդիրների
առջև դասախոսները հանդես են գալիս կոմունիստական դաստիարակության
խնդիրներին, երկրի ներքին ու արտաքին քաղաքականության կարևոր հար-
ցերին նվիրված զեկուցումներով ու դասախոսություններով, այցելում ուսանո-
ղական հանրակացարանները, ծանոթանում նրանց կենցաղին, մոտիկից ու-
սումնասիրում երիտասարդների հոգսերը, հոգևոր պահանջմունքները: Զգալի
աշխատանք է տարվում ուսանող երիտասարդության ինտերնացիոնալ դաստիա-
րակության մարզում: Հանրապետության շատ բուհեր բարեկամական կապեր են
հաստատել եղբայրական մյուս հանրապետությունների համապատասխան
բուհերի հետ, համատեղ կազմակերպել օգտակար միջոցառումներ, հանդի-
պումներ, գիտական կոնֆերանսներ, սպորտային մրցումներ և այլն: Այդ ա-
մենը մեծապես օգնում է տարբեր ազգությունների ուսանողների մերձեցմա-
նը, նրանց պրոլետարական ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկա-
մության ոգով դաստիարակելուն:

Չնայած կատարված դրական աշխատանքին, ուսանող երիտասարդության
կոմունիստական դաստիարակության գործում կան լուրջ թերություններ: Դեռ
կան դասախոսներ, որոնք ուսանողների դաստիարակության գործը չեն հա-
մարում իրենց անմիջական պարտականությունը, իրենց գործունեությունը
սահմանափակում են լսարանի պատերում, հազվադեպ են կիրառում գաղա-
փարական-դաստիարակչական միջոցառումներ, գրեթե չեն մասնակցում ար-
տալսարանային ոլորտին, երկար ժամանակ չեն լինում ուսանողական հան-
րակացարաններում, չեն հետաքրքրվում ուսանողների կենցաղով, ինչպես
հարկն է չեն ճանաչում նրանց: Նման դասախոսները շատ հեռու են դաս-
տիարակ լինելուց:

Ուսանողների գաղափարական-դաստիարակչական աշխատանքը յուրա-
քանչյուր բուհի ռեկտորատի, կուսակցական և հասարակական բոլոր կազմա-
կերպությունների, ամբողջ դասախոսական կոլեկտիվի հիմնական, առաջնա-
հերթ խնդիրն է: Դաստիարակչական աշխատանքում մանրուքներ չկան: Դա-
սից դասախոսի ուշանալը, թափթփվածությունը, ոչ կոկիկ հագնվելը, մոդայա-

մոլությունը, անփութությունը, անպատասխանատվությունը և այլ թերություն-
ներ խիստ բացասաբար են անդրադառնում ուսանողների ճիշտ դաստիարա-
կության վրա: Հանրահայտ է, որ մեկ անգամ տեսածը շատ ավելի լավ ու ներ-
գործուն է հարյուր անգամ այդ մասին լսածից, անձնական օրինակի նշանա-
կությունն անժխտելի է:

Ցավոք, պետք է նշել, որ երբեմն առանձին դասախոսներ մանկավարժին
անվայել վարքագծով ուղղակի վնաս են հասցնում երիտասարդության դաս-
տիարակությանը, արատավորում սովետական դասախոսի կոչումը:

Բուհերի ռեկտորատներն ու կուսակցական կոմիտեները վճռականորեն
պետք է պայքարեն նման երևույթների դեմ, ապատեն նման դասախոսներին:
Միաժամանակ անհրաժեշտ է ամեն կերպ բարձրացնել ուսանողների դաստիա-
րակների՝ լավագույն դասախոս-գիտնականների հեղինակությունը: Մամուլի,
ռադիոյի ու հեռուստատեսության խնդիրն է՝ ավելի լայնորեն մասսայականաց-
նել մեր անվանի դասախոսների, գիտնականների շնորհակալ աշխատանքը.
հասարակական կարծիք ստեղծել նրանց մասին:

Ուսանողության շրջանում տարվող գաղափարական-դաստիարակչական
թերի աշխատանքի արտահայտությունն է այն, որ անբավարար է ուսանողու-
թյան որոշ մասի գաղափարական կոփվածությունը, որի հետևանքով ոմանք
շարունակում են տուրք տալ հետամնացությանը, հնացած սովորույթներին,
իրենց դարն ապրած ավանդույթներին, նույնիսկ կրոնական նախապաշար-
մունքներին: Ուսանողներից ոմանց մոտ նկատվում են բարոյական նորմերի
խախտման, հարբեցողության, էգոիզմի, կռվարարության, գողության և շա-
համոլության երևույթներ, խուլիգանական արարքներ, որոնց դեմ մղվող անո-
ղոք պայքարով հնարավոր կլինի հասնել ուսանողության գիտակցական կար-
գապահության ամրապնդմանը, բարոյական նորմերի պահպանմանը:

Մեծ են հանրապետության բուհերի ռեկտորատների, կուսակցական, կոմե-
րիտական և արհմիութենական կազմակերպությունների անելիքները ուսանող-
ների կուլտուրական մակարդակի բարձրացման, նրանց գեղագիտական դաս-
տիարակության բարելավման ուղղությամբ: Կասկածից վեր է, որ մեր ուսանող-
ներն իրենց կուլտուրական մակարդակով, գեղագիտական ճաշակով այսօր ան-
համեմատ ավելի բարձր են, քան մի քանի տարի սրանից առաջ: Սակայն, չնա-
յած դրան, ուսանողության ընդհանուր կուլտուրական մակարդակը դեռևս ետ
է մնում արդի պահանջներից: Դրա արտահայտությունն են հասարակական
վայրերում իրենց անվայելուչ պահելու, ավագ ընկերների նկատմամբ անհար-
գալից վարվելակերպը, հասարակական կարգ ու կանոնի խախտումը և այլ ե-
րևույթներ: Կուսակցական, կոմերիտական և արհմիութենական կազմակերպու-
թյունները հաճախ աչքաթող են անում առանձին ուսանողների անվայել ա-
րարքները, պատշաճ լրջությամբ չեն զբաղվում նրանց հարցով: Ուսանողու-
թյան կուլտուրական դաստիարակությունը մանրուք չէ, այստեղ պահանջվում
է առավել լուրջ և համառ գործունեություն:

Ինչպես հայտնի է, վերջերս ՀՍՍՀ Գերագույն սովետի սեսիան քննարկեց
երիտասարդության գեղագիտական դաստիարակության վիճակի և դրա բարե-
լավման հարցը: Ընդգծվեց այդ հարցի կարևորությունը երիտասարդության
կոմունիստական դաստիարակության գործում, կոնկրետ միջոցառումներ նշ-
վեցին երիտասարդության գեղագիտական դաստիարակության բարելավման
համար: ՀՍՍՀ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մի-
նիստրության, բուհերի ռեկտորատների, կուսակցական, կոմերիտական և արհ-



միութենական կազմակերպությունների ջանադիր գործունեությամբ է հնարա-
վոր կենսագործել ՀՍՍՀ Գերագույն սովետի սեսիայի այդ կարևոր որոշումը:

Հանրապետության բուհերի ռեկտորատները, կուսակցական կոմիտեներն
ու բյուրոները վերջին տարիներս զգալիորեն բարելավել են հասարակական
գիտությունների ամբիոնների գործունեության ղեկավարությունն ու հսկողու-
թյունը: Հասարակական գիտությունների հետագա զարգացման մասին ՍՄԿԿ
Կենտկոմի 1967 թվականի որոշումից հետո, բուհերի ռեկտորատների ու կուս-
կոմիտեների համատեղ նիստերում կոնկրետ միջոցառումներ են մշակվել հա-
սարակական գիտությունների ավանդումը բարելավելու նպատակով: Նրանք
սկսել են ավելի մոտիկից հետաքրքրվել այդ ամբիոնների աշխատանքով, ա-
վելի մեծ ուշադրություն նվիրել հասարակական գիտությունների ավանդման
որակին, պարբերաբար քննարկում են այդ ամբիոնների աշխատանքների բա-
րելավման հետ կապված հարցեր: Որոշ չափով բարելավվել է հասարակական
գիտությունների ամբիոնները հաստիքներով ապահովելու գործը, ամրապնդվել
է դրանց նյութատեխնիկական բազան: Սակայն, դեռևս մեծ են բուհերի ռեկ-
տորատների ու կուսկոմիտեների անելիքները հասարակական գիտություննե-
րի դասավանդման մակարդակի առավել բարձրացման, այդ գիտությունների
նկատմամբ ուսանողների հետաքրքրասիրությունը խթանելու, հասարակական
գիտությունների ամբիոնների նյութատեխնիկական բազայի ամրապնդման
ասպարեզում:

Բուհերի հասարակագիտական ամբիոններին օգնելու նպատակով հանրա-
պետության բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստ-
րությանը կից ստեղծված են մարքս-լենինյան փիլիսոփայության, գիտական
կոմունիզմի, ՍՄԿԿ պատմության և քաղաքատնտեսության սեկցիաներ, որոնց
նպատակն է՝ ուսումնասիրել և քննարկել այդ առարկաների ավանդման,
դրանց ծրագրերի կատարելագործման, երիտասարդության կոմունիստական
դաստիարակության խնդիրների, հրատարակվող գրականության հետ առնչվող
բազմաթիվ հարցեր: Սակայն սեկցիաների աշխատանքներում կան լուրջ թե-
րություններ: Դրանք դեռևս չեն դարձել այդ առարկաների դասավանդումը
կոորդինացնող գիտա-մեթոդական կենտրոններ: Նրանց աշխատանքները հիմ-
նականում տարերային են, չպլանավորված: Սեկցիաների նիստերը տեղի են
ունենում առիթից առիթ ու հազվադեպ են քննարկվում գիտահետազոտական
և ուսումնա-մեթոդական բնույթի լուրջ, էական հարցեր, չի կատարվում ման-
կավարժական առաջավոր փորձի փոխանակում և այլն: Մինչդեռ նման միջո-
ցառումները զգալիորեն կբարձրացնեն հասարակական գիտությունների ա-
վանդման մակարդակը, կնպաստեն երիտասարդ դասախոսների մանկավար-
ժական վարպետության կատարելագործմանը, ուսումնական ծրագրերի ու
պլանների ճշտմանը և այլն:

Բուհերի կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ ուշադրության
կենտրոնում պահել հասարակական գիտությունների ամբիոնների գործունեու-
թյունը, հետևողական դաստիարակչական աշխատանք տանել դասախոսնե-
րի շրջանում, մշտական հսկողություն սահմանել նրանց աշխատանքների նը-
կատմամբ, ուղղություն տալ նրանց գործունեությանը, արմատապես բարելա-
վել ուսանող երիտասարդության գաղափարական-քաղաքական դաստիարակու-
թյունը:

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ՕՐԵՆՔՆԵՐԻ ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ ԵՎ ՏՆՏԵՍԱՎԱՐՄԱՆ ՊՐԱԿՏԻԿԱՆ

Ս. Ա. ԲԱԴԱԼՅԱՆ

Տնտեսական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*Մեր երկրի զարգացման արդի ժամանակաշրջանում, երբ դրված է հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման կարևորագույն խնդիրը, պետք է ավելի ու ավելի մեծ չափով խորամուխ լինել սոցիալիզմի տնտեսական հարաբերությունների մեջ, ճանաչել ու ճիշտ օգտագործել այդ հարաբերություններն արտացոլող տնտեսական օրենքներն ու կատեգորիաները։ Սրանից հետևում է, որ պետք է ճիշտ իմաստավորել ու մեկնաբանել սոցիալիզմի տնտեսական օրենքների գործողության բնույթը և դրանց պահանջների իրացման պրոցեսում մարդկային պրակտիկայի և գիտակցության ակտիվ դերը։ Դրա անհրաժեշտությունը բխում է նրանից, որ շատ հաճախ հասարակության տնտեսական կյանքի զարգացման օրենքները նույնացվում են բնության օրենքների հետ և անտեսվում են դրանց միջև եղած տարբերությունները։ Այդ, ամենից առաջ, արտահայտվում է նրանում, որ սոցիալիզմի տնտեսական օրենքների գործողությունը կտրում և անջատում են մարդկանց գիտակցական ու նպատակահարմար գործունեությունից, տնտեսական կյանքի զարգացման պրոցեսում նրանց միջամտությունից։ Ստացվում է, որ կարծես թե տնտեսական օրենքների գործողությունը ենթակա չէ մարդկանց գիտակցական միջամտությանն ու ակտիվ ներգործությանը, որ դրանք գործում են երկաթյա անհրաժեշտությամբ միայն։*

*Ի տարբերություն բնության օրենքների, տնտեսական զարգացման օրենքների ծագումն ու գործողությունը կապված է մարդկային հասարակության նյութական կյանքի, նրա արտադրահարաբերությունների հետ։ Տնտեսական օրենքներն իրագործվում են մարդկանց ակտիվ գիտակցական գործունեության միջոցով։ Մարդկանց նպատակներն իրականացվում են հասարակական կյանքի զարգացման օրինաչափությունների և տնտեսական օրենքների պահանջների իրացման ուղիով։*

*Կոմունիստական կուսակցության և սովետական պետության տնտեսական քաղաքականությունը, որն արտահայտում է աշխատավորների արմատական ու կենսական շահերը, հիմնվում է սոցիալիզմի տնտեսական օրենքների*



*պահանջների, էկոնոմիկայում տեղի ունեցող խոր պրոցեսների հաշվառման և օգտագործման վրա։ Սոցիալիզմի օբյեկտիվ տնտեսական օրենքների պահանջների և հասարակության տնտեսական կյանքում տեղի ունեցող պրոցեսների հաշվառման, դրանց ճանաչման ու պլանաչափ օգտագործման միջոցով է, որ իրացվում են կուսակցության և պետության տնտեսական քաղաքականությունը, տնտեսավարման գիտական սկզբունքներն ու մեթոդները, աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունը։*

* * *

*Ժամանակակից էտապում սոցիալիզմի տնտեսական օրենքների ամբողջ սիստեմի, մասնավորապես, հիմնական ու պլանաչափ զարգացման տնտեսական օրենքների պահանջների և գործողության մեխանիզմի ավելի լրիվ հաշվառման ու ճիշտ օգտագործման հիման վրա կատարելագործվում է ժողովրդական տնտեսության պլանավորումը, բարձրանում դրա գիտական մակարդակը։ Իսկ այդ նշանակում է, որ գիտատեխնիկական առաջադիմության սրընթաց զարգացման, էկոնոմիկայում գոյություն ունեցող տնտեսական ու տեխնիկական արդի կապերի շատ բարդ պայմաններում պետք է ժողովրդատնտեսական պլաններում ապահովվեն արդյունավետ տնտեսական լուծումներ և համամասնություններ։*

*Համամասնությունների պրոբլեմը սոցիալիստական արտադրության պլանաչափ կազմակերպման կարևորագույն պրոբլեմն է։ Վ. Ի. Լենինն ասում էր, որ պլանաչափությունը դա հենց մշտական, գիտակցորեն պահպանվող համամասնությունն է։ Սակայն համամասնությունը ինչ-որ պարզ ու հասարակ հավասարակշռություն, էկոնոմիկայում մեկընդմիշտ տրված հարաբերակցություն չէ։ Չի կարող ձեռք բերվել համամասնականություն առանց էկոնոմիկայի շարժունակության, առանց գիտատեխնիկական առաջադիմության հիմնական տենդենցների և ժողովրդական տնտեսության մեջ միջճյուղային ու ներճյուղային կապերի և դրանց մշտական կատարելագործման հաշվառման։ Որոշ տնտեսագետներ «համամասնություն» ու «հավասարակշռություն» հասկացությունները նույնացնում են։ Սակայն ամեն մի հավասարակշռություն դեռ համամասնություն չէ։ Համամասնությունը ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացման հիմնական բովանդակությունն է։ Հավասարակշռությունը համամասնության արտաքին արտահայտությունն է։ Ամեն ինչ կախված է նրանից, թե որքանով խոր ու ճիշտ են որոշված ժողովրդատնտեսական համամասնությունները, որքանով ճիշտ են սահմանված ներճյուղային ու միջճյուղային կապերն ու հարաբերակցությունները։ Չի բացառվում, որ էկոնոմիկայում կարող է լինել հավասարակշռություն և այն դեպքում, երբ անգամ չեն սահմանված միջճյուղային ամենախնայողական կապեր։*

*Սոցիալիստական էկոնոմիկայում ժողովրդատնտեսական յուրաքանչյուր պլան պետք է հավասարակշռված (բալանսավորված) լինի։ Դա ճիշտ պլանավորման և էկոնոմիկայի համամասնական զարգացման հիմնական պայմանն է։ Բայց պետք է նշել, որ այդ պայմանը ինքնաբերաբար և բոլոր դեպքերում բացարձակ չի գործում։ Որոշակի պայմաններում, չնայած ժողովրդատնտեսական պլանի արտաքնապես հավասարակշռված լինելուն, էկոնոմիկայի զարգացման մեջ կարող է գոյություն ունենալ անհամամասնականություն։ Դա կարող է առաջանալ ինչպես սուբյեկտիվ, այնպես և օբյեկտիվ պատճառների հետևանքով։ Այսպես, էկոնոմիկայի անհամամասնական զարգացման սուբ-*

չեկտիվ պատճառը կարող են լինել պլանավորման թերությունները՝ սխալ հաշվարկումներն ու վրիպումները, պլանների անկատարությունը կամ տնտեսության առանձին ճյուղերում պլանների ոչ-բավականաչափ հստակ կատարումը։ Սակայն կան նաև ժողովրդական տնտեսության անհամամասնական զարգացման օբյեկտիվ պատճառներ, որոնք ծագում են ոչ միայն բնական աղետների, այլև տարբեր ժամանակաշրջաններում երկրի էկոնոմիկայի զարգացման բնույթի առանձնահատկություններից։ Ինչպես հայտնի է, մեր երկրի էկոնոմիկայում անցյալում գոյություն ուներ խիստ անհամամասնություն արդյունաբերության ու գյուղատնտեսության, արդյունաբերության «Ա» և «Բ» խմբերի զարգացման տեմպերի միջև։ Այդ անհամամասնությունը որոշ չափով գոյություն ունի նաև սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման արդի էտապում։ Բայց պետք է ասել, որ ինչպես անցյալում, այնպես և ներկայումս ժողովրդատնտեսական պլանները միշտ հավասարակշռված են եղել։ Այդ փաստը կարևոր նշանակություն ունի ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացման տնտեսական օրենքի գործողության և սոցիալիզմի առավելությունների իմաստավորելու ու հասկանալու գործում։ Ժողովրդական տնտեսության կենտրոնացված կառավարման դեմոկրատական սկզբունքի իրագործման շնորհիվ մեր երկրի էկոնոմիկան, ինչպես նկատում ենք, պլանաչափորեն է զարգացել նաև այնպիսի պայմաններում, երբ էկոնոմիկայի ոչ բոլոր ճյուղերն են զարգացել համամասնականորեն։ Այդ կապակցությամբ անհրաժեշտ է նորից ընդգծել, որ «համամասնություն» և «հավասարակշռություն» հասկացությունները չի կարելի ամբողջովին նույնացնել, քանի որ ոչ բոլոր դեպքերում են դրանք համընկնում։ Բայց պլանավորման գերագույն ու վերջնական նպատակն է, որ հավասարակշռությունը լրիվ համապատասխանի ժողովրդական տնտեսության համամասնական զարգացման պահանջներին։

Այսպիսով, արդի պայմաններում ժողովրդական տնտեսության մեջ համամասնությունների հասնելու և արտադրության կառուցվածքը զարգացող էկոնոմիկայի, ժողովրդի նյութական ու կուլտուրական պահանջներին համապատասխանեցնելու խնդրին է ենթարկված ընթացիկ հնգամյակում արտադրամիջոցների և անձնական սպառման առարկաների արտադրության տեմպերի մերձեցումը, որը շարունակվելու է նաև նոր հնգամյակում։ Իսկ այդ նշանակում է, որ բալանսավորումն ավելի ու ավելի մեծ չափով կարտացոլի ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացման սոցիալիզմի տնտեսական օրենքի իրական պահանջները։ Ժողովրդական տնտեսության մեջ հավասարակշռության և համամասնականության միջև ավելի ու ավելի լրիվ համապատասխանության ստեղծումը մեծ չափով կնպաստի ընթացիկ և հեռանկարային պլանների գիտատեխնիկական և տնտեսական հիմնավորվածությանը, կբարձրացնի հիմնավորված կանխատեսությունների դերը։ Այդ պատճառով համամասնությունների պրոբլեմը պահանջում է հատկապես խոր ուսումնասիրել ժողովրդական տնտեսության ներճյուղային ու միջճյուղային կապերն իրենց անընդհատ զարգացման, ժամանակակից պայմաններում, գիտատեխնիկական առաջադիմության առավելությունների լիակատար օգտագործմամբ հանդերձ։

* * *

Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման արդի փուլում ժողովրդական տնտեսության պլանավորման գիտական մակարդակի բարձրացումն առանձնահատուկ սրությամբ է առաջ քաշում սոցիալիզմի ժամանակ պլանաչափու-



թյան և ապրանքա-դրամական հարաբերությունների փոխադարձ կապի կա-
րևոր հարցը։ Այդ պահանջում է ավելի լայն կերպով ուսումնասիրել ժողովր-
դական տնտեսության պլանային կազմակերպման մեջ ապրանքա-դրամական
հարաբերությունների տեղն ու դերը։ Սխալ կլինի ապրանքա-դրամական հա-
րաբերությունները հակադրել սոցիալիստական արտադրությանը։ Սոցիալիզմի
կարևորագույն առանձնահատկությունն այն է, որ պատմության մեջ առաջին
անգամ ապրանքա-դրամական հարաբերությունները գործում են արտադրու-
թյան պլանաչափ կազմակերպման շրջանակներում։

Տնտեսավարման նոր պայմաններում զգալի չափով ակտիվացել է ապ-
րանքա-դրամական հարաբերությունների դերը, բարձրացել արժեքային այն-
պիսի լծակների նշանակությունը, ինչպիսիք են՝ գինը, շահույթը, իրացումը
և այլն։ Դրանց դերի ու նշանակության բարձրացումը մեծ չափով նպաստում
է ժողովրդատնտեսական պլանի որակի բարձրացմանը և նրա կայունության
ապահովմանը։ Հետևաբար, սխալ է այն տեսակետը, որի համաձայն տնտե-
սական ռեֆորմը, սոցիալիստական արտադրության կառավարման ամբողջ սիս-
տեմի կատարելագործման ու բարելավման կապերից անկախ, հանգեցնում է
ապրանքա-դրամական հարաբերությունների դերի միակողմանի ուժեղացմա-
նը։ Այս սխալ մոտեցումը որոշ տնտեսագետների մոտ սոցիալիստական ար-
տադրության նպատակի վերաբերյալ հարուցել է թյուր պատկերացում։

Տնտեսավարման նոր սիստեմի պայմաններում շահույթի դերի ուժեղաց-
ման կապակցությամբ առանձին տնտեսագետներ սոցիալիստական արտա-
դրության նպատակը համարում են շահույթը։ Դա խորապես սխալ է։ Սոցիա-
լիստական արտադրության անմիջական նպատակը եղել ու մնում է մարդ-
կանց նյութական ու կուլտուրական հարաճուն պահանջմունքների ավելի լրիվ
բավարարումը, հասարակության բոլոր անդամների համակողմանի զարգաց-
ման ապահովումը։ «Միայն սոցիալիզմը,— ասում էր Լենինը,— հնարավորու-
թյուն կտա արդյունքների հասարակական արտադրությունն ու բաշխումը
լայնորեն տարածել և գիտական նկատառումներով իսկապես ենթարկել այն
նպատակին, թե ինչպես բոլոր աշխատավորների կյանքը դարձնել առավել
հեշտ, և այնպես, որ նա բարեկեցության հնարավորություն ընձեռի աշխա-
տավորներին։ Միայն սոցիալիզմը կարող է իրականացնել այս» (Երկեր, հ. 27,
էջ 511)։

Լենինի այս դրույթներում բացահայտված է սոցիալիզմի հիմնական տըն-
տեսական օրենքի էությունը։ Ակնհայտ է, որ սոցիալիստական արտադրու-
թյան նպատակը չի կարող լինել շահույթը։ Այդ ճիշտ է ո՛չ միայն ամբողջ
հասարակական արտադրության, այլև սոցիալիստական յուրաքանչյուր ձեռ-
նարկության մասշտաբով։ Հետևաբար, ճիշտ չէ, որ ամբողջ հասարա-
կական արտադրության նպատակը միայն մարդկանց նյութական ու կուլ-
տուրական պահանջմունքների բավարարումն է, իսկ ձեռնարկության տնտեսա-
կան գործունեության նպատակը՝ շահույթի ստացումը։ Ո՛չ տեսականորեն և
ոչ էլ մեթոդոլոգիական տեսակետից ճիշտ չի լինի հակադրել ամբողջ հասա-
րակական արտադրության և սոցիալիստական առանձին ձեռնարկությունների
տնտեսական գործունեության նպատակը։ Զգետք է մոռանալ, որ չկա արտա-
դրության վերացական նպատակ։ Սոցիալիստական արտադրությունը դա
պլանային կարգով միմյանց հետ փոխադարձորեն կապված առանձին ձեռ-
նարկությունների ու միավորումների համաձայնեցված գործունեությունն է,
որը որոշվում ու կարգավորվում է ո՛չ թե շահույթի ստացման, այլ հասարա-

կության և նրա անդամների նյութական ու կուլտուրական պահանջմունքների
բավարարման շահերով: Սակայն չի կարելի թերագնահատել շահույթի դերը:
Շահույթը սոցիալիստական արտադրության նպատակի իրացման կարևորա-
գույն միջոցներից մեկն է: Այն սոցիալիստական ընդլայնված վերարտադրու-
թյան ապահովման և աշխատավորների բարեկեցության աճման աղբյուրն է:

Շահույթը սոցիալիստական ձեռնարկությունների արտադրական գործու-
նեության պրոցեսում կարևոր դեր է խաղացել և պետության կենտրոնացված
զուտ եկամտի խոշոր աղբյուրներից մեկն է: Տնտեսավարման նոր պայման-
ներում շահույթի աճած դերն այն է, որ վերջինս դառնում է ձեռնարկություն-
ների տնտեսական գործունեության գնահատման կարևոր ցուցանիշներից մեկը
և ոչ թե միակն ու որոշիչը: Շահույթը թույլ է տալիս ընդհանրացված տես-
քով բնութագրել ձեռնարկությունների տնտեսական գործունեության ար-
դյունքները և հայտնի չափով որոշում է այդ գործունեության արդյունավե-
տությունը: Հակառակ դատողությունը, իհարկե, չի համապատասխանում
արտադրության սոցիալիստական եղանակի էությանը և նրա պլանա-
չափ կազմակերպման բնույթին: Չի կարելի հաշվի չառնել, որ շահույ-
թի, ինչպես և արժեքային ամեն մի կատեգորիայի մեջ կա որոշակի հակա-
սություն: Դա արտահայտվում է նրանով, որ առանձին ձեռնարկություն-
ներ փորձում են արտադրության շահութաբերությունը բարձրացնել ոչ թե ար-
տադրանքի ինքնարժեքի իջեցման և աշխատանքի արտադրողականության
բարձրացման, այլ ձեռնտու ասորտիմենտի արտադրանք թողարկելու միջո-
ցով: Այդ անցանկալի երևույթի վերացման համար տնտեսավարման նոր
պայմաններում, շահույթի ցուցանիշի հետ միասին, ձեռնարկությունների
տնտեսական գործունեության գնահատման համար կարևոր նշանակություն է
ստանում պլանի կատարումն ըստ նոմենկլատուրայի: Դրանով իսկ պլանը
սահմանափակում է այն բացասական տենդենցները, որոնք կարող են ծագել
այնպիսի պայմաններում, երբ արտադրանքի ասորտիմենտի խախտման ճա-
նապարհով բարձրանում է շահույթի ստացման մեջ ձեռնարկության շահա-
գրգռվածությունը: Ինչպես հայտնի է, տնտեսական ռեֆորմի պայմաններում
այդ շահագրգռվածությունը պայմանավորված է նրանով, որ շահույթի հաշ-
վին ձեռնարկություններում ստեղծվում են տնտեսական խթանման ֆոնդեր:
Սրանից հետևում է, որ պետք է ձեռնարկության շահույթը արտացոլող ար-
դյունքը ճիշտ չափակցել այն ռեսուրսների հետ, որոնք խրախուսման և ար-
տադրության զարգացման համար օգտագործում են ձեռնարկությունները:

Այդ պրոբլեմների տեսական իմաստավորումը պետք է հենվի սոցիալիս-
տական էկոնոմիկայի այնպիսի կարևորագույն կատեգորիայի հետագա ավելի
խոր ուսումնասիրության վրա, ինչպիսին է շահերի տնտեսական կատեգորիան:

Յուրաքանչյուր հասարակարգում արտադրահարաբերությունների էության
արտահայտման կարևոր ձևերից մեկը մարդկանց տնտեսական շահերն են:
«Յուրաքանչյուր տվյալ հասարակության տնտեսական հարաբերությունները,—
գրել է Էնգելսը,— ամենից առաջ դրսևորվում են որպես տնտեսական շահեր»
(К. Маркс и Ф. Энгельс, Соч. т. 18, стр. 271):

Մարքսը, ընդգծելով շահի կատեգորիայի հասարակական իմաստն ու կա-
րևորությունը, իր վաղ շրջանի աշխատություններից մեկում՝ «Վիճաբա-
նություններ մամուլի ազատության մասին», ցույց է տվել. «Այն ամե-
նը, ինչի համար պայքարում է մարդը, կապված է նրա շահերի հետ»
(К. Маркс и Ф. Энгельс, Соч. т. 1, стр. 72):



Մեր գրականության մեջ որոշ տնտեսագետներ ու փիլիսոփաներ տնտե-
սական շահերը համարում են սուբյեկտիվ կատեգորիա, դրա մեջ տեսնելով
մարդու տարբեր տեսակի (տնտեսական, ֆիզիոլոգիական և հոգևոր) պա-
հանջները: Իսկ ոմանք էլ տնտեսական շահերն ըստ էության նույնացնում են
շահագրգռվածության հետ: Շահի հարցին կարելի է մոտենալ լայն առումով,
սակայն շահերի բոլոր տեսակների մեջ հիմնականը տնտեսական շահերն են
և քաղաքատնտեսությունը զբաղված է հենց այդ շահերի հարցով, դրանք
համարելով իբրև տնտեսական օբյեկտիվ կատեգորիաներ, որոնք ձևավոր-
վում և արտահայտվում են որոշակի արտադրական հարաբերությունների և
տնտեսական օրենքների սիստեմի գործողության պայմաններում: Տնտեսա-
կան շահերը, արտահայտելով արտադրահարաբերությունների էական կող-
մերը, տնտեսական օրենքների գործողության մեխանիզմի վճռական տարրն են:

Մարքս-լենինյան տնտեսագիտությունը դասակարգում է շահերի տարբեր
տեսակներ՝ անհատական կամ անձնական, խմբային կամ կոլեկտիվ, դասա-
կարգային և համաժողովրդական շահեր: Ընդ որում, սխալ կլինի կարծել, թե
սոցիալիզմի ժամանակ համաժողովրդական շահերը տարրալուծվում ու բա-
ժանվում են շահերի առանձին տեսակների, որ համաժողովրդական շահերը
դրանց առանձին տեսակների մեխանիկական գումարն է: Ընդհակառակը, շա-
հերի յուրաքանչյուր տեսակ շահերի արտահայտման ինքնուրույն ձև է և հա-
սարակության մեջ արտացոլում է որոշակի սոցիալ-տնտեսական հարաբերու-
թյուն: Արտադրության եղանակների փոփոխման հետ միասին փոփոխվում են
նաև շահերի բովանդակությունը, դրանց դրսևորման և իրացման ձևերը:

Սոցիալիզմի ժամանակ շահերի առանձին տեսակների միջև գոյություն
ունեն համաստորադասական որոշ հարաբերություններ, որոնցում համաժո-
ղովրդական շահերը խաղում են որոշակի դեր, ընդ որում, դրանք չեն հակա-
դրվում շահերի մյուս ձևերին: Սոցիալիզմի պայմաններում արտադրամիջոց-
ների հասարակական սեփականությունն օրինաչափորեն կանխորոշում է շա-
հերի տարբեր տեսակների արմատական ընդհանրությունը, համաժողովրդա-
կան շահերը դառնում են հասարակության բոլոր անդամների շահերը: Այդ
պատճառով էլ սոցիալիզմի ժամանակ հասարակական կյանքն ընդհանրապես
կարող է ներդաշնակորեն զարգանալ այն դեպքում միայն, երբ ճիշտ կերպով
զուգակցվում են տնտեսական շահերի բոլոր տեսակները և չի թերագնահատ-
վում դրանցից և ոչ մեկը:

Սոցիալիստական արտադրահարաբերությունների պայմաններում վերաց-
ված է հասարակության, կոլեկտիվի և անհատի շահերի միջև եղած հակա-
դրությունը: Այդ հակադրության հիմքերը հաղթահարվել են արտադրամիջոց-
ների սոցիալիստական հանրայնացման, հասարակական արտադրության
պլանաչափ կազմակերպման ու զարգացման և արտադրության անմիջական
նպատակի արմատական փոփոխության հիման վրա: Սոցիալիզմի ժամանակ
արտադրության անմիջական նպատակը ենթարկված է մարդկանց նյութական
ու կուլտուրական պահանջմունքների բավարարմանը: Դրանով պետք է բա-
ցատրել, որ սոցիալիզմի օրոք վերացված են անհատի, կոլեկտիվի և հասա-
րակության միջև հակամարտ հակասությունները: Սակայն նրանց միջև դեռևս
կան որոշ, ոչ-հակամարտ հակասություններ, որոնք պայմանավորված են սո-
ցիալիզմի զարգացման առանձնահատկություններով:

Արտադրության և աշխատանքի անմիջական հասարակական բնույթը, որը
խարսխված է արտադրամիջոցների հանրային սոցիալիստական սեփականու-

թյան վրա, որոշում է անձնական ու հասարակական շահերի ընդհանրությու-
նը։ Բայց, դրա հետ միասին, սոցիալիզմի ժամանակ աշխատանքը միատարր
չէ, նրա առանձին կոնկրետ տեսակների (մտավոր ու ֆիզիկական, բարդ ու
պարզ, ծանր ու թեթև և այլն) միջև դեռևս գոյություն ունեն սոցիալ-տնտե-
սական տարբերություններ։ Դա հանգամանք է, որը նկատում ենք ըստ աշ-
խատանքի բաշխման սոցիալիզմի տնտեսական օրենքի գործողության մեջ։
Սոցիալիզմի օրոք մարդիկ արտադրամիջոցների նկատմամբ գտնվում են միև-
նույն հարաբերության մեջ, վերացված է մարդու կողմից մարդու շահագոր-
ծումը, բայց մարդկանց միջև դեռևս պահպանվում է որոշակի անհավասարու-
թյուն սպառման և նյութական ապահովվածության հարցում։ Մարքսը և Լե-
նինն ընդգծել են, որ այդ թերությունն անխուսափելի է կոմունիստական հա-
սարակարգի առաջին փուլում՝ սոցիալիզմի ժամանակ, քանի դեռ նյութական
ու հոգևոր բարիքները բաշխվում են ըստ աշխատանքի քանակի և որակի։
Սակայն ըստ աշխատանքի բաշխման տնտեսական օրենքի գործողությունը
թույլ է տալիս ճիշտ սահմանել հասարակության և նրա առանձին անդամների
միջև եղած հարաբերությունը։ Այդ հարաբերությունը կախված է հասարակա-
կան արտադրության մեջ յուրաքանչյուր աշխատողի ներդրած իրական ավան-
դից, որը և հանդիսանում է անձնական շահի նյութական հիմքը։

Լենինը, բարձր գնահատելով անձնական շահի դերը, ասում էր, որ կա-
ռուցել սոցիալիստական հասարակարգ և տասնյակ ու տասնյակ միլիոնավոր
մարդկանց կոմունիզմին մոտեցնել կարելի է «Ոչ թե անմիջական խանդավա-
ռության վրա հենվելով, այլ մեծ հեղափոխության ստեղծած խանդավառու-
թյան օգնությամբ, հենվելով անձնական շահի, անձնական շահագրգռվածու-
թյան, տնտեսական հաշվարկի վրա...» (Երկեր, հ. 33, էջ 46)։

Հետևելով Լենինի պատգամներին, կոմունիստական կուսակցությունը և
սովետական պետությունը հետևողականորեն վարում են այն գիծը, որպեսզի
հասարակական և անձնական շահերի ճիշտ զուգորդման հիման վրա
ավելի արդյունավետ օգտագործվեն սոցիալիզմի առավելությունները և տն-
տեսական օրենքների պահանջները։

Ապրանքա-դրամական հարաբերությունների գոյության պայմաններում
ձեռնարկությունների աշխատողների և նրանց կոլեկտիվների տնտեսական
շահերը դրսևորվում և իրացվում են, ամենից առաջ, ազգային եկամտի բաշխ-
ման ոլորտում։ Բաշխման հարաբերություններն էկոնոմիկայի այն ոլորտն են,
որտեղ այդ շահերը դրսևորվում են ավելի ցայտուն կերպով։

Սոցիալիստական արտադրահարաբերությունների պայմաններում ճիշտ
բաշխումն արտադրության արագ աճի, աշխատանքի որակի և նրա արդյունավե-
տության բարձրացման մի հզոր գործոն է։ Տնտեսական ռեֆորմը զգալի չա-
փով ակտիվացրել է բաշխման հարաբերությունների դերը։ Այն նորն ու էա-
կանը, որ ռեֆորմը մտցնում է բաշխման հարաբերությունների մեջ, ամենից
առաջ, այն է, որ եկամուտների բաշխման նոր ձևերն ավելի մեծ չափով են
համապատասխանում հասարակության, կոլեկտիվի և առանձին աշխատող-
ների շահերին։ Պետք է ճիշտ զուգակցվեն այդ շահերը և դրանց վրա ներգոր-
ծելու միջոցով ուժեղացվեն սոցիալիստական արտադրության աճման խթան-
ները։ Այդ սկզբունքն ավելի հետևողականորեն արտացոլվում է շահույթի
բաշխման նոր սիստեմի մեջ։ Շահույթի հաշվին ձեռնարկություններում տն-
տեսական խթանման ֆոնդերի ստեղծումը և արտադրաֆոնդերի դիմաց վճա-
րումը որոշ չափով փոխում են ձեռնարկության ու պետության փոխհարաբե-



րությունը և ձեռնարկության գործունեության ընդհանուր արդյունքների բարե-
լավման բնագավառում բարձրացնում աշխատողների շահագրգռվածությունը։
Ուստի, բաշխման հարաբերությունների հետագա կատարելագործումը պետք է
խթանի արտադրության զարգացմանը և աշխատանքի արտադրողականության
բարձրացմանը։

Մեր երկրի էկոնոմիկայի զարգացման արդի էտապում աշխատանքի ար-
տադրողականության աճման հարցը ձեռք է բերում բացառիկ նշանակություն։
Չի կարելի հաշվի չառնել այն հանգամանքը, որ ժամանակակից պայմաննե-
րում լրացուցիչ աշխատուժ ներգրավելու հաշվին արտադրության ընդլայնման
հնարավորությունները զգալի չափով սահմանափակ են։ Ներկայումս աշխատ-
ունակ բնակչության համարյա 92 տոկոսը զբաղված է ժողովրդական տնտե-
սության մեջ։ Նյութական արտադրության ճյուղերի պահանջների աճման հետ
միասին անընդհատ բարձրանում է ոչ-արտադրական ճյուղերի և ծառայու-
թյունների ոլորտի պահանջն աշխատուժի նկատմամբ։ Հետևաբար, արտադրու-
թյան զարգացման տեմպերի հետագա արագացումը մեծ չափով որոշվելու է
աշխատանքի արտադրողականության աճման տեմպերով։

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսությունն այժմ թևակոխել է զարգացման մի
այնպիսի փուլ, երբ տնտեսական աճման և առաջադիմության գլխավոր աղ-
բյուրը ավելի ու ավելի են դառնում արտադրության մեջ գիտության ու տեխ-
նիկայի նորագույն տվյալների արմատավորումը և դրա հիման վրա հասարա-
կական աշխատանքի արտադրողականության բարձրացումը։ Արտադրության
մեջ գիտատեխնիկական առաջադիմության նվաճումների լայն չափերով ներ-
դրման հիման վրա միայն կարելի է ձեռք բերել աշխատանքի արտադրողա-
կանության աճման կայուն ու բարձր տեմպեր։

Պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմը լայն ասպարեզ
է բացում աշխատանքի արտադրողականության աճման տեմպերի բարձրաց-
ման համար։ Ինչպես հայտնի է, տնտեսավարման նոր պայմաններում ձեռ-
նարկությունների համար աշխատանքի արտադրողականությունը չի հաս-
տատվում որպես պլանային ցուցանիշ։ Աշխատանքի արտադրողականությու-
նը ձեռնարկության համար հանդիսանում է հաշվարկային ցուցանիշ։ Բայց դա
բնավ չի նշանակում, որ ձեռնարկության համար նվազեցվում է այդ ցուցա-
նիշի դերը։ Այդ արվել է, ամենից առաջ, նրա համար, որպեսզի աշխատան-
քային ռեսուրսների օգտագործման բնագավառում ընդլայնվեն ձեռնարկու-
թյունների իրավունքները և դրանով իսկ աշխատանքի արտադրողականության
աճման համար ստեղծվեն ավելի նպաստավոր պայմաններ։ Այդ պատճառով
տնտեսական խթանման մեխանիզմի հետագա կատարելագործումը պետք է
նպաստի աշխատանքի արտադրողականության առավել բարձրացմանը։

Տնտեսավարման նոր պայմաններում էկոնոմիկայի կառավարման տնտե-
սական մեթոդների դերի ուժեղացումը, շահույթի դերի բարձրացումը և լիա-
կատար տնտեսական հաշվարկի սկզբունքների հետևողական ներդրումը պայ-
մանավորում են սոցիալիստական արտադրության զարգացման ժամանակա-
կից էտապում գների դերի զգալի բարձրացումը։ Սոցիալիստական էկոնոմի-
կայում գինը արժեքի օրենքի օգտագործման, ժողովրդական տնտեսության
առանձին ճյուղերի միջև տնտեսական հիմնավորված հարաբերակցությունների
ստեղծման, ազգային եկամտի ճիշտ բաշխման և օգտագործման կարևոր
գործոններից մեկն է։ Կարող ենք ասել, որ սոցիալիզմի տնտեսական մեխա-
նիզմի արդյունավետ գործողությունը մեծ չափով կախված է գների վիճակից։

Ինչպես հայտնի է, մինչև տնտեսավարման նոր սիստեմին անցնելը, գնագոյացման հարցերը լայն չափերով դարձել էին բանավեճի առարկա։ Այդ բանավեճերը, անկասկած, օգնեցին որոշելու գների սահմանման ավելի ճիշտ մեթոդներ, որպեսզի դրանք ավելի մոտեցվեն հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքի ծախսումներին։ Պրակտիկորեն դա իր արտահայտությունն է գտել նոր մեծածախ գների մեջ, որոնք արդյունաբերության բոլոր ճյուղերի շահութաբեր աշխատանքի համար ստեղծել են նպաստավոր պայմաններ։ Սակայն սխալ կլինի ասել, որ նոր մեծածախ գները լիովին համապատասխանում են տնտեսական ռեֆորմի պահանջներին և հետագա կատարելագործման կարիք չունեն։ Դեռևս առանձին ձեռնարկություններում և անգամ տրնտեսության ճյուղերում գոյություն ունեն շահութաբերության մակարդակի զանազանություններ։ Նոր պայմաններում, երբ շահութաբերությունը ձեռնարկության գործունեության կարևոր ցուցանիշներից մեկն է, դրա փոփոխուն մակարդակը կարող է ձեռնարկությանը մղել այնպիսի քայլերի, որոնք միշտ չէ, որ կհամապատասխանեն համաժողովրդական շահերին։

Սկզբունքային նշանակություն ունի այն հարցը, որ ներկայումս մեծածախ գները սահմանվում են նոր մեթոդով։ Այդ մեթոդի էությունն այն է, որ ճյուղային շահութաբերությունը որոշվում է ոչ թե շահույթն ինքնարժեքի, այլ արտադրական ֆոնդերի արժեքի հետ հարաբերության մեջ դնելու միջոցով։ Գների որոշման նման մեթոդը թույլ է տալիս արդյունաբերության առանձին ճյուղերում, ֆոնդահատույցի տարբերությունների հաշվառման միջոցով, ըստ ճյուղերի ավելի ճիշտ արտացոլել հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքի ծախսումները։ Հետևաբար, նոր մեծածախ գները լուրջ քայլ են դրանց կատարելագործման ճանապարհին։ Բայց այդ չի նշանակում, ինչպես նշեցինք, թե այդ գները հետագա կատարելագործման կարիք չունեն։ Նոր մեծածախ գների կիրառումը ցույց է տալիս, որ շատ ձեռնարկություններում գոյություն ունեն առանձին արտադրանքների շահութաբերության չհիմնավորված մեծ տարբերություններ, որոնք պետք է վերացվեն։ Սակայն այդ պրոբլեմը պետք է լուծվի ո՛չ միայն գները կատարելագործելու, այլև արտադրության մասնագիտացման և դրան համապատասխան տարբեր ձեռնարկություններում արտադրանքի առանձին տեսակների պլանային տեղաբաշխման ուղիով։

Հետևաբար, սոցիալիզմի տնտեսական օրենքների, ապրանքա-դրամական հարաբերությունների և արժեքային կատեգորիաների ավելի ակտիվ օգտագործումը մեծ չափով կնպաստի գների հետագա և մշտական կատարելագործման բարելավմանը։

Տնտեսավարման նոր սիստեմի պայմաններում տնտեսական օրենքների և կատեգորիաների ճիշտ օգտագործումը կհանդիսանա սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման և նրա արդյունավետության բարձրացման խնդիրների հաջող լուծման կարևորագույն նախադրյալը։

# ՃՇՄԱՐՏՈՒԹՅԱՆ ԳԵՂԵՑԿՈՒԹՅՈՒՆԸ

Ա. Լ. ՔԱԼԱՆԹԱՐ

Թեև մեր խոսքն արվեստի մասին չի լինելու, սակայն, այնուամենայնիվ, սկսենք արվեստի պատմությունից վերցված և էսթետիկական-տեսական մեծ կարևորություն ունեցող խիստ նշանակալի մի փաստից։

Միքելանջելոն տակավին պետք է հորիներ հուշակավոր սուրբ Պետրոսի տաճարի գմբեթի ձևը։ Հայտնի է, թե ինչպիսի տանջալի որոնումներից հետո և ինչպիսի լարված աշխատանքով նրան հաջողվեց վերջապես գծագրել գմբեթի այն ձևը, որը միանգամայն համապատասխանում էր նրա էսթետիկական բարձր ճաշակին։ Բուն այդ փաստում, իհարկե, զարմանալի ոչինչ չկա։ Զարմանալին տեղի ունեցավ շատ ավելի ուշ, երբ ֆրանսիացի երկրաչափ դե-Լյագիրը, ցանկանալով երկրաչափական տեսակետից ուսումնասիրել գմբեթի պատկերող գիծը, ի զարմանս իրեն պարզեց, որ այդ գիծը համապատասխանում է ճնշման կորագծին։ Դուրս եկավ, որ գեղեցկության գիծն առավելագույն կայունության գիծն է։ Զգտելով առավել գեղեցիկ ու նրբագեղ ձև տալ գմբեթին, այսինքն՝ լուծելով զուտ էսթետիկական խնդիր, Միքելանջելոն գտավ այն ձևը, որը պետք է տար գմբեթին, եթե հոգ տաներ նրա միայն ու միայն կայունության և դիմացկունության համար։

Այսպիսով, իր գործնական ապացույցը գտավ գեղեցկության բանական հիմքերի, գեղեցկի ու ճշմարիտի ազգակցության մասին այն միտքը, որն իր առավել լրիվ արտահայտությունը ստացավ Հեգելի էսթետիկայում, որի համար գեղեցիկը ճշմարտության (ըստ Հեգելի՝ բացարձակ գաղափարի) արտահայտությունն է կամ մարդկային ըմբռնումը։

Եվ այստեղ կարևոր է ահա թե ինչը. գեղեցիկը համարելով բացարձակի արտահայտությունը եղակիի մեջ, երբ բնությունը մարդուն հրաշալի հնարավորություն է տալիս առանձին երևույթի մեջ անմիջականորեն դիտել այդ երևույթի տեսակային ողջ էությունը, Հեգելը մեզ հանգեցնում է կոնստրուկտիվ այն մտքին, թե գեղեցիկը միշտ ամբողջի արտահայտությունն է նրա մի մասի, մեծի արտահայտությունը՝ փոքրի, անվերջը՝ վերջավորի, հավիտենականը՝ անցողիկի մեջ։ Այդ միտքը բեղմնավոր է ո՛չ միայն այն առումով, որ թույլ է տալիս ավելի խոր հասկանալու գեղարվեստական ընդհանրացման էությու-

նը, այլև այն, որ մի կարևոր առնչություն է բացահայտվում ճշմարտության ու գեղեցկության, գիտական ու գեղարվեստական գործունեության միջև։

Եվ իրոք, ինչո՞վ է խթանվում տեխնիկական առաջադիմությունը, եթե ոչ միջոցների նվազագույն կիրառմամբ՝ առավելագույն արդյունք ձեռք բերելու ձգտումով։ Այդ սկզբունքով, որը կարելի է խնայողության կամ ուղղակի նպատակահարմարության սկզբունք կոչել, համակված է մարդկային ողջ գործունեությունը, անկախ այն բանից գիտական տեսությանը, թե՞ տիեզերանավի ստեղծմանն է վերաբերում այն։ Իսկ ինչո՞վ է ղատվում իսկական գեղարվեստական երկը, եթե ոչ սահմանափակ միջոցներով արտահայտված խոր բովանդակությամբ։ Չէ՞ որ ձևի կատարելությունը ես, որը գեղեցկի անհրաժեշտ պայմանն է, վերջին հաշվով, որոշվում է նրանով արտահայտված բովանդակությամբ կամ նրա բովանդակած ինֆորմացիայի ծավալով։

Այստեղ հետաքրքրական է նաև մի ուրիշ հանգամանք։ Թեև մեծի մարմնավորումը փոքրի մեջ կամ փոքրի միջոցով մարդկային գործողության՝ առավել բնական եղանակն է, այնուամենայնիվ, այդ սկզբունքի ամեն մի նոր, նշանակալից կիրառումն ընդունում ենք իբրև «հրաշք», գիտատեխնիկական առաջադիմության կամ արվեստի հրաշք այդ բառի լայն և բուն իմաստով։ Մի՞թե հրաշք չէ պոետի այն ստեղծագործությունը, որով նա դուրս է գալիս մի երկի բուն սահմաններից, հնարավորություն ընձեռելով մեզ այն անվանելու դարաշրջանի բարքերի հանրագիտարան։ Մի՞թե հրաշք չէր մաթեմատիկական մեկ—երկու հավասարումներով Նյուտոնի տված աշխարհի բնագիտական այն պատկերը, որը, թվում է, արտահայտում էր լոկ ղանդվածի, շարժման քանակի և մարմնի արագության հարաբերությունը։ Հապա աշխարհի վիթխարի, անհամեմատ ավելի ծավալուն արդի պատկերը, որ մաթեմատիկական նույնքան ժլատ հավասարումներով տվել է Էյնշտեյնը։ Դա մենք նույնպես, իհարկե, արժեքավորում ենք իբրև հրաշք, ասես մի անգամ ևս ընդգծելով, որ ոչ միայն գեղարվեստական, այլև գիտական երևույթների այդպիսի ծայրաստիճան էմոցիոնալ, բառ էության էսթետիկական գնահատման հիմքում ընկած է գեղարվեստական ու գիտական գործունեության իրոք մոտիկությունը։

Գիտական ճշմարտության որոնումներին հետաքրքրական էջեր են նվիրել Էյնշտեյնը, Անրի Պուանկարեն իրենց աշխատություններում։ Հետաքրքրությունը դեպի այդ թեման ամենևին միայն մեծագույն մտածողների, միայն մաթեմատիկոսների ու ֆիզիկոսների մենաշնորհը չէ։ Բավական է թերթել ոչ միայն նեղ մասնագիտական նշանակություն ունեցող որևէ աշխատություն կամ «Наука и жизнь», «Знание—сила» տիպի ամսագրերի համարները, համոզվելու համար, թե այդ թեման որքան խոր է թափանցել արդի գիտական գրականության մեջ։

Այդ կապակցությամբ ավելի ուշադիր քննենք տեսաբան գիտնականի ստեղծագործության վրա ազդող օբյեկտիվ ու սուբյեկտիվ գործոնները։

Իհարկե, չի կարելի ժխտել գիտության զարգացման և հասարակական պրակտիկայի միջև գոյություն ունեցող ակնհայտ կապը։ Բայց ավանդական այդ դրույթը, ուր գիտության զարգացումը պայմանավորված է կյանքի պահանջներով, ճշմարիտ է միայն ընդհանուր առմամբ և ճշգրտումների կարիք ունի։ Այդ առումով, եթե որևէ բան ճնշում է գործադրում տեսաբան գիտնականի վրա, ապա դա նախ ինքը գիտությունն է, ավելի ճիշտ՝ նրա բուն զարգացման ներքին տրամաբանությունը, որը և առաջ է քաշում լուծում պահանջող խնդիրներ։ Հիմնականում հենց դրանով է որոշվում տեսական ուսումնասիրության հնարավոր թեմայի ընտրությունը, որը ուտիլիտար տեսակետից հաճախ կարող է և բոլորովին օգուտ չտալ։ Այդ դեպքում ո՞րն է այդ տիպի ուսումնասիրությունների հասարակական նշանակությունը։ Բանն այն է, որ դրանք հարկավոր են գիտությանը, իսկ առանց գիտության անհնար է որևէ զարգացած արտադրական գործունեություն, որևէ խելամիտ հասարակական պրակտիկա։ Էլ չենք խոսում այն մասին, որ տեսական մտքի ամեն մի իսկական նվաճում, որքան էլ այն կտրված լինի պրակտիկայից, ի վերջո, գտնում է իր պրակտիկ կիրառումը։ Հայտնի է, թե ինչպիսի ցնցող տպավորություն էր թողնում Լեյբնիցի վրա սովորական կեղծ միավորը։ Եվ դա հասկանալի է. չէ՛ որ, երբ մաթեմատիկան հանգեց կեղծ թվերի հասկացությանը, ոչ ոք չէր պատկերացնում այդ թվերի ռեալ նախակերպարը, առավել ևս, դրանց գործնական կիրառումը։ Սակայն կյանքի զարգացումը ցույց տվեց, որ առանց ֆունկցիաների տեսության այդ բաժնի անհնար է պատկերացնել ո՛չ արդի մաթեմատիկան, ո՛չ ժամանակակից տեխնիկական ու արտադրական շատ նվաճումներ։ Հապա մաթեմատիկայի տոպոլոգիայի բաժինը, որը երկար ժամանակ չափազանց աբստրակտ էր թվում նույնիսկ մաթեմատիկոսներին։ Այժմ պարզվում է, որ տոպոլոգիան բավարար չափով չի ընդհանրացված, որպեսզի հնարավոր լինի այն տարածել բոլոր անհրաժեշտ դեպքերի վրա։

Գիտության զարգացման ներքին տրամաբանություն, դրա իմմանենտ պահանջներ— ահա ինչով է որոշվում տեսաբան գիտնականի աշխատանքի իսկական կապը կյանքի, պրակտիկայի հետ։ Դրանով էլ հենց օբյեկտիվորեն խթանվում է գիտնականի ստեղծագործությունը։

Սակայն դա հարցի օբյեկտիվ, բանականությամբ ընկալվող կողմն է, որն ունի նաև իր սուբյեկտիվ, էմոցիոնալ կողմը, այն պայմանավորվում է ո՛չ միայն «գիտության ծարավով», թեև դա էլ բավական էմոցիոնալ լիցք է հաղորդում գիտական որոնումներին։ Այստեղ պակաս դեր չի խաղում գիտնականի ստեղծագործական ոգեշնչմամբ հայտաբերված օբյեկտիվ ճշմարտության գեղեցկությունը, որը գիտնականի գիտակցության մեջ ծնում է օրինաչափության հասկացություն, իսկ արվեստագետի հոգում՝ ներդաշնակության զգացմունք։ Չէ՛ որ արվեստագետը համոզված է, որ անդրադարձնելով կյանքի գեղեցկությունը, ի հայտ է բերում նրա կարևոր օրինաչափությունները։ Հապա էլ ինչո՞ւ գիտնականը չպետք է համոզված լինի, որ նրա ճշմարտության մեջ իր համար բացահայտվում է աշխարհի գեղեցկությունը։ Եվ, անշուշտ, նա դրանում համոզված է, անկախ այն բանից, թե գեղագետը նրան այդպիսի իրավունք վերապահում է, թե ոչ։

Սակայն գիտության մեջ էսթետիկական զգացմունքի նշանակությունը ամենևին չի սահմանափակվում միայն նրանով, որ այն մեծ չափով խթանում է գիտնականի ճշմարտության ձգտումին։ Մաթեմատիկայում, օրինակ, այդ զգացմունքը նաև այլ դեր է կատարում, հանդես գալով որպես աշխատանքի ավարտի վերջնական ու բարձրագույն չափանիշ։ Եվ իրոք, մաթեմատիկոսը ե՞րբ կարող է խնդիրը լուծված համարել. երբ առաջադրված հարցին սպառիչ պատասխան տրվի— կասի ամեն ոք։ Ճիշտ է, բայց ոչ միշտ և ամեն դեպքում։ Մաթեմատիկայում գոյություն ունի նրբագեղության, գեղեցիկ լուծման կայուն սահմանված հասկացությունը, և ոչ մի մաթեմատիկոս խնդիրը վերջնականապես լուծված չի համարի, եթե ստացված արդյունքը չհամապատասխանի նաև զուտ էսթետիկական պահանջներին, եթե չբավարարվի նրա զգացմունքը՝ գեղեցկության զգացմունքը։ Եվ հատկանշականն այն է, որ դա ամենևին չի նշա-

նակում գնահատման երկու տարբեր չափանիշների ընդունում։ Մաթեմատի-
կոսն իր զգացմունքներով և գնահատելով չի երկատվում գիտնականի ու ար-
վեստագետի, այլ ելնում է փորձի վրա հիմնված այն հաստատ համոզմունքից,
որ խնդրի առավել գեղեցիկ լուծումը նրա հենց ամենաճշգրիտ, ամենախելա-
կան լուծումն է։ Դա նույնքան անտարակույս է, որքան և այն, որ առանց ճըշ-
գրրտության, առանց գիտական խստապահանջության կամ, այլ կերպ ասած՝
ճշմարտությունից դուրս, չկա գեղեցկություն։

Այսպիսով, մենք վերադարձանք այն բանին, ինչից սկսեցինք։ Միքելան-
ջելոյի արվեստի պրակտիկայից վերցված դեպքը, պետք է ենթադրել, ամբողջ
ասվածի հաստատումն է։

Նկատի ունենալով այս ամենը, չի կարելի չզարմանալ, որ գեղեցկության
ու ճշմարտության հարաբերակցության հարցը դուրս է մնում մեր գեղագետ-
ների տեսադաշտից, նույնիսկ այն ժամանակ, երբ նրանց ուսումնասիրության
առարկան գեղեցկի պրոբլեմն է։ Դա առավել ևս զարմանալի է, քանի որ
գեղեցկության և ճշմարտության հարաբերակցության հարցը բարդ, ինքնու-
րույն խնդիր է, որը չի սահմանափակվում արվեստի մեջ ռեալիզմի հիմնավոր-
մամբ միայն, արվեստի համար ճշմարտացի, կյանքի իսկական արտացոլումը
լինելու անհրաժեշտությամբ։ Լավ է, իհարկե, որ միշտ հրատապ այդ պրոբ-
լեմին մեր գեղագետները բացառիկ ուշադրություն են նվիրում։ Բայց ինչո՞ւ
նրանց բոլորովին չի հետաքրքրում ճշմարտության հետ գեղեցկության սկըզ-
բունքային կապի ավելի ընդհանուր հարցը։ Ինչո՞ւ, երբ ակներև է, որ այն
կարող էր տեսական հիմք դառնալ գեղարվեստական ռեալիզմն ավելի խոր
հիմնավորելու համար։ Վերջապես ինչպե՞ս կարող են գեղագետները լռու-
թյան մատնել այն հարցը, որի շուրջ այնքան հաճախ և այնքան ոգևորված են
խոսում գիտնականները։ Մի հարց, որով զգալի չափով որոշվում է արդի
գիտական մտքի աննախընթաց վերելքը։ Կարելի է ասել, որ մեր գեղագիտու-
թյունը չէր էլ կարող զբաղվել այս խնդրով, քանի որ այնտեղ գոյատևում են
որոշ մոլորություններ, որոնք բացասում են ճշմարտությանը էսթետիկական
տեսակետից մոտենալու հնարավորությունը։ Այդ առումով պարզենք, թե մեզ
մոտ ինչպես է լուծվում գեղեցկության ու ճշմարտության մեջ սուբյեկտիվի և
օբյեկտիվի հարաբերակցությունը։

օբյեկտիվի հարաբերակցությունը։
էսթետիկայի վերջին ձեռնարկ-
Ճշմարտությունը,— ասվում է, օրինակ, էսթետիկայի վերջին ձեռնարկ-
ներից մեկում,— սուբյեկտիվ արտացոլումն է այն հարաբերությունների, ո-
րոնք հատուկ են բուն օբյեկտին, իսկ գեղեցկությունը օբյեկտի և սուբյեկտի
հարաբերությունն է։ Ճշմարտության մեջ սուբյեկտիվը ասես թե դառնում է օբ-
յեկտիվի աղավաղումը, ուստի, աշխարհի գիտական ճանաչումը ձգտում է սուբ-
յեկտիվ տարրը հասցնել նվազագույնի, որպեսզի օբյեկտիվը հնարավորին չափ
մաքրվի սուբյեկտիվից։ Իսկ ինչ վերաբերում է գեղեցկությանը, ապա այնտեղ
սուբյեկտիվը ո՛չ թե աղավաղում է օբյեկտիվը, այլ ձուլվում է դրան և կազ-
մում նյութական-հոգևոր մի բարդ երևույթ, ուստի և էսթետիկական իմացու-
թյունը չի կարող օբյեկտիվը զատել սուբյեկտիվից, չդադարելով էսթետիկա-
կան լինելուց։ Քրեստոմատիական դարձած այս ճշմարտությանը մենք գրեթե
հանդիպում ենք ամենուր։ Մինչդեռ եթե նույնիսկ գեղեցկության նման հակա-
դրումը ճշմարտությանը արդարացի է, ապա միանգամայն սահմանափակ ի-
մաստով։ Քանի որ գիտական իմացությունը ձգտում է ձերբազատվել ոչ թե
ընդհանրապես սուբյեկտիվությունից, այլ միայն աշխարհի իրական պատ-
կերը աղավաղող սուբյեկտիվությունից, որը, ի դեպ, բնորոշ է նաև գեղարվես-



տական իմացությանը։ Իսկ ինչ վերաբերում է սուբյեկտիվությանն ընդհան-
րապես, ապա իրականում հակառակն է տեղի ունենում, այսինքն՝ եթե ան-
հրաժեշտ է դեռևս ապացուցել, որ սուբյեկտիվ մոմենտն առկա է ո՛չ միայն
գեղեցկության ընկալման, այլև բուն գեղեցկության մեջ, որպես օբյեկտիվ ի-
րականություն, ապա ճշմարտությունը օբյեկտիվ աշխարհի սուբյեկտիվ ար-
տացոլումից դուրս գոյություն չունի։

Եվ իրոք, ինչպե՞ս է մարքս-լենինյան փիլիսոփայությունը սահմանում
ճշմարտությունը՝ որպես օբյեկտիվ ռեալականության սուբյեկտիվ պատկեր։
Հապա ինչո՞ւ մեր գեղագետները, որոնց, անշուշտ, քաջ հայտնի է այդ սահ-
մանումը, շարունակում են հաստատել, թե ճշմարտությունը գեղեցկությունից
տարբերվում է, իբր, նրանով, որ վերջինիս մեջ բացակայում է սուբյեկտի և
օբյեկտի հարաբերությունը։ Մի՞թե պարզ չէ, որ ճշմարտության այդպիսի
գռեհկացված ըմբռնումը բնորոշ է ո՛չ թե դիալեկտիկական, այլ մետաֆիզի-
կական մատերիալիզմին, որը ճշմարտությունը դիտում է ո՛չ թե որպես օբյեկ-
տիվ իրականության սուբյեկտիվ պատկեր, այլ նրա մեխանիկական, հայե-
լային ընդօրինակում։

Վերջապես մի՞թե կարելի է անտեսել սուբյեկտիվ-էմոցիոնալ այն լիցքը,
որով անխուսափելիորեն օժտված է մարդկային ամեն մի իմացություն. ան-
տեսել ուսումնասիրության օբյեկտի և իրականության բացահայտվող օրինա-
չափությունների նկատմամբ այն էսթետիկական վերաբերմունքը, որը գիտ-
նականների իսկ խոստովանությամբ նրանց ստեղծագործության հատկանշա-
կան գիծն է։ Այս առումով հիշենք Նիլս Բորի այն ասույթը, թե գիտական խո-
շոր հայտնագործությունները պահանջում են ո՛չ միայն անկանխակալ մտքի
պարզություն, այլև նրա «խենթությունը», այսինքն՝ ուսումնասիրվող երևույթի
նկատմամբ խոր ինքնատիպ, իր յուրահատուկ էմոցիոնալ երանգն ունեցող
ծայրահեղ սուբյեկտիվ հայացք։ Այդ հարցին սպառիչ պատասխան է տալիս
ՍՍՀՄ բժշկական գիտությունների ակադեմիայի իսկական անդամ Օ. Բարո-
յանը։ Իմ կարծիքով,— նկատել է ականավոր սովետական գիտնականը,—
հակումը գիտության նկատմամբ խելքի մի այնպիսի հատուկ խառնվածք է,
որի պայմաններում աբստրակտ սխեմաներն ու հասկացություններն օժտված
են այնքան ուժեղ էմոցիոնալ երանգավորմամբ, որ դառնում են մարդու էմո-
ցիոնալ կյանքի գլխավոր աղբյուրը... Գիտնականն ապրում է հասկացու-
թյունների աշխարհում, ինչպես կոմպոզիտորը՝ հնչյունների, գրողը՝ հերոս-
ների։

Անկրկնելի է գիտնականի հասկացությունների աշխարհի էմոցիոնալ կա-
ռուցվածքը. այնտեղ առկա են նրա բնավորության յուրահատկությունը, փոր-
ձը, գիտելիքները, ինչպես նաև անգիտությունը։ Այդ կառուցվածքի անկրկնե-
լիությունը հետազոտողի առավել արժեքավոր հատկությունների՝ նրա գիտա-
կան ինտուիցիայի, անհատական հայացքների ու մոտեցումների հիմքն է...
Պրոբլեմի նկատմամբ հենց սեփական էմոցիոնալ վերաբերմունքն է, որ գիտ-
նականին թույլ է տալիս տեսնելու այն, ինչ ուրիշները չեն նկատում, անհաշտ
լինել տրամաբանության և առողջ դատողության հետ (խենթ լինել,— ասել է
Բորը։— Ա. Ք.), զարմանալ, երբ ուրիշները չեն զարմանում։ Եվ այդ հատկու-
թյունը (հատկություն, որը պայմանավորված է աբստրակտ նոր հասկացու-
թյունների առաջացման էմոցիոնալ-սուբյեկտիվ բնույթով։— Ա. Ք.) գիտության
զարգացումը որոշող գլխավոր գործոններից մեկն է։ «Литературная газе-
та», № 10, за 1967 г.։

*Ահա մեր շոշափած հարցի սպառիչ պատասխանը, պատասխանը մի մարդու, որը ոչ միայն դատողություններ է անում գիտության մասին, այլև անմիջականորեն զբաղվում է գիտությամբ։ Այս առիթով հիշատակենք Էյնշտեյնի ողջ գիտական գործունեությունը, նրա բազմաթիվ ասույթները, որոնք տարբեր ձևակերպումներով արտահայտում են այն միտքը, թե «գիտական մտածողության մեջ միշտ առկա է պոեզիայի տարրը», թե, մասնավորապես՝ «իսկական գիտությունը և իսկական երաժշտությունը պահանջում են մտածողության նույնանման պրոցես»։*

*Այսպիսով, պարզ է, որ գիտական իմացությունը ձգտում է «ձերբազատվել» ոչ թե ընդհանրապես սուբյեկտիվությունից, որ իմացության համար հավասարազոր կլիներ հրաժարվել իրենից, այլ այնպիսի սուբյեկտիվությունից, որն անհամատեղելի է ճշմարտության իմացության հետ։ Բայց այդ տիպի սուբյեկտիվությունից «ձերբազատվելը» հենց սուբյեկտիվության ամենաբարձր դրսևորումն է, քանի որ դա պայմանավորում է ոգու հաղթանակը մատերիայի նկատմամբ, հաղթանակ իր իսկ հանդեպ՝ կեցության ու զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների մեջ ավելի խոր թափանցելու իմաստով։*

*Իսկ ինչ վերաբերում է գեղեցկության մեջ այսպես կոչված սուբյեկտիվ մոմենտին, ապա հենց սկզբից հարկավոր է ճշտել, որ այնտեղ սուբյեկտիվը «ձուլվում է» օբյեկտիվի հետ ոչ թե օբյեկտի, այլ սուբյեկտի մեջ, այսինքն՝ ո՛չ թե բուն գեղեցկության, ինչպես կարծում են շատերը, այլ նրա մարդկային ընկալման մեջ։ Սակայն այդ էական ուղղումն ընդունելով հանդերձ, չի կարելի համաձայնել այն կարծիքին, թե էսթետիկական իմացությունը գիտական իմացությունից տարբերվում է նրանով, որ չի կարող օբյեկտիվը «ձերբազատել» սուբյեկտիվից առանց դադարելու էսթետիկական լինելուց, քանի որ, նախ, ինչպես արդեն ասվեց, առանց սուբյեկտիվ մոմենտի չկա իմացություն՝ ո՛չ գիտական և ոչ էլ էսթետիկական, երկրորդ, եթե ճիշտ է, որ էսթետիկական ինչպես և գիտական իմացությունը չի կարող ազատվել սուբյեկտիվից, առանց դադարելու առհասարակ իմացություն լինելուց, ապա նույնքան ճշմարիտ է, որ իմացությունը չի կարող «ձերբազատվել» նաև օբյեկտիվից, առանց դավաճանելու իր իմացական ֆունկցիային։ Որ դա իրոք այդպես է, երևում է թեկուզ և Արևմուտքի դեկադանսի գեղարվեստական արդի պրակտիկայի ողջ բացասական փորձից։ Ուստի, հարցի էությունն ամենևին էլ այն չէ՝ էսթետիկական իմացությունը «կարող է», թե «չի կարող» օբյեկտիվը ձերբազատել սուբյեկտիվից, այլ նրա մեջ եղած օբյեկտիվ ու սուբյեկտիվ հարաբերության չափի սահմանումն է, որ, ի վերջո, կախված է արվեստագետի տաղանդի բնույթից, աշխարհն ընկալելու նրա ունակության առանձնահատկություններից։*

*Միաժամանակ նշենք, որ գիտական իմացության մեջ սուբյեկտիվի և դրանով իսկ էմոցիոնալ սկզբունքի բացասումը նշանակում է նաև այդ իմացության բացասումը որպես ինտելեկտուալ գործունեություն՝ այդ բառի բուն իմաստով։ Մանավանդ, հակառակ տարածված կարծիքի, «ինտելեկտուալ» հասկացությունը չի հանգում ռացիոնալի (տրամաբանականի) և ամենևին չի հակադրվում էմոցիոնալին, եթե միայն այդ ասելով չհասկանանք ընկալման զգայական ցածր մակարդակ։ Թվում է, որ «ինտելեկտուալը» հարկավոր է ըբռնել որպես բարձր զարգացած տրամաբանականի և բարձր զարգացած զգայականի միասնություն։*

*Հետևությունը պարզ է. հարկավոր է վճռականապես հրաժարվել տրադիցիոն այն պատկերացումից, թե գեղարվեստական իմացությունը, իբր, տար-*



*բերվում է գիտական իմացությունից այն բանով, որ նրա մեջ առկա է սուբյեկտիվ մոմենտը։ Դա նույնքան ակներև է, որքան և այն, որ ճշմարտության մեջ սուբյեկտիվ մոմենտի բացասումը անհաղթահարելի արգելք է ստեղծում ճշմարտության էսթետիկական վերլուծության, գեղեցկության գնահատման համար։*

*Մյուս արմատական հարցը, որում հակադրվում են այդ հասկացությունները, կոնկրետ զգայականի դերն է էսթետիկական ճանաչողության մեջ։ Այդ հարցի ըմբռնումը մեր էսթետիկայում բնորոշվում է այն բանով, որ գեղեցիկը, ի տարբերություն ճշմարտության, դրսևորվում է* մարդու և նրա կողմից ընկալվող առարկայի անմիջական շփման մեջ միայն: *Ըստ այդ տեսակետի, ճշմարտության իմացությունը նման շփում չի պահանջում։ Գիտական վերլուծությունը գործ ունի այնպիսի երևույթների հետ, որոնք առհասարակ անմատչելի են զգայական ընկալմանը (ասենք, ռադիոալիքների շարժումը կամ հավելյալ արժեքի ստեղծումը), մինչդեռ առարկան էսթետիկական արժեք է ձեռք բերում այն ժամանակ միայն, երբ այն անմիջականորեն ենք ընկալում ու ապրում։ Այս տարածված կարծիքը խորապես սխալ է թվում։*

*Էսթետիկական ընկալումը, անկասկած, ի տարբերություն ճշմարտության ըմբռնման, անխուսափելիորեն առաջ է բերում յուրահատուկ ապրում— էսթետիկական զգացմունք։ Սակայն, դա նշանակո՞ւմ է արդյոք, որ այդ ապրումի աղբյուրը կարող է միայն կոնկրետ-զգայական ընկալման համար մատչելի լինել։ Արդյոք ճի՞շտ կլինի ասել, որ էսթետիկական զգացմունքի առաջացման պարտադիր պայմանը* կոնկրետ առարկայի անմիջական զգայական ընկալումն է, *և որ, հետևապես, գեղեցկի ընկալումը ճշմարտության ըմբռնումից տարբերվում է ո՛չ միայն յուրահատուկ էսթետիկական զգացմունքի պարտադիր առկայությամբ, այլև նրանով, որ այդ ընկալումը պահանջում է հայեցող սուբյեկտի անմիջական շփում նրան շրջապատող առարկաների ու երևույթների հետ։ Կարծում ենք, որ այդ հարցին, հակառակ գոյություն ունեցող կայուն տրադիցիայի, պետք է միայն բացասական պատասխան տրվի, քանի որ այդ են թելադրում բուն փաստերը։*

*Իհարկե, չի կարելի ժխտել, որ զգայական ընկալման չենթարկվող երևույթը (օրինակ, ռադիոալիքները), չի կարող էսթետիկական ապրումի աղբյուր լինել։ Բայց, ասենք՝ քվանտային տեսությունը, որը բացահայտում է շատ բանով դեռևս հանելուկային այդ ալիքների շարժման էությունն ու օրինաչափությունը, մի տեսություն, որն աչքի է ընկնում կառուցվածքային կուռ հաջորդականությամբ և մաթեմատիկական լուծումների նրբագեղությամբ, կարող է էսթետիկական զգացմունք առաջացնել։ Եվ դա բացառություն չէ։*

«Знание—сила» *ամսագրի 1966 թվականի № 8-ում զետեղված Վ. Կարցևի արագացուցիչների կոնստրուկտավորման սկզբունքներին նվիրված հոդվածում, զուտ գիտական տեխնիկական սահմանումների հետ մեկտեղ, կան նաև այսպիսի բնորոշումներ. «Լոուրենսի գաղափարի գեղեցկությունը դժվար է գերագնահատել... Լոուրենսը գուցե առաջին քայլն արեց, որպեսզի ֆիզիկական սարք-արագացուցիչների շինարարությունը նրբագեղ արվեստ դառնա»։ Կամ՝ «Այդ լուծման գեղեցկությունը նրա տեխնոլոգիական խոր նպատակահարմարության, բնության ընդօրինակման մեջ է»։ Կամ, վերջապես՝ «Բնությունն ընտրել է ինժեներական տեսակետից ճիշտ, հետևապես էսթետիկական տեսակետից անբասիր լուծում»։*

*Այստեղ, իհարկե, արժե կանգ առնել և պատշաճ գնահատել այդ սո-*

ցիոլոգիական, իմացաբանական, հոգեբանական, դիալեկտիկական և ամեն տեսակ այլ «խորամանկությունններից» զերծ օբյեկտիվ-բնական գեղեցկի էության այսքան պարզ, բայց խոր ըմբռնումը, հարկ է նշել նաև, որ բնությունն ընդօրինակելու անհրաժեշտության մասին խոսում է ո՛չ թե արվեստագետը, գեղագետը, այլ գիտնական ինժեները, որը դա համարում է ո՛չ միայն էսթետիկականի, այլև կոնստրուկտորական գաղափարների տեխնոլոգիական կատարելության անհրաժեշտ պայմանը։ Բայց խոսքն այժմ այդ մասին չէ։

Մեզ հետաքրքրում է այն, որ լիարժեք էսթետիկական ապրումի աղբյուր կարող է լինել նաև գաղափարը, միտքը, ըստ որում ամենևին պարտադիր չէ, որ դա առարկայացված, մարմնավորված լինի իր արտահայտության կոնկրետ, զգայականորեն ընկալելի ձևի մեջ։ Այսպես, էսթետիկական ներգործության ուժով կարող է օժտված լինել ո՛չ միայն պարտքի բարոյական գաղափարն արտահայտող կոնկրետ արարքը, այլև դրան վերաբերող այս կամ այն էթիկական կոնցեպցիան, ճիշտ այնպես, ինչպես էսթետիկական զգացմունք կարող է առաջացնել ո՛չ միայն աէրոդինամիկայի պահանջների համաձայն կառուցված օդանավը, այլև աէրոդինամիկան։ Երբ անցյալ դարի առաջին կեսին Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը տվեցին այժմ իրականություն դարձած սոցիալիստական հասարակարգի գիտականորեն խորապես հիմնավորված բնորոշումը, այնտեղ չկար «զգայական նյութի» նշույլն անգամ։ Դա գալիք հասարակարգի բուն մտահղացողական տեսական մոդելն էր միայն, որը կարելի էր պատկերացնել լոկ երևակայությամբ։ Բայց իր տեսական վերացականությամբ մի՞թե այն պակաս գեղեցիկ էր, քան նրա կոնկրետ իրականացումը։ Եվ մի՞թե գալիք ներդաշնակ հասարակարգի երբեմնի այս աբստրակտ տեսական մոդելը չէր, որ դարձավ սոցիալական, դրա հետ մեկտեղ նաև էսթետիկական համամարդկային այն իդեալը, որը մարդկային սերունդներին ոգեշնչում էր ո՛չ միայն մարտական ու աշխատանքային սխրագործությունների, այլև գեղարվեստական մեծ գործերի ստեղծման։ Էլ չենք խոսում այնպիսի աբստրակտ գիտության էսթետիկական ներգործության մասին, ինչպիսին է մաթեմատիկան։ Մաթեմատիկական բոլոր դրույթները չէ, որ կարելի է մոդելավորել տարածության ու ժամանակի մեջ։ Իսկ իրական առարկաների թվում չկա մի առարկա, որի մասին հաստատապես կարելի լիներ ասել, թե դա, ասենք՝ Պյութագորասի թեորեմի առարկայացված մարմնացումն է։

Անշուշտ, գիտական գաղափարների գեղեցկությունն զգալու համար, պահանջվում է հատուկ տեսական պատրաստականություն, բայց դա ամենևին էլ չի փոխում գործի էությունը, քանի որ, նախ, այդպիսի պատրաստականության անհրաժեշտությունը չի վերացնում տվյալ գաղափարների էսթետիկական ներգործման բուն փաստը։ Երկրորդ, արվեստում ևս ամեն ինչ չէ բոլորին մատչելի, այնտեղ էլ կան այնպիսի անվիճելի գեղարվեստական արժեքներ, որոնց ըմբռնման համար պահանջվում է հատուկ էսթետիկական պատրաստականություն։ Կարելի՞ է արդյոք առանց բարձր զարգացած երաժշտական ճաշակի գնահատել, օրինակ, Բախի որոշ ֆուգաների կամ Մալերի մոնումենտալ սիմֆոնիաների ողջ գեղեցկությունը։ Մի՞թե բոլորին մատչելի են Բեթհովենի, Սկրյաբինի, Վրուբելի, Պիկասոյի, Պաստեռնակի ստեղծագործությունները։

Իհարկե, էսթետիկական ներգործության ուժով է օժտված ոչ առանձին վերցված գաղափարը, օրինակ, այդպիսի ուժով է օժտված ոչ թե արդարության բուն գաղափարը՝ որպես որոշակի բարոյական հասկացություն, այլ միայն համապատասխան բարոյագիտական կոնցեպցիան, որը բավարար չափով արտահայտում է այդ գաղափարի էությունը, բացահայտում դրա խելամտությունն ու հասարակական անհրաժեշտությունը։ Բայց դա արդեն հարցի մյուս կողմն է, որը վկայում է, թե էսթետիկական ներգործմամբ է օժտված այն գաղափարը միայն, որը համակողմանիորեն մարմնավորված է միասնական, որոշակի սիստեմի մեջ։



Այսպիսով, պարզ է, որ պարտադիր չէ, որպեսզի մեր էսթետիկական ապրումների օբյեկտիվ աղբյուրները լինեն նյութական իրականության կոնկրետ առարկաներն ու երևույթները։ Որպես ապրումների հարուցիչ կարող են լինել նաև գաղափարները, ամենից առաջ, գիտական գաղափարները, եթե դրանք համապատասխանում են որոշակի պահանջների։ Ասածին համապատասխան, մեր զգայարանները (տեսողությունն ու լսողությունը) ամենևին միակ միջոցները չեն, որոնցով մենք ստանում ենք գեղագիտական ինֆորմացիան։ Էսթետիկական զգացմունքն առաջանում է ո՛չ միայն զգայականորեն ընկալելի երևույթների և առարկաների հետ անմիջական շփման և զգայական ընկալման միջոցով։ Եվ դա հասկանալի է։ Չէ՞ որ էսթետիկական զգացմունքն ավելի լայն զգացմունքի՝ բավականության տարատեսակներից է, որն առաջանում է միջավայրի հետ մարդու շփման բոլոր մակարդակներում, սկսած ֆիզիոլոգիականից մինչև զուտ հոգեկանը։ Բայց, ինչպես բոլորն են համարում, էսթետիկական հաճույքը մարդկային հաճույքներից ամենաբարձրն է իր բացառիկ ոգեշնչվածությամբ։ Ապա ինչո՞ւ մարդկային հաճույքներից այդ առավել հոգևոր, առավել ինտելեկտուալ հաճույքի միակ աղբյուրը պետք է լինի զգայական ընկալումը, որը, այսպես թե այնպես, իմացության ստորին աստիճանն է, ինչո՞ւ եթե նույնիսկ բավականության ամենահասարակ զգացմունքը կարող է ծագել ամենևին էլ ո՛չ միայն զգայական ընկալումից։

Ուստի, կարծում ենք բոլոր հիմքերն ունենք հաստատելու, որ ամենևին պարտադիր չէ, որպեսզի զգացմունքի աղբյուրը լինի ինքը զգացմունքը, որ էսթետիկական զգացմունքը կարող է առաջանալ նաև ընկալումից, իրականության յուրացման զուտ մտավոր գործողությունից, գիտության կողմից բացահայտվող օրինաչափությունների ըմբռնումից, վերլուծության ու համադրության ձևական այն եղանակների, այն խորհրդածությունների և ընդհանրացումների ուժի, իմացական նշանակության գիտակցումից, որոնցից այնքան արդյունավետ օգտվում է գիտությունը։

Այստեղից պարզ է նաև, որ մարդը էսթետիկորեն կարող է վերաբերվել գիտությանը նախ այն պատճառով, որ գիտությունն իրականության արտացոլման մի ձևն է։ Եվ մարդը նրան էսթետիկորեն է վերաբերում այն չափով, որչափով այն իրականության արտացոլման ձևն է՝ ճշմարտության ո՛չ միայն նույնական հայտնաբերման, այլև ինչպես արդեն գիտենք, նրա էմոցիոնալ արտացոլման ձևը. այնքան էմոցիոնալ, որ դա Էյնշտեյնին իրավունք է տվել արդի գիտությունը գաղափարների մեծ դրամա կոչել։ Եվ, մեր կարծիքով, այս բարձր ճշմարտության և խորին էմոցիոնալության զուգակցման մեջ է գիտության արտահայտչականությունը։ Հենց դրանով էլ նա հասնում է այն բացառիկ արտահայտչականությանը, որը մինչև օրս համարվում է միայն գեղարվեստական ընկալման, միայն արվեստի առանձնահատկությունը։

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

# ՄԱՍԻՍԻ ՇՐՋԱՆԸ ԵՎ ՆՐԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐԸ

Հ. Ա. ՍԱՀԱԿՅԱՆ

ՀԿԿ Մասիսի շրջկոմի առաջին քարտուղար

*Մասիսը մեր հանրապետության նոր շրջանն է և ունի ընդամենը մեկ ու կես տարվա պատմություն։ Նրա հողատարածությունները հասնում են 18 հազար հեկտարի, որից գյուղատնտեսության համար պիտանի է 7.200-ը։ Վարչատերիտորիալ կազմի մեջ մտնում են 31 բնակավայր՝ մոտ 45 հազար բնակչությամբ, որոնք միավորված են յոթ կոլտնտեսությունների, 17 սովխոզների և պետական երկու այլ տնտեսությունների մեջ։ Շրջանն ամիջապես կապված է Երևանին և կարելի է համարել նրա արվարձանը։ Շրջկենտրոնը՝ Մասիս ավանը, Երևանից գտնվում է ընդամենը 12 կիլոմետր հեռավորության վրա։*

*Հարց է ծագում, իսկ ի՞նչ անհրաժեշտությունից էր բխում Մասիսի շրջանի կազմակերպումը։ Նախ՝ Երևանի օրավուր աճող ազգաբնակչությանը թարմ բանջարեղենով ապահովելու համար անհրաժեշտ էր ունենալ քաղաքամերձ մի շրջան ևս, որը հիմնականում զբաղվեր բանջարաբոստանային կուլտուրաների մշակությամբ։ Երկրորդ՝ բուռն թափով զարգացող արդյունաբերությունը հրամայական պահանջ էր առաջադրել՝ հանրապետությունում ստեղծել արդյունաբերական մեկ կենտրոն ևս։ Եվ, վերջապես՝ Էջմիածնի, Արտաշատի և Շահումյանի շրջանների կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինների համար, հեռավորության ու կտրվածության պատճառով, լուրջ դժվարություններ էին ստեղծվել ներկայումս Մասիսի շրջանի մեջ մտնող տնտեսությունների գործնական ղեկավարությունն ապահովելու, ունեցած բոլոր հնարավորություններն ու ռեզերվները գործողության մեջ դնելու ասպարեզում։*

*Այստեղից էլ այն լուրջ խնդիրները, որոնք դրվել են նորաստեղծ շրջանի աշխատավորների, կուսակցական, սովետական ու տնտեսական կազմակերպությունների առջև։ Այդ խնդիրները հաջողությամբ լուծելու համար, ամենից առաջ, անհրաժեշտ էր խորապես ուսումնասիրել շրջանի սկզբնական կուսկազմակերպությունների գործունեությունը, ծանոթանալ կոլտնտեսությունների ու*



*սովխոզների էկոնոմիկային, նրանց նախորդ մի քանի տարիների տնտեսական արդյունքներին։*

*Մանրակրկիտ ուսումնասիրությունից հետո խորհելու, մտածելու առիթ էր տալիս հատկապես այն փաստը, որ 1968 թվականին, օրինակ, բացառությամբ Արբաթ գյուղի կոլտնտեսության և Ղուկասավանի սովխոզի, ոչ մի տընտեսություն չէր կատարել գյուղատնտեսական մթերքների արտադրության իր առաջադրանքները, բարձր էր դրանց ինքնարժեքը։ Շրջանի յոթ սովխոզներ միայն 1968 թվականին ունեցել էին մոտ երկու միլիոն 500 հազար ռուբլու վնաս։ Դրա հիմնական պատճառներից մեկը արտադրաֆոնդերի անբավարար օգտագործումն էր, համախառն արտադրանքի ու համախառն եկամտի ցածր լինելը։ Գործին մեծ վնաս էր հասցրել աշխատանքային ցածր կարգապահությունը։ Բավական է նշել, որ շրջանի մոտ 10 հազար աշխատունակ մարդկանցից 4.000-ը 1968 թվականին հանրային տնտեսության մեջ ընդհանրապես չեն աշխատել։ Այս բոլորից բացի, նկատվել են նաև կադրերի անպատասխանատվության, թույլ վերահսկողության, վատնումների ու յուրացումների երևույթներ։*

*Շրջանի աշխատավորների առջև դրված խնդիրների հաջող լուծման շահերը հրամայաբար պահանջում էին արագորեն վերացնել եղած թերությունները, ամրապնդել կուսակցական ու պետական կարգապահությունը, արմատապես բարելավել գործերի վիճակը։ Այստեղ էլ նորընտիր կուսշրջկոմի առջև ծառացավ առաջին հարցը. ինչի՞ց սկսել։*

*Որոշվեց գործն սկսել կադրերի ընտրությունից ու տեղաբաշխումից։ Եվ դա հասկանալի է։ Չէ՛ որ կադրերի ճիշտ ընտրությունն ու տեղաբաշխումը կուսակցական-կազմակերպական աշխատանքի այն հիմնական օղակներից է, որից բռնելով կարելի է քաշել ամբողջ շղթան, ապահովել գործի հաջողությունը։*

*Այս անչափ կարևոր աշխատանքի հիմքում դրվեց լենինյան սկզբունքը. կադրերը գնահատվեցին ըստ իրենց գործունեության արդյունքների։ Ղեկավար պոստերում աշխատանքի նշանակվեցին գործունյա, կազմակերպական ունակություններով օժտված, կուսակցության ու կառավարության դիրեկտիվները, վերադաս մարմինների ու սեփական որոշումները կյանքում անշեղորեն կատարելու համար ընդունակ աշխատողներ։ Իսկ դա չէր կարող բարերար ազդեցություն չթողնել գործերի վիճակի վրա։*

*Ինչպես այդ, այնպես էլ ձեռնարկված մյուս կոնկրետ միջոցները մեծապես նպաստեցին բարձրացնելու կադրերի պատասխանատվությունը հանձնարարված գործի կատարման նկատմամբ, բոլոր օղակներում հաստատելու կուսակցական ու աշխատանքային ամուր կարգապահություն, ապահովելու պետական առաջադրանքների ու սոցմրցությամբ ստանձնած պարտավորությունների անթերի կատարումը։*

*Բերեմ մի օրինակ. Ենգիջայի պտղատնկարանային սովխոզը տարիներ շարունակ ետ էր մնում։ Այստեղ չէին կատարվում գյուղատնտեսական մթերքների արտադրության առաջադրանքները, բարձր էր դրանց ինքնարժեքը, տնտեսությունն աշխատում էր վնասով։ Եվ դա այն դեպքում, երբ սովխոզն ուներ բերրի հողեր, հիանալի այգիներ և, որ ամենակարևորն է, լավ հողագործներ։*

*Բայց այդ ամենի առկայությամբ ինչո՞ւ էր տնտեսությունը ետ մնում։ Եզրակացությունը մեկն էր. սովխոզում աշխատանքները վատ էին կազմակերպվում, արդյունավետ չէին օգտագործվում եղած հնարավորություններն ու ռեզերվները։ Իսկ դա չէր անհանգստացնում սովխոզի ղեկավարներին, նրանք*

պատասխանատվություն չէին կրում ինչպես հանձնարարված գործի, այնպես
էլ տնտեսության վիճակի համար։
Կուսշրջկոմը չէր կարող անտարբերությամբ անցնել այդ փաստի կողքով։
Որոշվեց սովխոզի դիրեկտոր նշանակել երիտասարդ կոմունիստ, գյուղատըն-
տես Ա. Խաչատրյանին, կուսշրջկոմի երաշխավորությամբ սկզբնական կուս-
կազմակերպության քարտուղար ընտրվեց արտադրության հմուտ կազմակեր-
պիչ, բրիգադավար Գ. Հարությունյանը։ Իհարկե, գործը միայն ղեկավարների
փոփոխումով չավարտվեց, դա բավական չէր տնտեսությունը հանելու նեղ վի-
ճակից։ Նոր ընկերների առաջ քաշելով՝ կուսշրջկոմը համապատասխան մար-
մինների միջոցով օգնեց նրանց՝ ճիշտ կազմակերպելու աշխատանքը, ամրա-
պնդելու տնտեսության նյութատեխնիկական բազան, արմատապես բարելավե-
լու գյուղատնտեսության վարման կուլտուրան, հմտորեն կիրառելու բանվորնե-
րի նյութական խրախուսման ու բարոյական խթանման գործոնները, ամեն
կերպ բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը։
Այս ամենի արդյունքը եղավ այն, որ վճռական բեկում մտցվեց գյու-
ղատնտեսական աշխատանքներում։ Իսկ երբ ավարտվեց տարին, արդյունքնե-
րը գերազանցեցին մեր սպասելիքները. բանջարեղենի արտադրության պլանը
կատարվեց 131, պտղինը՝ 210, խաղողինը՝ 248 տոկոսով, օգուտները հասան
75 հազար ռուբլու։ Հարց է ծագում. հրա՞շք կատարվեց Ենգիջայում։ Ամենևին
ո՛չ։ Սովխոզը դուրս եկավ շահութաբեր տնտեսությունների շարքը, որովհետև
գործի գլուխ կանգնեցին գործիմաց, կազմակերպական ունակություններով
օժտված մարդիկ։
Գործերի վիճակը նման ձևով բարելավվեց նաև Արարատի, Սարվանլարի,
Ազիզբեկովի անվան, Թազագյուղի սովխոզներում, Ջահմաթի կոլտնտեսու-
թյունում և մյուս տնտեսություններում։ Իսկ ընդհանուր արդյունքը եղավ այն,
որ շրջանի կազմակերպման հենց առաջին տարում մենք լուրջ հաջողություննե-
րի հասանք գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գոր-
ծում։ Կոլտնտեսություններն ու սովխոզները նախատեսված 32.515 տոննայի
փոխարեն 1969 թ. պետությանը հանձնեցին 33.600 տոննա բանջարեղեն կամ
7.800 տոննայով ավելի, քան հանձնվել էր 1968 թվականին։ Այդ ցուցանիշների
համար շրջանի բանջարաբույծներն արժանացան Հայաստանի կոմկուսի Կենտ-
կոմի և հանրապետության Մինիստրների սովետի երրորդ կարգի մրցանակին։
Մրցությամբ ստանձնած իրենց պարտավորությունները հաջողությամբ
կատարեցին նաև շրջանի այգեգործները։ Նրանց հայրենանվեր աշխատանքի
շնորհիվ խաղողի արտադրությունն ավելացավ 4.000 տոննայով և, նախատես-
ված 4.800-ի դիմաց, պետությանը հանձնվեց 5.100 տոննա խաղող։
Մեր շրջանը կոչված է մայրաքաղաքի բնակչությանն ապահովելու ո՛չ
միայն բանջարեղենով, այլև անասնապահական մթերքներով։ Պետք է ասել,
որ շրջանի անասնապահները պատվով են լուծում իրենց առջև դրված խնդիր-
ները։ Մեր կարծիքով թվեր պետք չեն այստեղ։ Բավական է նշել, որ անցյալ
տարվա 3-րդ և 4-րդ եռամսյակներում նրանք հաղթող ճանաչվեցին հանրապե-
տության անասնապահների շրջանում ծավալված սոցիալիստական մրցության
մեջ և նվաճեցին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ու հանրապետության Մի-
նիստրների սովետի փոխանցիկ կարմիր դրոշը, արժանացան դրամական առա-
ջին կարգի մրցանակի։
Առաջին լուրջ հաջողությունները ոգևորեցին շրջանի աշխատավորներին,
նոր լիցք հաղորդեցին նրանց։



Իրենց հայրենանվեր աշխատանքով մեզ նորից ուրախացրին շրջանի ա-
նասնապահները։ Ընթացիկ տարվա առաջին եռամսյակում, ձեռք բերած բարձր
ցուցանիշների համար, նրանք երրորդ անգամ, անընդմեջ նվաճեցին ՀԿԿ Կենտ-
կոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի փոխանցիկ կարմիր դրոշը և
դրամական առաջին կարգի մրցանակը։ Բարձր են նաև առաջին կիսամյակի
արդյունքները։ Մսի, բրդի արտադրության պլանները գերակատարվել են։
Ի դեպ, առաջին կիսամյակում, նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի հա-
մեմատությամբ, շրջանի տնտեսությունները պետությանն ավելի են վաճառել
ու հանձնել 700 ցենտներ միս, 4.000 ցենտներ կաթ, 53 ցենտներ բուրդ, 770
հազար ձու։ Շրջանի թռչնապահները դեռևս հունիսի սկզբներին զեկուցել են
պետությանը ձվի վաճառքի ու հանձնման տարեկան պարտավորությունը կա-
տարելու մասին։
Լավ ելագիծ են վերցրել նաև բանջարաբույծները։ Ընթացիկ տարում նրանք
մշակում են 2.283 հեկտար բանջարաբոստանային կուլտուրաներ։ Վաղահաս
բանջարեղենի արտադրությունն ավելացնելու նպատակով՝ դրանից 450 հեկ-
տարի ցանքը կատարվել է թաղարային եղանակով։ Աշխատանքային եռուն օրեր
են սկսվել հողի աշխատավորների համար։ Հաջողությամբ է ընթանում բերքա-
հավաքը։ Առաջին արդյունքները գոհացուցիչ են։ Զգալիորեն գերակատարվել
են վաղահաս բանջարեղենի, պտղի, հացահատիկի արտադրության առաջա-
դրանքները։ Առատ բերք է սպասվում խաղողի այգիներից, գործերը լավ են
նաև կերի կուտակման ասպարեզում։ Այդ ամենը վկայում է, որ շրջանի աշ-
խատավորները անթերի կկատարեն սոցիալիստական մրցությամբ ստանձնած
իրենց պարտավորությունները։
Սակայն այս հաջողություններով հանդերձ գյուղատնտեսության բնագա-
վառում ունենք շատ թերություններ։ Հատկապես այժմ, երբ գործին նայում ենք
ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումների լույսի տակ, տեսնում ենք,
թե ինչքան անելիքներ, չլուծված խնդիրներ կան։ Բանջարեղենի արտադրու-
թյունը, առանց ցանքատարածություններն ավելացնելու, անցած տարվա
33.600 տոննայի դիմաց կարող ենք հասցնել մոտ 50 հազար տոննայի, եթե
գործը կազմակերպենք այնպես, որ բոլոր տնտեսություններում արտադրու-
թյան մեջ խելացիորեն ներդրվեն գիտության նվաճումները, արմատավորվի
առաջավոր փորձը և յուրաքանչյուր հեկտարից ստացվի այնքան բանջարեղեն,
որքան ստանում է Արբաթ գյուղի կոլտնտեսությունը։
Արարատյան դաշտավայրի ամենամեծ առավելություններից մեկն այն է,
որ այստեղ նույն հողակտորից կարելի է երկու բերք ստանալ։ Անցած աշնանն,
օրինակ, բանջարեղենի բերքահավաքից հետո շրջանում կատարվել է 250 հեկ-
տար վաղահաս կանաչեղենի՝ սպանախի, սոխի, համեմի, կոտեմի ցանք։ Վաղ
գարնանը դրանց բերքը հավաքվել է և տեղը բանջարեղեն ցանվել։ Բանջարե-
ղենի, սիլոսացու եգիպտացորենի համար օգտագործվում են այն հողերը, ուր
վաղահաս կարտոֆիլ ու հացահատիկ է ցանված։ Հողը նման ձևով օգտագոր-
ծելու շնորհիվ շրջանում ընթացիկ տարում արտադրվել է 3.000 տոննա կա-
ղամբ։ Առանձին տնտեսությունների փորձը ցույց է տալիս, որ երկրորդ ցան-
քից կարելի է ստանալ նաև վարունգի առատ բերք։ Այժմ նախապատրաստա-
կան աշխատանքներ են կատարվում՝ վարունգի երկրորդ ցանքը ընթացիկ տա-
րում հասցնելու 50 հեկտարի։
Սակայն մենք դեռևս չենք հասել նրան, որ նման բոլոր հողերն այդ ձևով
օգտագործվեն, որը գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելաց-

ման ամենախոշոր ռեզերվներից է։ Այդ ռեզերվի օգտագործումը համարում ենք մեր հիմնական խնդիրներից մեկը։

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը խնդիր է դրել ավելացնել գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների, այդ թվում նաև բանջարեղենի արտադրությունը։ Իսկ մենք չենք կարող հաջողությամբ կատարել կուսակցության այդ կարևոր առաջադրանքը, եթե չունենանք անհրաժեշտ քանակությամբ ոռոգելի ջուր։ Անցած մեկուկես տարվա ընթացքում զգալի աշխատանք է կատարվել շրջանում ոռոգման ցանցը բարելավելու ասպարեզում։ Բայց և այնպես ոռոգման ջրի պակասը մնում է մեր նեղ տեղերից մեկը։ Իսկ դա այն դեպքում, երբ մենք ունենք ջրի մեծ ռեսուրսներ։ Խոսքը արտեզյան ջրերի մասին է։

Մեր շրջանում կա 430 արտեզյան ջրհոր, որոնք մեկ վայրկյանում տալիս են 11 խորանարդ մետր ջուր։ Իսկ շրջանում ոռոգման նպատակով վայրկյանում ծախսվում է վեց խորանարդ մետր։ Դրանից 4—5 խորանարդ մետր մենք վերցնում ենք Հրազդան գետից և միայն 1,5—2-ը՝ արտեզյան ջրհորներից։ Իսկ արդյոք հնարավո՞ր չէ մեզ մոտ ոռոգման նպատակով հիմնականում օգտագործել արտեզյան ջրերը և հրաժարվել Հրազդան գետից ջուր վերցնելուց, որը կապված է Սևանա լճի մակարդակի պահպանման հետ։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ դա միանգամայն հնարավոր է։ Շատ հեշտությամբ, առանց մեծ ծախսերի, կարելի է ըստ ենթաշրջանների, երեք տեղում հավաքել եղած արտեզյան ջրերի թերևս միայն կեսը և այն մղել դաշտերը։ Դրանով կլուծվի նաև մեկ ուրիշ հարց։ Գաղտնիք չէ, որ դեռևս Երևանի արդյունաբերական կեղտոտ ջրերը առանց մաքրելու բաց են թողնվում Հրազդան գետը և օգտագործվում ոռոգման համար։ Դրանք ոչ միայն բացասաբար են ազդում բերքատվության, այլև բանջարեղենի և գյուղատնտեսական մյուս կուլտուրաների որակի վրա։ Հետևապես, անգամ ոռոգման նպատակով այդ աղտոտված ջուրը չօգտագործելիս, կարող ենք մայրաքաղաքի բնակչությանը տալ ավելի շատ բարձրորակ բանջարաբոստանային կուլտուրաներ։

Մենք ունենք գյուղատնտեսական կուլտուրաների արտադրությունն ավելացնելու նաև մեկ ուրիշ խոշոր ռեզերվ՝ աղուտ հողերը, որոնց ընդհանուր տարածությունն անցնում է 7.000 հեկտարից, այսինքն՝ մոտավորապես այնքան, որքան այժմ ոռոգելի հող ունենք։ Դրանց մի մասը, որը հնարավոր չէ յուրացնել, հատկացվում են արդյունաբերական ձեռնարկությունների կառուցմանը, իսկ մյուս մասը, որ պետք է յուրացվի, անկասկած է։ Սակայն այդ ասպարեզում մեզ մոտ աննշան աշխատանք է կատարվում, որովհետև շրջանում չկա մելիորատիվ ջոկատ, մի հրամայական անհրաժեշտություն, որն այլևս անուշադրության մատնել չի կարելի։

Մենք մեծ անելիքներ ունենք նաև անասնապահության հետագա զարգացման գործում։ Գաղտնիք չէ, որ մեր հարևան Շահումյանի շրջանում, օրինակ, յուրաքանչյուր կովից մոտ 1.000 կիլոգրամով ավելի կաթ է ստացվում, քան մեզ մոտ։ Դրա պատճառն այն է, որ մեր շրջանում բարելավված չէ կովերի ցեղայնությունը, չունենք այնպիսի բարձր մթերատու անասուններ, ինչպիսիք շահումյանցիներն ունեն։ Էլ չեմ խոսում այն մասին, որ մեր ֆերմաներում աշխատատար պրոցեսների մեքենայացմանը լուրջ ուշադրություն չի նվիրվում, ցածր է անասնապահության վարման կուլտուրան։ Մենք մեր առջև խնդիր ենք դրել այդ հարցերը լուծել առաջիկա տարիներին։

Կանցնի ևս մի քանի տարի, և Մասիսը կդառնա ո՛չ միայն հանրապետու-



թյան գյուղատնտեսական ամենազարգացած շրջաններից, այլև արդյունաբերական խոշոր կենտրոններից մեկը։

Շրջանի արդյունաբերության առաջնեկը Նոր-Խարբերդի ոչ-գործվածքային կտորեղենի ֆաբրիկան է։ Իր տեսակի մեջ սա մի եզակի ձեռնարկություն է հանրապետությունում։ Այստեղ արտադրության համար որպես հումք ծառայում են թեթև արդյունաբերության ձեռնարկություններում առաջացած թափոններն ու մնացուկները։ Առավել փոքր ծախսումներով դրանցից արտադրվում է էժան գործվածքեղեն, որը լայն պահանջարկ ունի, օգտագործվում է ժողովրդական տնտեսության ամենատարբեր բնագավառներում և առաքվում Միության գրեթե բոլոր անկյունները։ Տարեցտարի մեծանում է ֆաբրիկայի արտադրանքի ծավալը։ Անցյալ տարի ձեռնարկության կոլեկտիվը հայրենիքին տվել է 7 միլիոն մետր գործվածքեղեն։ Նախատեսված է առաջիկա տարիներին վերակառուցել, ընդլայնել ֆաբրիկան և նրա տարեկան արտադրանքը հասցնել 22 միլիոն մետրի։

Երկու տարի առաջ շրջանում շահագործման է հանձնվել պահածոների գործարանը։ Պլանով նախատեսված 9 միլիոնի փոխարեն, ձեռնարկությունն անցյալ տարի արտադրել է 16 միլիոն պայմանական տուփ պահածո։ Ընթացիկ տարում այն գրեթե կհասնի իր նախագծային կարողությանը՝ հայրենիքին կտա մոտ 21 միլիոն պայմանական տուփ ջեմ, տոմատի մածուկ, կոմպոտ և այլ արտադրատեսակներ։

Անցյալ տարվա վերջերին շրջանում գործարկվել է մեկ ուրիշ ձեռնարկություն ևս՝ ծալքավոր ստվարաթղթե տարաների ֆաբրիկան, որն իր տեսակի մեջ առաջին ձեռնարկությունն է Անդրկովկասում և 4-րդը՝ Սովետական Միությունում։ Փոքր է նրա կոլեկտիվը՝ ընդամենը 300 աշխատող։ Բայց նորագույն տեխնիկայով զինված այս ձեռնարկության մասին մոտավոր պատկերացում կազմելու համար բավական է նշել, որ նրա տարեկան արտադրանքը կհասնի 22 միլիոն ռուբլու։ Այստեղ տարեկան կմշակվի 60 հազար տոննա ստվարաթուղթ կամ կարտադրվի 65—70 միլիոն հատ ստվարաթղթե արկղ, որի շնորհիվ հանրապետությունում տարեկան կտնտեսվի մոտ մեկ միլիոն խմ անտառանյութ։

Մեր շրջանում է կառուցվում նաև Միության թռչնաբուծական խոշոր ձեռնարկություններից մեկը՝ Սովետաշենի թռչնաբուծական ֆաբրիկան։ Արդեն գործարկվել է նրա առաջին հերթը։ Նախագծային իր ամբողջ կարողությամբ աշխատելուց հետո, այն տարեկան կարտադրի 6.700 տոննա թռչունի միս կամ մոտ երեք անգամ ավելի, քան այժմ արտադրում են հանրապետության թռչնաբուծական բոլոր ֆաբրիկաները միասին վերցրած։ Մեր շրջանում է կառուցվում նաև հանրապետական առաջին խոշոր խոզաբուծական ֆաբրիկան։ Այն տարեկան կարտադրի 3.000 տոննա միս։

Շրջանի էկոնոմիկայի մեջ լուրջ փոփոխություն կմտցնի նաև ատաղձագործական իրերի գործարանը, որի շինարարական աշխատանքներն արդեն մոտենում են ավարտին։ Այս խոշոր ձեռնարկությունը հանրապետության շինարարական կազմակերպություններին տարեկան կտա 500 հազար քմ պարկետ, 300 հազար քմ. պատուհանի և նույնքան դռան շրջանակ, մեկ միլիոն գծամետր այլ շինանյութեր։

Բայց շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների ցանկը սրանով չի սահմանափակվում. կառուցվում են նաև կահույքի ֆաբրիկա, տարաների նորոգման ձեռնարկություն և այլն։ Ոչ միայն մեր շրջանի, այլև հանրապետու-

թյան արդյունաբերական հսկաներից մեկը կհանդիսանա Կիրովի անվան քիմիական կոմբինատի երկրորդ հրապարակը։ Դա կլինի քիմիական արդյունաբերության մի նոր, խոշոր կոմպլեքս և կունենա միութենական նշանակություն։ Այն կզբաղեցնի մոտ 400 հեկտար տարածություն։ Այստեղ կաշխատի մի քանի հազար բանվոր։

Նախատեսվում է շրջանում կառուցել նաև «Հայգյուղտեխնիկայի» կենտրոնական բազան, հանրապետության Մինիստրների սովետի նյութատեխնիկական մատակարարման գլխավոր վարչության բազաներն ու արտադրական ձեռնարկությունները, մի շարք այլ հանրապետական օբյեկտներ։

Արդյունաբերական խոշոր հանգույցի ստեղծման շնորհիվ մոտ ապագայում Հայաստանի քարտեզի վրա երևան կգա ժամանակակից մի նոր քաղաք՝ Մասիսը, որը կունենա 50 հազար բնակիչ։ Արդեն սկսվել է քաղաքի շինարարությունը։

Ինչպես բոլոր քաղաքները, այնպես էլ Մասիսը կունենա իր կենտրոնը։ Այստեղ կկառուցվեն շրջանի վարչական շենքերը, փոստը, 8.000 համարանոց ավտոմատ հեռախոսակայանը, կուլտուրայի պալատը, լայնէկրան կինոթատրոնը, հյուրանոցը, առևտրական, հասարակական սննդի բազմաթիվ օբյեկտներ, ինչպես նաև բազմահարկ բնակելի շենքեր։ Քաղաքի ընդհանուր բնակելի տարածությունը կհասնի 600 հազար քմ-ի, շենքերը հիմնականում կլինեն հինգհարկանի։ Նրա հյուսիսային մասով կձգվի 300 մետր լայնությամբ մի կանաչ գոտի և կտեղծվի ջրային լայն մակերես։ Այդտեղ էլ կկառուցվեն հիվանդանոցային, ուսումնական, սպորտային կոմպլեքսներ։ Մասիս քաղաքը Երևանի հետ կկապվի խոշոր մայրուղիներով, երկուսը՝ տրանսպորտի, մեկը՝ հետիոտն երթևեկության համար։ Քաղաքի մոտ կկառուցվի մարդատար գնացքների նոր կայարան։

Այժմ շրջանը վերածվել է մի ընդհանուր շինարարական հրապարակի։ Անընդհատ մեծանում է շինարարական աշխատանքների ծավալը։ Եթե անցյալ տարի շինարարներն իրացրել են 8 միլիոն ռուբլի, ապա՝ այս տարի պետք է կատարեն 14, իսկ եկող տարի՝ 17—18 միլիոն ռուբլու շինմոնտաժային աշխատանքներ։ Դա, իհարկե, լավ է և ուրախացնում է մեզ։ Սակայն վատն այն է, որ Մասիս քաղաքի շինարարությունը չափազանց դանդաղ է ընթանում և, ընդհանրապես, շրջանում կատարվող շինարարական աշխատանքների տեմպերը դեռևս գոհացուցիչ չեն։ Արդյունաբերական մի քաղաքի կառուցումը, իհարկե, մեկ կամ երկու շինվարչության գործ չէ։ Ահա թե ինչու մենք հարց ենք բարձրացրել վերադաս օրգանների առջև՝ մեր շրջանում կազմակերպելու շինարարական առանձին տրեստ կամ ծայրահեղ դեպքում՝ ավելացնելու շինվարչությունների թիվը։ Սակայն, չգիտես ինչու, հանրապետության արդյունաբերական շինարարության մինիստրությունն անհրաժեշտ ճկունություն հանդես չի բերում այդ հարցում և մեր խոսքը հնչում է որպես «ձայն բարբառո հանապատի»։ Բայց մենք հուսով ենք, որ այդպես երկար չի շարունակվի և առաջիկայում կլուծվի շրջանի համար կենսական նշանակություն ունեցող այդ հարցը։

Կա նաև լուծման կարոտ մեկ ուրիշ կարևոր խնդիր՝ կառուցվող արդյունաբերական ձեռնարկություններն ինչպե՞ս պետք է ապահովվեն բանվորական կադրերով։ Նախ՝ նշեմ, որ արդյունաբերության զարգացումը ոչնչով չի խանգարի գյուղատնտեսությանը, բայց գյուղատնտեսությունն արդյունաբերությանը բանվորական ուժ տալ չի կարող։ Այդ դժվարությունն իրեն զգացնել է տալիս այժմ. մենք չենք կարողանում գյուղի հաշվին բանվորներով ապահովել



ստվարաթղթե տարաների ֆաբրիկան, պահածոների գործարանը, որոնցում աշխատում են 600-ից ոչ ավելի մարդ։ Հետևապես, բանվորների համալրումը պետք է կատարվի դրսից։ Եվ հենց այդ նպատակով էլ կառուցվում է Մասիս քաղաքը, որտեղ առաջին հերթին բնակություն կհաստատեն սփյուռքից մայր հայրենիք վերադարձող հայ ընտանիքները։

Անհրաժեշտ է նկատել նաև, որ վերջին տարիներին անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվել շրջանի բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման բարելավմանը, գյուղերի բարեկարգմանը։ Որքան էլ զարմանալի է, բնակավայրերի մեծ մասում, որոնք ուղղակի կպած են Երևանին, չկան բաղնիքներ, կենցաղային սպասարկման օբյեկտներ, հարմարավետ ակումբներ ու գրադարաններ։ Դեռ ավելին, ժամանակին չեն ռադիոֆիկացվել գյուղերը, չի ստեղծվել հեռախոսային հուսալի կապ։

Սրանք հարցեր են, որոնք լուծում են պահանջում։ Այժմ արագ թափով ռադիոֆիկացվում են շրջանի գյուղերը, կարճ ժամկետում կառուցվել է 500 համարանոց ավտոմատ հեռախոսակայան, շատ բնակավայրերում բացվել են կենցաղային սպասարկման օբյեկտներ, որոշ չափով բարեկարգվել են գյուղերը։ Միայն գարնանը գյուղերի փողոցներում և ճանապարհների եզրերին տնկվել է 21 հազար ծառ, ասֆալտապատվել մոտ 100 հազար քառակուսի մետր ճանապարհ։ Այս ամենը մեծ գործի սկիզբն է միայն։

Բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկումը բարելավելու հարցը վերջերս քննարկվեց կուսշրջկոմի բյուրոյում, շուտով այն կքննարկենք նաև շրջկոմի պլենումում։ Արձագանքելով ստեփանավանցիների հայրենասիրական նախաձեռնությանը՝ որոշել ենք գործը այնպես կազմակերպել, որ եկող տարի բոլոր գյուղերում կառուցվեն բաղնիքներ, իսկ առաջիկա մեկ-երկու տարում՝ նաև կենցաղային սպասարկման տներ։ Հուսով ենք, որ հանրապետության կենցաղային սպասարկման մինիստրությունն այս հարցում մեզ ցույց կտա պատշաճ օգնություն։

Շատ կարելի է պատմել այն գործերի մասին, որ մասիսցիները կատարել են ու դեռ պետք է կատարեն։ Բայց այսքանն էլ բավական է՝ պատկերացում կազմելու մեջ շրջանի երեկվա, այսօրվա և մոտ ապագայի մասին։ Ավելացնեմ միայն, որ նորաստեղծ Մասիսի շրջանի զարգացման հեռանկարները լայն են ու ոգևորող։ Մենք դեռ առաջին քայլերն ենք կատարել մեր առջև բացված լայն ճանապարհին։

Ոգևորված ձեռք բերած առաջին հաջողություններով՝ շրջանի աշխատավորները, 1.700 կոմունիստ միավորող սկզբնական կուսկազմակերպությունները լի են վճռականությամբ՝ հաջողությամբ լուծելու իրենց առջև դրված խնդիրները։ Նրանք արժանավայել գործերով կդիմավորեն Հայաստանի վերածննդի 50-ամյա տարելիցը։

# ՔԱՂԱՔԱԿԱՆ ՈՒՍՈՒՑՈՒՄԸ ԻՆՔՆԱՆՊԱՏԱԿ ՉԷ

Գ. Ս. ՆԱԽՇՔԱՐՅԱՆ

ՀԿԿ Նոյեմբերյանի շրջկոմի քարտուղար

Կոմունիստների քաղաքական ուսուցման վերակառուցման ու կազմակերպման փորձը մեզ բերել է այն համոզման, որ նկատելիորեն բարձրացել է ուսուցման գաղափարական մակարդակը, մեծացել դրա ներգործությունը։ Նոյեմբերյանի շրջանի կուսկազմակերպություններում հեղափոխական տեսության ուսումնասիրությունը սերտորեն կապվում է կոմունիստական շինարարության հետ, նպաստում շրջանի առջև դրված քաղաքական ու տնտեսական խնդիրների լուծմանը, կոմունիստների ու անկուսակցականների լենինյան ոգով դաստիարակմանը։

Ուշագրավ է նաև այն, որ քաղաքական ուսուցման նկատմամբ նկատելիորեն բարձրացել է ունկնդիրների պատասխանատվությունը։ Նրանք լրջորեն և առավել խորությամբ են ուսումնասիրում կուսակցության պատմությունը, քաղաքատնտեսությունը, փիլիսոփայությունը. կուսակցական ուսուցումը դարձել է ավելի նպատակասլաց ու բովանդակալից։ Դրան մեծապես նպաստել է այն, որ կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները բարձրացրել են պրոպագանդիստներին ներկայացվող պահանջները, բարելավել նրանց հետ տարվող տեսական-մեթոդական աշխատանքը։

Անցյալ ուսումնական տարում մեր շրջանում գործում էին տարրական տիպի 3 քաղդպրոց, մարքսիզմ-լենինիզմի 54 դպրոց և տեսական 22 սեմինար, որոնցում ընդգրկված էին 1414 կոմունիստներ ու անկուսակցականներ։ 219 կոմունիստներ մարքս-լենինյան տեսության հարցերն ուսումնասիրում էին ինքնուրույն, անհատական պլանով։ Լավ էր կատարված պրոպագանդիստական կադրերի ընտրությունը։ 79 պրոպագանդիստներից 77-ը ունեին բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն։

Քաղաքական ուսուցումը մշտապես գտնվել է կուսշրջկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների ուշադրության կենտրոնում։ Տարեսկզբին բոլոր պրոպագանդիստները հրավիրվել են կուսշրջկոմ և նրանցից յուրաքանչյուրին ասվել է, թե ո՞րն էր նախորդ տարում նրա ղեկավարած քաղդպրոցի, սեմինարի աշխատանքում դրականը, որո՞նք էին թերությունները և ի՞նչ պետք է արվի դրանց վերացման համար։

Պրոպագանդիստներին օգնելու և պարապմունքները նպատակասլաց դարձնելու նպատակով, շրջանային սեմինար պարապմունքներ անցկացնելուց



բացի, մենք մեծ ուշադրություն ենք նվիրել նաև պրոպագանդիստական աշխատանքի փորձի փոխանակմանը։ Շրջկոմի քաղլուսկաբինետի մեթոդխորհրդի միջոցով անցյալ տարի շրջանի սկզբնական կուսկազմակերպություններում պրոպագանդիստները լսել և քննարկել են տարրական քաղդպրոցների 2, մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցների 14 և սեմինարների 10 պարապմունք։ Նման միջոցառումն, անշուշտ, պրոպագանդիստներին, և հատկապես քիչ փորձ ունեցողներին շատ բան է տվել։

Կուսշրջկոմը պրոպագանդիստներին օգնում է շրջանի էկոնոմիկային ծանոթացնելու, նրանց ուսանելի փորձը տարածելու և արմատավորելու։ Այդ նպատակով կազմակերպել ենք պրոպագանդիստների այցելությունը շրջանի ջրհան կայանները և պտղաբուծական առաջավոր սովխոզները։ Ջրհան կայաններում պրոպագանդիստներն ականատես եղան, թե ինչպես 16 մեծ ու փոքր ջրհան կայանների միջոցով շրջանում ոռոգելի է դարձել 8000 հեկտարից ավելի հողատարածություն, որից 5110 հեկտարի վրա արդեն տնկվել են պտղատու և խաղողի այգիներ։ Ջրհան կայանները կյանք ու կենդանություն են պարգևել երբեմնի փուշ ու տատասկով պատված դաշտերին։

Ջեյթունի և Հաղթանակի սովխոզներում պրոպագանդիստները ծանոթացան առաջավոր փորձի իսկական դպրոցներին, իմացան, որ միայն անցյալ տարի այդ տնտեսություններն արտադրել են մոտ 9000 տոննա պտուղ և ստացել 2 միլիոն 200 հազար ռուբլու օգուտ։ Ահա թե ինչու Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ և՛ Ջեյթունի, և՛ Հաղթանակի սովխոզներն արժանացան ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության, ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի հոբելյանական պատվոգրերի։

Կուսշրջկոմը պրոպագանդիստներին պարբերաբար տրամադրում է շրջանի ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների զարգացումը բնորոշող թվեր ու փաստեր, որոնք լայնորեն օգտագործվում են պարապմունքների ընթացքում։ Պրոպագանդիստներն ստացել են շրջանի ժողովրդական տնտեսության զարգացման 1960—1970 թթ. դինամիկան արտահայտող նյութեր։

Պրոպագանդիստներին օգնելու նպատակով, շրջկոմի քաղլուսկաբինետում ցուցադրվում են նաև մեծ քանակությամբ գրքեր, նյութեր, հոդվածներ, նկարներ, որոնք արտացոլում են շրջանի կուսկազմակերպությունների գործունեությունը՝ Բարանայի կոմբջջի հիմնադրումից (1917 թ. հունիս) մինչև մեր օրերը։ Այդտեղ հարուստ նյութեր կարելի է գտնել ՍՄԿԿ լենինյան գվարդիայի երևելի գործիչների ու հեղափոխության համար իրենց կյանքը զոհած ականավոր բոլշևիկների, շրջանի հին հեղափոխականների, նոյեմբերյանցի անվանի մարդկանց, մեծ Հայրենականի տարիներին զոհված 112 կոմունիստների ու շատ-շատերի մասին։

Քաղլուսկաբինետում պրոպագանդիստներն օգտվում են նաև հեռուստացույցից, մագնիտաֆոնից, ռադիոընդունիչից և կինոապարատից։ Նրանք ունկնդրում են նաև Վ. Ի. Լենինի և կուսակցական ու պետական գործիչների ձայնագրված ելույթները, կոլեկտիվ քննարկում լսածն ու դիտածը։ Առանձին կուսկազմակերպություններում լուրջ ուշադրություն է նվիրվում նաև պարապմունքների ժամանակ ուսումնասիրվող թեմային առնչվող կինոնկարների դիտմանն ու քննարկմանը։ Դա, անշուշտ, նպաստում է քաղաքական ուսուցման աշխատանքի ավելի հաջող կազմակերպմանը։ Պրոպագանդիստներին այդ կարգի օգնություն են ցույց տալիս նաև կուսկազմակերպությունները։ Օրինակ, Ջեյթունի սովխոզային սկզբնական կուսկազմակերպության բյուրոն (քարտու-

դար՝ Ն. Մոսինյան) դեռ տարեսկզբից քաղդպրոցի լսարանը ապահովեց անհրաժեշտ դիդակտիկ նյութերով՝ բրոշյուրներով, քարտեզներով: Կոմունիստները բարձր պատասխանատվություն հանդես բերեցին քաղուսուցման նկատմամբ, նրանցից ոչ մեկը անհարգելի չբացակայեց պարապմունքներից:

Սովխոզի կուսկազմակերպության մարքսիզմ-լենինիզմի հիմունքներն ուսումնասիրող քաղդպրոցը ղեկավարում է Դեբեդաշենի № 1 դպրոցի դիրեկտոր, հանրապետության վաստակավոր ուսուցիչ Մկրտիչ Մագուլյանը: Նա բարեխիղճ պրոպագանդիստ է, ունի ուսանելի ու հարուստ փորձ: Կուսշրջկոմը կազմակերպեց նրա փորձի ուսումնասիրությունը: 30-ից ավելի պրոպագանդիստներ ունկնդրեցին նրա հերթական պարապմունքներից մեկը: Այնտեղ ուսումնասիրվում էր «Կուսակցությունը սոցիալիզմի հիմքի կազմակերպողն է (1920—32 թթ.)» թեման: Ունկնդիրներ Ռ. Տոնոյանը, Ա. Բոզոյանը, Հ. Հովհաննիսյանը, Մ. Նալբանդյանը, Ծ. Մանուկյանը և ուրիշներ հանգամանորեն խոսեցին երկրի ինդուստրացման, գյուղատնտեսության կոլեկտիվացման հարցերի, կուսակցության համագումարների որոշումների մասին՝ պրակտիկ կյանքից վերցրած կոնկրետ օրինակներով հիմնավորելով իրենց խոսքը: Հ. Հովհաննիսյանն իր ելույթը նվիրեց երկրի էլեկտրիֆիկացման լենինյան պլանին (ԳՈԷԼՌՕ): Նա այնուհետև պատմեց, թե էլեկտրիֆիկացման լենինյան պլանի իրագործումն ինչ է տվել երկրին, հանրապետությանը, շրջանին և Ջեյթունի սովխոզին, նշեց, որ միայն 1969 թ. Նոյեմբերյանի շրջանը ծախսել է 41 միլիոն կվտ/ժամ էլեկտրաէներգիա, որից 34 միլիոնը՝ գյուղատնտեսությանը: Միայն ջրհան կայանները սպառել են 30 միլիոն կվտ/ժամ էլեկտրաէներգիա: Դրանից ստացած տնտեսական արդյունքն ավելի շատ է:

Պարապմունքի սկզբից մինչև վերջ զգացվում էր, որ բոլոր ունկնդիրները կարդացել էին հանձնարարված գրականությունը, բազմակողմանիորեն նախապատրաստվել պարապմունքին. քննարկվող թեման նրանք սերտորեն կապում էին կյանքի հետ և անում ինքնուրույն եզրահանգումներ:

Պրոպագանդիստը, որպես նոր թեմա, հանձնարարեց Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում Լ. Ի. Բրեժնևի Լենինի գործն ապրում և հաղթանակում է զեկուցումը: Խոսելով այդ թեմայի մասին՝ պրոպագանդիստն ունկնդիրների ուշադրությունը հրավիրեց հանգուցային հետևյալ հարցերին. Լենինը որպես մտածող և հեղափոխական, լենինիզմը կոմունիստական շինարարության դրոշն է, լենինիզմը և համաշխարհային հեղափոխական պրոցեսը, լենինյան պատգամների կենսագործումը մեր երկրում, Ջեյթունի սովխոզը լենինյան գաղափարների հաղթանակի ծնունդ է: Պրոպագանդիստը պարապմունքի ժամանակ խոսեց այն մասին, թե մեծ առաջնորդի ծննդյան 100-ամյակի առթիվ ծավալված սոցիալիստական մրցության մեջ ինչպիսի մեծ հաջողությունների է հասել Ջեյթունի սովխոզը, որ դրանց մեջ մեծ ավանդ ունեն նաև քաղդպրոցի ունկնդիրները:

Վերջերս կուսշրջկոմի բյուրոյում քննարկվեց Կողբի փայտամշակման կոմբինատի և Բաղանիսի սովխոզային կուսկազմակերպությունների մարքսիզմ-լենինիզմի հիմունքներն ուսումնասիրող քաղդպրոցների պրոպագանդիստներ Լ. Բարսեղյանի և Ս. Հարությունյանի առաջավոր փորձը: Նշվեց, որ պրոպագանդիստական աշխատանքի 30 տարիների ընթացքում նրանք մեծ աշխատանք են կատարել իրենց ունկնդիրներին քաղաքական գիտելիքներով զինելու համար: Պրոպագանդիստի աշխատանքը համարելով ստեղծագործական՝ նրանք բազմակողմանիորեն են նախապատրաստվում յուրաքանչյուր



պարապմունքին, խորապես ուսումնասիրում ՍՄԿԿ պատմությունը, մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունները, կուսակցության համագումարների, պլենումների որոշումները, ծանոթանում թեմային առնչվող գեղարվեստական գրականությանը, մշտապես հետևում մամուլին և այդ ամենին հաղորդակից դարձնում ունկնդիրներին: Ահա թե ինչու Լ. Բարսեղյանի և Ս. Հարությունյանի ղեկավարած դպրոցների պարապմունքներն անցնում են հետաքրքրական, բովանդակալից: Նրանց ունկնդիրները ձեռք են բերել գրքի վրա ինքնուրույն աշխատելու, տեսական ու քաղաքական հարցերն ըմբռնելու և հասկանալու հմտություն:

Լավ իմանալով, որ կուսակցական ուսուցումն ինքնանպատակ չէ, այլ կոչված է ունկնդիրներին տալու քաղաքական անհրաժեշտ գիտելիքներ, որոնք նրանց պետք են պրակտիկ խնդիրները հաջողությամբ լուծելու, կուսակցության կանխագծումները կյանքում իրականացնելու համար՝ պրոպագանդիստները ծրագրային հարցերի լուսաբանումը սերտորեն կապում են ունկնդիրների առջև դրված պրակտիկ խնդիրների հետ և նպաստում դրանց լուծմանը: Երկու պրոպագանդիստներն էլ, պարապմունքները հետաքրքրական դարձնելու համար օգտագործում են բազմազան ձևեր ու մեթոդներ (անկաշկանդ զրույց, բանավեճ, հարց ու պատասխան, ռեֆերատների ընթերցում, գեղարվեստական գրքերի, կինոնկարների քննարկում, դիաֆիլմերի օգտագործում և այլն):

Պրոպագանդիստ Ս. Հարությունյանը պատրաստել էր էլեկտրական լուսային քարտեզ, որը լայնորեն օգտագործում էր Վ. Ի. Լենինին նվիրված թեմաների ուսումնասիրության ժամանակ: Սեղմելով համապատասխան կոճակը՝ պրոպագանդիստը ցույց էր տալիս այն քաղաքները, որոնք կրում են Լենինի անունը, կամ այն քաղաքներն ու բնակավայրերը, որտեղ ապրել է առաջնորդը, կրել աքսորի դառնությունները՝ սկսած Շուշինսկոյից ու Կրասնոյարսկից մինչև Կապրի կղզին ու Լոնդոնը: Պարապմունքի ժամանակ ունկնդիրները լսել են Լենինյան վայրերով թեմայով ռադիոհաղորդում, ունկնդրել Վ. Ի. Լենինի Ի՞նչ է սովետական իշխանությունը, Աշխատանքային կարգապահության մասին ձայնագրված սկավառակները:

Ս. Հարությունյանի և Լ. Բարսեղյանի ղեկավարած քաղդպրոցներում վերացել են ունկնդիրների անհարգելի բացակայություններն ու ուշացումները: Նրանց պրոպագանդիստական օրինակելի աշխատանքի շնորհիվ մարքս-լենինյան տեսության նկատմամբ աճել է մարդկանց հետաքրքրությունը: Ահա թե ինչու շրջկոմի բյուրոն կուսկազմակերպություններին ու պրոպագանդիստներին խորհուրդ տվեց ուսումնասիրել, տարածել և արմատավորել այդ առաջավոր պրոպագանդիստների փորձը:

Կուսակցական ուսուցման կենտրոնական դեմքը պրոպագանդիստն է: Ուսուցման հաջողությունը, առաջին հերթին, կախված է նրա հմտությունից, աշխատանքի նկատմամբ սրտացավ վերաբերմունքից:

Մի ժամանակ Ոսկեպարի սովխոզում քաղպարապմունքներն անհետաքրքրական էին անցնում: Պրոպագանդիստ Հ. Բարսեղյանին քիչ էր անհանգստացնում պարապմունքների ցածր արդյունավետությունը: Լինում էին դեպքեր, երբ պրոպագանդիստը պարապմունքը վարում էր, իսկ ունկնդիրներից ոմանք հորանջում էին, թերթ ու գիրք կարդում, ոմանք էլ՝ պարզապես ննջում: Վիճակը փոխվեց, երբ պրոպագանդիստ առաջադրվեց սովխոզի երիտասարդ դիրեկտոր, կուսակցական բարձրագույն կրթություն ունեցող Ս. Պետրոսյանը: Նոր պրոպագանդիստն, ամենից առաջ, ուսումնասիրեց, թե ինչո՞ւ

են ունկնդիրներն անտարբեր քննարկվող հարցերի նկատմամբ, ինչո՞ւ ելույթներով հանդես չեն գալիս։ Նա ունկնդիրներին հանձնարարություններ տվեց, հետևեց, որ նրանք աշխատեն գրքի վրա, նրանց մոտ հավատ ներշնչեց իրենց գիտելիքների նկատմամբ։ Եվ այդ ամենը նպաստեց ունկնդիրների ակտիվության բարձրացմանը, քաղաքական հարցերի նկատմամբ նրանց հետաքրքրության աճին։ Այժմ պրոպագանդիստին հուզում է մի այլ հարց՝ ինչպե՞ս անել, որ յուրաքանչյուր պարապմունք տարբեր լինի նախորդից, ինչպիսի՞ նոր ձևեր ու մեթոդներ օգտագործել պարապմունքի ժամանակ, որպեսզի այն հետաքրքրական լինի։

Կուսակցական ուսուցումը հաջող է կազմակերպված նաև Նոյեմբերյանի, Լալվարի, Հոկտեմբերի սովխոզներում, Նոյեմբերյանի № 1, Ղալաչայի, Դեբեդաշենի № 1 դպրոցական և այլ կուսկազմակերպություններում։ Պրոպագանդիստներ Շ. Շահնազարյանը, Մ. Գասպարյանը, Ս. Փիրումյանը, Ս. Ջիլինգարյանը, Ռ. Մուսայելյանը և շատ ուրիշներ կուտակել են պրոպագանդիստական աշխատանքի հարուստ փորձ, որն արժանի է ամենայն ուշադրության։

Գաղտնիք չէ, որ կուսակցական ուսուցման հաջողությունը շատ բանով պայմանավորված է պրոպագանդիստի անձնական օրինակով։ Դրա համար մենք առաջնորդվում ենք այն սկզբունքով, որ յուրաքանչյուր պրոպագանդիստ, եթե նա ցանկանում է իրեն լսեն ու հավատան, ազնվության և ուղղամտության տիպար պետք է լինի, բոլշևիկյան սկզբունքայնություն հանդես բերի ինչպես իր խոսքի, այնպես էլ գործի մեջ։ Ահա թե ինչու կուսշրջկոմը, նրա պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը, կուսկազմակերպությունները մեծ ուշադրություն են նվիրում պրոպագանդիստական կադրերի ճիշտ ընտրությանն ու նրանց դաստիարակությանը։

Կուսշրջկոմն ամեն կերպ խրախուսում է առաջավոր պրոպագանդիստներին։ Շրջկոմի բյուրոյի որոշմամբ առավել աչքի ընկած 12 պրոպագանդիստներ արժանացել են շրջանային կոմիտեի պատվո տախտակին, 4-ը՝ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ «Հայաստանի տուրիստ» գնացքով եղել են լենինյան վայրերում։ Կուսակցական ուսուցման հարցերը սիստեմատիկաբար լուսաբանվում են շրջանային «Շիրծան» թերթում, լավագույն պրոպագանդիստների մասին հրապարակվում են հոդվածներ ու ակնարկներ։

Մենք զբաղվում ենք նաև ղեկավար կադրերի գաղափարական-քաղաքական պատրաստականության բարձրացմամբ։ Շրջկոմին կից կազմակերպել էինք շրջանային ղեկավար ակտիվի մշտապես գործող տեսական կոնֆերանս, որտեղ ընդգրկված էր 80 մարդ։

Կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները սիստեմատիկ աշխատանք են կատարում նաև մարքս-լենինյան տեսությունն ինքնուրույն, անհատական պլանով ուսումնասիրողների հետ, նրանց համար կազմակերպում խմբային և անհատական կոնսուլտացիաներ, դասախոսություններ, ռեֆերատների քննարկումներ և այլն։

Տեսության ուսումնասիրության կազմակերպման երկարամյա փորձը վկայում է, որ ամենից ավելի արդյունավետ մեթոդը քաղաքական ինքնակրթությունն է։ Հասկանալի է, որ տիրապետել գիտելիքներին այնպես, որ նրանք դառնան անձնական համոզմունք, հեշտ գործ չէ։ Դա և՛ շատ ժամանակ է պահանջում, և՛ համառություն։ Ուստի, մենք ամեն կերպ ջանում ենք, որպեսզի քաղաքական ուսուցման մեջ ծանրության կենտրոնն աստիճանաբար դառնա քաղաքական ինքնակրթությունը։



Կուսշրջկոմի, սկզբնական կուսկազմակերպությունների ուշադրության կենտրոնում են գտնվում կոմերիտական ուսուցման հարցերը։ Մենք լավ ենք ըմբռնում, որ երիտասարդության քաղաքական ուսուցմանը ցույց տրվող ամենամեծ օգնությունը քաղխմբակները լավագույն պրոպագանդիստներով ամրապնդելն է։ Այդպես էլ վարվում ենք։ Շրջանի կոմերիտական ուսուցման սիստեմում անցյալ տարի գործել են 70 խմբակ, որոնցում ընդգրկված էին մոտ 2000 կոմերիտականներ ու երիտասարդներ։ Գաղափարական բարձր մակարդակով են ընթացել կոմերիտական այն քաղխմբակների ու սեմինարների պարապմունքները, որոնց ղեկավարներն են Ս. Վերանյանը, Ս. Ալեքսանյանը, Լ. Ղազարյանը և ուրիշներ։ Ղալաչայի կոմերիտական քաղխմբակի ունկնդիրները եղել են Ստեփանավանում՝ Ստ. Շահումյանի տուն թանգարանում։ Շրջկենտրոնի № 1 դպրոցում կազմակերպվել է հայրենագիտական հարուստ թանգարան, որի նյութերը հաջողությամբ օգտագործվում են ունկնդիրներին հայրենասիրության ոգով դաստիարակելու համար։ Ղոշղոթանի սովխոզի կոմերիտական կազմակերպության Վ. Ի. Լենինի կենսագրությունն ուսումնասիրող քաղխմբակի պրոպագանդիստ Ս. Ալեքսանյանը, որպես դաստիարակության հզոր միջոց, մեծ տեղ է հատկացնում գեղարվեստական գրականությանը։

Չնայած կատարված դրական աշխատանքին՝ քաղաքական ուսուցման գործում մեր առանձին կազմակերպություններում քիչ չեն նաև թերությունները։ Դսեղի, Պտղավանի սովխոզային, Դովեղի կոլտնտեսային, ռոտացման սիստեմների վարչության կուսկազմակերպություններում նկատվել են պարապմունքների ձախողման, գաղափարական ցածր մակարդակով անցկացնելու դեպքեր։ Առանձին պրոպագանդիստներ (Ս. Գուլքանյան, Ջ. Ամիրաղյան, Ի. Ալիև) լրջորեն չեն նախապատրաստվում պարապմունքներին, կուսակցական ուսուցումը չեն դարձնում հետաքրքրական ու գրավիչ, սրտացավ չեն այդ գործի նկատմամբ։ Քիչ չեն դեպքերը, երբ ունկնդիրների մի մասը պարապմունքներին ներկայացել է չնախապատրաստված, մեծ թիվ են կազմել բացակայությունները, խախտվել են կուսակցական ուսուցման միասնական օրենքը։ Այդ ամենը, անշուշտ, բացասաբար է ազդել կուսակցական ուսուցման աշխատանքի հաջող կազմակերպման վրա։

Նկատելի թերություններ կան նաև պրոպագանդիստների հետ տարվող աշխատանքում։ Այս ասպարեզում դեռևս մենք շատ ենք զգում ՀԿԿ Կենտկոմի և Երքաղկոմի Ստ. Շահումյանի անվան քաղլուսատան օգնության կարիքը։ Տեղին է նշել, որ քաղլուսատան որոշ դասախոսներ չեն բավարարում պրոպագանդիստների պահանջները։

Լավ կլինի, եթե մեր պրոպագանդիստները կուսակցական ուսուցման մեջ ավելի մեծ տեղ հատկացնեն պրոպագանդայի տեխնիկական միջոցների օգտագործմանը։ Մենք ձգտելու ենք, որպեսզի յուրաքանչյուր կուսկազմակերպություն առաջիկայում ունենա առնվազն մեկ ֆիլմոսկոպ և համապատասխան դիաֆիլմեր՝ պարապմունքների ժամանակ օգտագործելու համար։

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՇԱՀՈՒԹԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ԿԱՐԵՎՈՐ ՑՈՒՑԱՆԻՇ Է

Ա. Գ. ՄԱՐԴՈՅԱՆ

Վերջին տարիների ընթացքում մեր հանրապետության գյուղատնտեսու-
թյան մեջ նշանակալի չափով աճել է սովխոզների տեսակարար կշիռը։ Դա
տեղի է ունեցել ինչպես նրանց թվի, այնպես էլ արտադրած գյուղատնտեսա-
կան մթերքների ավելացման շնորհիվ։ Այս հանգամանքն իր հերթին փոփո-
խություն է հարուցել գյուղատնտեսության համախառն ու ապրանքային ար-
տադրության կառուցվածքում։ Եթե երկու տասնամյակ առաջ հանրապետու-
թյան կոլտնտեսությունները տալիս էին գյուղատնտեսության ապրանքային
արտադրանքի հիմնական մասը, ապա այժմ սովխոզները (որոնց թիվն աճել
ու 1950 թ. 27-ից 1969 թ. հասել է 257-ի) պետության վաճառած մի շարք
մթերքների տեսակարար կշռով գերազանցում են կոլտնտեսություններին։
Զբաղեցնելով հանրապետության գյուղատնտեսության պիտանի հողերի 47,5
տոկոսը, նրանք պետական գյուղատնտեսական մյուս ձեռնարկությունների
հետ միասին տվել են պետությանը հանձնված պտղի 74, կարտոֆիլի՝ 66,
հացահատիկի՝ 64,6, ձվի՝ 64,4, կաթի՝ 52,5 և մսի 46,7 տոկոսը։

ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումի որոշումից հետո ընկած ժամանակահատվածում զգալիորեն ավելացել են սովխոզների արտադրական կարողությունները և ընդլայնվել նրանց նյութատեխնիկական բազան։ Դրանք հնարավորություն են տվել բարձրացնելու գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը։ Այսպես, հանրապետության սովխոզների համախառն արտադրանքը (1965 թ. պետական գնման գներով հաշված) 1966 թ. 86,4 միլիոն ռուբլու դիմաց 1969 թ. կազմել է 101,0 միլիոն ռուբլի կամ աճել է 17,4 տոկոսով։

Համախառն արտադրանքի ավելացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման և խնայողության ռեժիմի պահպանման շնորհիվ հանրապետության 75 սովխոզներ անցած տնտեսական տարին ավարտել են 13,262 հազար ռուբլի օգուտով։ Առավել բարձր ցուցանիշների են հասել հատկապես Հոկտեմբերյանի, Նոյեմբերյանի, Ղափանի և Շամշադինի շրջանների սովխոզները։ Նրանք գերակատարել են իրենց արտադրական-ֆինանսական պլանները, դարձել են կայուն ու բարձր շահութաբեր տնտեսություններ և նա-



խատեսված 5.766.0 հազար ռուբլու դիմաց ստացել են 6.798.0 հազար ռուբլի օգուտ։

Կատարված ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ նշված շրջանների սովխոզները կայուն և բարձր շահութաբերության են հասել այն բանի շնորհիվ, որ տնտեսության բոլոր ստորաբաժանումներում սահմանել են խնայողության խիստ ռեժիմ, արդյունավետ են օգտագործել հողն ու տեխնիկան, նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսները։ Նրանք առանձնահատուկ ուշադրություն են դարձրել հողագործության և անասնապահության կուլտուրայի բարձրացման և ագրոզոոտեխնիկական կանոնների ճիշտ կիրառման վրա։

Պրակտիկան ցույց է տալիս, որ այն սովխոզներում են առավել հաջողությունների հասնում, ուր առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում խնայողությանը և գործը կազմակերպվում է այնպես, որ ներդրված յուրաքանչյուր ռուբլու դիմաց ստացվի առավելագույն արտադրանք, գնալով բարձրանան ֆոնդահատույցը և աշխատանքի արտադրողականությունը։ Պարզ է, որ դրանց կարելի է հասնել միայն տնտեսավարման մեթոդների կատարելագործման, աշխատանքի գիտական կազմակերպման ու տնտեսական հաշվարկի կիրառման միջոցով։

Որպեսզի սովխոզներն իրոք խնայողաբար օգտագործեն իրենց տրված միջոցները և խնայողությունը դարձնեն շահութաբերության կարևոր գործոններից մեկը, ամենից առաջ պետք է հոգ տանեն տնտհաշվարկի կիրառման մասին, արմատավորեն այդ ուղղությամբ առաջավոր տնտեսությունների փորձը, որպիսին կա նաև մեզ մոտ։

Հանրապետության 16 սովխոզ և պետական այլ տնտեսություն 1969 թ. աշխատել են լրիվ տնտեսական հաշվարկի սկզբունքով։ Այդ տնտեսությունների արտադրա-ֆինանսական գործունեության վերլուծության արդյունքները ցույց են տալիս, որ նրանցում առանձնահատուկ ուշադրություն է նվիրվել տնտեսագիտական աշխատանքի բարելավման և դրա կատարելագործման, ինչպես նաև նյութական շահագրգռվածության բարձրացմանը։ Ժամանակին վերլուծության է ենթարկվել տնտեսությունների վնասաբեր ճյուղերի գործունեությունը, բացահայտվել են եղած թերությունները, անտնտեսվարության երևույթները, մշակվել և կենսագործվել են գործուն միջոցառումներ դրանց վերացման, կորուստների, գերածախսերի և անարտադրողական ծախսումների կանխման, արտադրության ռեզերվների արդյունավետ օգտագործման, խնայողության ռեժիմի ուժեղացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման և տնտեսությունների շահութաբեր գործունեության ապահովման համար։

Ձեռնարկված միջոցառումները տվել են իրենց արդյունքը։ Գերակատարվել են գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության բարձրացման առաջադրանքները, բոլոր տեսակի անասունների գլխաքանակի ավելացման պլանները։

Տնտեսական հաշվարկի փոխադրված բոլոր տնտեսություններն աշխատել են օգուտով, իսկ դրանցից 12-ը՝ գերպլանային օգուտով։ Առավել բարձր ցուցանիշների են հասել հատկապես Նոյեմբերյանի շրջանի Հաղթանակի, Ջեյթունի, Հոկտեմբերյանի շրջանի Լենուղիի, Արաքսի, Լուկաշինի, Ձերժինսկու անվան, Նաիրիի, Խանջյանի անվան, Արարատի շրջանի Սպանդարյանի անվան, Կալինինոյի շրջանի Կալինինի անվան սովխոզները և Լենինականի սելեկցիոն կայանը։ Հաղթանակի սովխոզի գերպլանային օգուտը կազմել է

579,8 հազար, Ջեյթունինը՝ 467,0 հազար, Լենուղիինը՝ 218,5, Սպանդարյանինը՝ 189,0 հազար ռուբլի։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ վերոհիշյալ սովխոզներն արտադրական-ֆինանսական պլանների կատարման և շահութաբերության բարձրացման գործում լավ ցուցանիշների են հասել ամենից առաջ արտադրության ռեզերվներն արդյունավետ օգտագործելու, տնտեսման և խնայողության ռեժիմն ուժեղացնելու միջոցով։

Հանրապետության սովխոզների ձեռք բերված հաջողություններն ավելի մեծ կլինեին, եթե բոլորն էլ աշխատեին վերը նշված սովխոզների օրինակով։

Ինչպես նշված է ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշման մեջ, բազմաթիվ կոլտնտեսություններում և սովխոզներում «դեռևս ցածր է բերքատվությունը, վատ են օգտագործվում հողը, տեխնիկան, պարարտանյութերը և մյուս նյութական ռեսուրսները, դանդաղ են աճում անասունների գլխաքանակն ու մթերատվությունը»։ Կուսակցության Կենտկոմի պլենումի կողմից նշված այս թերությունները վերաբերում են մեր հանրապետության սովխոզների զգալի մասին։

Անհերքելի փաստ է, որ բազմաթիվ սովխոզներ հարկ եղած ուշադրություն չեն դարձրել այդ հարցերի վրա, տնտեսությունը վարել են ցածր մակարդակով, հսկողություն չեն սահմանել պետական միջոցների ծախսման վրա, որի հետևանքով ծախսված միջոցների համեմատ անհրաժեշտ արտադրանք չի ստացվել և արտադրության ծախքերն ամբողջովին չեն փոխհատուցվել։ Չեն մշակվել և կենսագործվել տնտեսական-կազմակերպական բնույթի կոնկրետ միջոցառումներ՝ աշխատանքի կազմակերպման, նորմավորման և վարձատրության ձևերի կատարելագործման, աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու, աշխատանքի արտադրողականությունը և արտադրության արդյունավետությունը բարձրացնելու համար։

Արտադրության ոչ ռացիոնալ կազմակերպման հետևանքով աշխատավարձի (1965—1969 թթ.) տարեկան միջին աճը կազմել է 7,8 տոկոս, իսկ աշխատանքի արտադրողականությանը՝ 3,2։

Այն դեպքում, երբ աշխատավարձի աճը գերազանցում է աշխատանքի արտադրողականության աճին, ձեռնարկությունը զրկվում է ընդլայնված վերարտադրության հնարավորությունից, առանց որի շահութաբերության մասին խոսք լինել չի կարող։

Աշխատանքի արտադրողականության և արտադրության արդյունավետության բարձրացման կարևոր գործոններից են արտադրությունը հիմնական արտադրաֆոնդերով ապահովելը, դրանց և շրջանառու ֆոնդերի միջև ճիշտ համամասնության պահպանումը։ Սակայն այս հանգամանքին դեռևս անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում և դա բացասական ազդեցություն է թողնում արտադրության արդյունավետության բարձրացման և շահութաբերության ապահովման վրա։

Վերջին տարիներին հանրապետության տնտեսապես ետ մնացող կոլտնտեսությունների բազայի վրա կազմակերպվել է 182 սովխոզ, սակայն չի ամրապնդվել նրանց նյութա-տեխնիկական բազան։ Հարյուր հեկտար հողատարածության հաշվով, հիմնական ֆոնդերն այդ սովխոզներում կազմել են 41,7 հազար ռուբլի, մնացած սովխոզներում՝ 81,8 հազար ռուբլի, մեկ աշխատողի հաշվով, համապատասխանաբար՝ 2,9 և 5,6 հազար ռուբլի։ Արտադրական հիմնական ֆոնդերով ապահովված չլինելն արգելակել է այդ սովխոզների ար-



տադրական նորմալ գործունեությունն ու արտադրության արդյունավետության բարձրացումը։

Այս պայմաններում բնավ ներելի չէ եղած գյուղատնտեսական տեխնիկայի անբավարար օգտագործումը, մեխանիզմների՝ կարողությունից ցածր արտադրողականությունը։ Այսպես, 1968 թ. համեմատությամբ, 1969 թ. տրակտորների (15 ձիաուժի վերածած) քանակն ավելացել է 8,2, իսկ կատարած աշխատանքների ծավալը՝ 1,4 տոկոսով։ Մեկ պայմանական տրակտորի արտադրողականությունը պակասել է 11 հեկտարով և կազմել է 159 հեկտար։ Տեխնիկայի ոչ արդյունավետ օգտագործման հետևանքով դեռևս ցածր է գյուղատնտեսական առանձին կուլտուրաների մշակության և բերքահավաքի մեքենայացման ծավալը։

Հանրապետության մասշտաբով սովխոզներում գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրության աճման տեմպը ետ է մնացել արտադրական հիմնական ֆոնդերի աճման տեմպից։ 1966 թ. 100 հեկտար հողատարածության հաշվով սովխոզներում արտադրական հիմնական ֆոնդերը կազմել են 38,3 հազար, 1969 թ. 47,0 հազար ռուբլի։ Նշված տարիներին արտադրական-հիմնական ֆոնդերի տարեկան միջին աճը կազմել է 7,1, իսկ համախառն արտադրանքինը՝ 1,4 տոկոս։ Իջել է ֆոնդահատույցը։ 1966 թ. 100 ռուբլի արտադրական հիմնական ֆոնդերի հաշվով արտադրվել է 43,4 հազար, 1967 թ. 44,8 հազար, 1968 թ. 38,7 հազար, 1969 թ.՝ 36,8 հազար ռուբլի։ Ահա թե ինչու բոլոր կատեգորիաների տնտեսությունների կողմից արտադրված գյուղատնտեսական մթերքների ընդհանուր ծավալում դեռևս ցածր է սովխոզների տեսակարար կշիռը։ Նրանք 1969 թ. արտադրել են հանրապետությունում արտադրված շաքարի ճակնդեղի 9, բանջարեղենի՝ 18, կարտոֆիլի՝ 21, հացահատիկի և բրդի՝ 24-ական, ձվի՝ 25, կաթի՝ 26, մսի՝ 27, խաղողի՝ 29, պտղի՝ 41 տոկոսը։ Այդ նույն թվականին նրանք չեն կատարել գյուղատնտեսական մի շարք կուլտուրաների բերքատվության, ինչպես նաև կաթի ու բրդի արտադրության պլանները։

Պլանների թերակատարման գլխավոր պատճառներից մեկն այն է, որ անբավարար են կենսագործվել ագրոզոոտեխնիկական միջոցառումները, որի հետևանքով գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրության պլանը կատարվել է 82,3, իսկ իրացմանը՝ 92,4 տոկոսով։ Պլանից պակաս են արտադրվել 22,0 միլիոն, իրացվել՝ 8,0 միլիոն ռուբլու մթերքներ։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության և իրացման պլանների թերակատարման, անտնտեսվարության և մասամբ բնակլիմայական անբարենպաստ պայմանների պատճառով արտադրանքի ինքնարժեքը բարձրացել է 25,3 տոկոսով։

Հանրապետության սովխոզների տնտեսական գործունեության արդյունքների վերլուծությունից պարզվում է, որ արտադրության շահութաբերությունը, ամբողջությամբ վերցրած, 1967 թ. +2,9 տոկոսի դիմաց, 1968 թ. կազմել է —8,7, իսկ 1969 թ.՝ —9,2 տոկոս։ Դրությունն առանձնապես անմխիթարական է անասնաբուծության բնագավառում։ Տնտեսության այս կարևոր ճյուղի շահութաբերությունը անցած տնտեսական տարում կազմել է —15 տոկոս։

Ճշմարտությունը պահանջում է ասել, որ ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրությունը և շրջսովետների գործկոմների գյուղատնտեսության վարչություններն անհրաժեշտ ուշադրություն չեն դարձրել տնտեսագիտական ծառայության վրա։ Շատ տնտեսություններ արտադրության անհաշվենկատ վար-

ման հետևանքով ունեցել են 2,9 միլիոն ռուբլու կորուստներ, այդ թվում անասունների անկումներից՝ 1.340.0 հազար ռուբլի։ Թույլ են տրվել կերի չարդարացված գերածախսեր և շռայլումներ։

Անհանդուրժելի թերություններ կան անասնագլխաքանակի ավելացման պլանների կատարման և հոտի վերարտադրության գործում։ Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակի ավելացման 1969 թ. պլանը կատարվել է 94, մանր եղջերավորներինը՝ 82 տոկոսով։ Հոտում մայրական կազմը քիչ լինելով հանդերձ, դրանից զգալի մասը խոտանվել է։ Բացի այդ, անհրաժեշտ աշխատանք չի կատարված անասունների ամլության կրճատման, անկումների կանխման ու, հատկապես, գիրացման համար։ Վատ են օգտագործվել մսատու անասնապահության և ոչխարաբուծության զարգացման հնարավորություններն ու ռեզերվները։ Պետությանը հանձնված յուրաքանչյուր խոշոր եղջերավոր անասունի կենդանի միջին քաշը կազմել է 218 կգ, մանր եղջերավոր անասուններինը՝ 32 կգ, խոզինը՝ 66 կգ։

Բազմաթիվ սովխոզներ թույլ են տվել նաև ֆինանսական կարգապահության խախտումներ և անօրինական վճարումներ։ 141 սովխոզներ չնայած գտնվել են ֆինանսական ծանր դրության մեջ, սակայն կապիտալ շինարարության գծով թույլ են տվել 2,7 միլիոն ռուբլու սեփական շրջանառու միջոցների անշարժացում։ Ավելի և ապօրինի աշխատավարձ է վճարվել 205,0 հազար և անարտադրողական ծախսումներ են կատարվել 654,0 հազար ռուբլու չափով։ Բարձր են նաև վերադիր ծախսերը, որոնք 1970 թ. հունվարի մեկին կազմել են 18,4 միլիոն ռուբլի։ Անավարտ արտադրության փոխանցվող մնացորդների թանկացումը կազմել է 2,5 միլիոն ռուբլի։

Պարզ է, որ այս վիճակում սովխոզային արտադրությունը չէր կարող շահութաբեր լինել։ Սովխոզների մեծ մասը ոչ միայն չի կատարել շահույթի 1969 թվականի պլանը, այլև գործել է վնասով։ Այդ վնասները նշանակալի գումար են կազմում 27 շրջանների սովխոզներում։ Դրանք են՝ Մարտունու շրջանի սովխոզները՝ 1.884,0 հազար, Ղուկասյանի շրջանի սովխոզները՝ 1.681 հազար, Արթիկի շրջանի սովխոզները՝ 1.366,0 հազար ռուբլի։ Սևանի շրջանի չորս սովխոզի վնասը կազմել է 840,0 հազար, Կամոյի շրջանի հինգ սովխոզինը՝ 968,0 հազար, Ամասիայի շրջանի հինգ սովխոզինը՝ 821,0, Ապարանի շրջանի վեց սովխոզինը՝ 889,0 հազար ռուբլի։

Անհանդուրժելի թերություններ կան հատկապես հաշվապահական-հաշվառման, հաշվետվությունների և արտադրական-ֆինանսական պլանների կազմման, նյութական արժեքների պահպանման գործում։ Հսկողության բացակայության հետևանքով տեղի են ունեցել պետական ունեցվածքի վատնման-յուրացման և հափշտակության դեպքեր։ 1970 թ. դեբիտորական պարտքերն ավելացել են 470,0 հազար ռուբլով և կազմել են 5.403,0 հազար ռուբլի։ Դեբիտորական պարտքերը մեծ չափերի են հասել հատկապես Արթիկի, Ղուկասյանի, Ամասիայի, Սևանի և մի շարք այլ շրջանների սովխոզներում։

Շատ սովխոզներ խախտելով սահմանված կարգը, ստացված մթերքների համար չեն կազմել սկզբնական փաստաթղթեր, դրանք առանց պահեստ մուտք անելու, կալից, դաշտից և ֆերմայից հանձնել են մթերող և առևտրական կազմակերպություններին ու վերջինների կողմից տրված փաստաթղթերի հիման վրա նոր մուտք են արել պահեստ։ Նման պրակտիկան նպաստավոր պայմաններ է ստեղծել չարաշահումների և հափշտակությունների համար։

Հանրապետության բազմաթիվ սովխոզներ իրենց 1969 թ. գործունեու-



թյան ընթացքում ինքնարժեքի բարձրացման, անարտադրողական ծախսերի, կորուստների ու գերածախսերի հետևանքով կորցրել են մոտավորապես 33,2 միլիոն ռուբլի։ Հասկանալի է, որ այսպիսի պայմաններում նրանք չէին կարող ապահովել իրենց արտադրական-ֆինանսական պլանների կատարումը, արտադրության արդյունավետության բարձրացումը։

Եզրակացությունը պարզ է։ Այսպես շարունակել և սովխոզները նման վիճակում թողնել, չի կարելի։ Լուրջ անհանգստություն պետք է պատճառի այն սովխոզների վիճակը, որոնք չկատարելով իրենց արտադրական-ֆինանսական պլանները, տարիներ շարունակ միլիոնների հասնող վնաս են տալիս պետությանը։

Մենք բոլոր հնարավորություններն ունենք տնտեսապես ետ մնացող սովխոզներն առկա վիճակից դուրս բերելու։ Դրա համար, ամենից առաջ, ըստ յուրաքանչյուր տնտեսության, պետք է մշակել և կենսագործել տնտեսական-կազմակերպական բնույթի գործուն միջոցներ, որոնք իրոք նպաստեն եղած թերությունների, անտնտեսվարության երևույթների, ինչպես նաև վնասաբերության և ցածր շահութաբերության պատճառների վերացմանը, տնտեսագիտական աշխատանքի արմատապես բարելավմանը, արտադրության ռեզերվների արդյունավետ օգտագործմանն ու արտադրության բոլոր տեղամասերում խնայողության խիստ ռեժիմի պահպանմանը։

Հետևողական աշխատանք պետք է կատարել տնտեսական լծակները լայնորեն կիրառելու, տնտեսման և խնայողության հարցերը բոլորի ուշադրության կենտրոնում պահելու, յուրաքանչյուր աշխատողի ու ողջ կոլեկտիվին մոբիլիզացնելու՝ արտադրության ռեզերվներն օգտագործելու և պլանային առաջադրանքների կատարումն ապահովելու համար։

Սովխոզների ամեն մի աշխատող պետք է ըմբռնի այն ճշմարտությունը, որ բանվորական ժամանակի յուրաքանչյուր րոպեի, հումքի և վառելանյութի յուրաքանչյուր գրամի, մեքենայի յուրաքանչյուր մասի, ամեն մի կոպեկի խնայողությունը կարևորագույն նշանակություն ունի տնտեսության շահութաբեր գործունեության համար։

Հանրապետության սովխոզներն իրենց գործունեության մեջ թույլ տված անտնտեսվարության երևույթները վերացնելու, բոլոր արտադրաֆոնդերը ճիշտ օգտագործելու, աշխատավարձի ֆոնդի նկատմամբ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու և արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու միջոցով կարող են եկամուտներն ավելացնել մոտ 33,0 միլիոն ռուբլով։ Բավական է ասել, որ արտադրանքի ինքնարժեքի միայն մեկ տոկոսով իջեցումը կտա 1.200,0 հազար ռուբլու, ամեն մի տոննա մսի, կաթի, խաղողի և պտղի արտադրության վրա կատարվող ծախսերի մեկ ռուբլով կրճատումը՝ 134,0 հազար ռուբլու, իսկ այդ մթերքների արտադրության բոլոր ծախսերի մեկ տոկոսով կրճատումը՝ 641,0 հազար ռուբլու լրացուցիչ եկամուտ։ Յուրաքանչյուր տնտեսվար այս հաշվարկները պետք է նկատի ունենա և այնպես վարի արտադրությունը, որ քիչ ծախսումներով արտադրվեն որակյալ շատ մթերքներ։

Ժողովրդական տնտեսության մեջ արտադրության ռեզերվների օգտագործումը բարելավելու և խնայողության ռեժիմն ուժեղացնելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի նամակի քննարկման ընթացքում սովխոզների աշխատողները կոնկրետ պարտավորություններ են ստանձնել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը բարձրացնելու, մթերք-

ների արտադրությունն ավելացնելու և պետությանը դրանց հանձնումները հա-
ջողությամբ կատարելու համար։

ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության, շրջանային կուսակցական,
սովետական կազմակերպությունների և գյուղատնտեսության օրգանների
խնդիրն է՝ ստանձնած պարտավորությունների կատարման համար մոբիլի-
զացնել բոլոր ուժերը, համարձակորեն կատարելագործել նյութական և բա-
րոյական շահագրգռվածության սիստեմը, պայքարել գյուղատնտեսական աշ-
խատանքները սահմանված ժամկետներին և որակական բարձր ցուցանիշնե-
րով կատարելու համար։ Նրանք պետք է մոտիկից զբաղվեն յուրաքանչյուր
սովխոզի հարցով, խորամուխ լինեն նրա էկոնոմիկայի մեջ, ժամանակին վեր-
լուծեն վնասով աշխատող սովխոզի, նրա ստորաբաժանումների գործունեու-
թյունը, բացահայտեն եղած թերությունները, արտադրության զարգացմանը
խանգարող հանգամանքները և կոնկրետ միջոցառումներ նշեն դրանց վերաց-
ման համար։ Միաժամանակ անհրաժեշտ է ամրապնդել պետական կարգա-
պահությունը, բարձրացնել սովխոզների դիրեկտորների, մյուս ղեկավար աշ-
խատողների և մասնագետների պատասխանատվությունը հանձնարարված
գործի հանդեպ, աշխատանքից ազատել այն անձանց, որոնք չեն ապահովում
իրենց հանձնարարված բնագավառի առջև դրված խնդիրների լուծումը։ Կոնկ-
րետ ու արդյունավետ միջոցառումներ պետք է իրագործվեն արտադրության
կենտրոնացման և մասնագիտացման նպատակով, հասնելով այն բանին, որ
արտադրության բոլոր ճյուղերը դառնան շահութաբեր։

Մեր կարծիքով, սովխոզային արտադրությունը համակողմանիորեն զար-
գացնելու, նրա արդյունավետությունը բարձրացնելու, արտադրության ծախ-
քերը փոխհատուցելու համար անհրաժեշտ է հոգ տանել վերջին տարիների
ընթացքում անտեսապես ետ մնացող կոլտնտեսությունների բազայի վրա
կազմակերպված սովխոզներն արտադրական հիմնական ֆոնդերով ապահովե-
լու, անհրաժեշտ քանակությամբ անասնապահական օբյեկտներ, արհեստա-
կան ոռոգման կետեր և գարաժներ կառուցելու մասին։
Նույներ, տեխնիկական սպասարկման կետեր և գարաժներ կառուցելու մասին։
Այդ նպատակով ամենամյա հատկացումների ժամանակ պետք է ավելի շատ
միջոցներ նախատեսել նշված տնտեսությունների համար։ Անհրաժեշտ է նաև
անհետաձգելի միջոցներ ձեռք առնել Աշտարակի, Թալինի, Էջմիածնի և մի
շարք այլ շրջանների խամ ու խոպան հողերի բազայի վրա կազմակերպված
սովխոզները բանվորական ձեռքերով ապահովելու, այգիների մշակության,
բուժման աշխատանքները բարելավելու և բերքատվությունը բարձրացնելու
համար։

Կորուստները կրճատելու, մթերքների իրացման գործը բարելավելու նպա-
տակով պետք է թույլատրել մթերող կազմակերպությունների կողմից չընդուն-
վող բանջարեղենը, պտուղը, խաղողը, կարտոֆիլը և մյուս շուտ փչացող
մթերքները, ինչպես նաև թռչուններն իրացնել պետական, կոոպերատիվ
կազմակերպությունների միջոցով և շուկայում, այդ մթերքները մտցնելով պե-
տությանը մթերքներ հանձնելու պլանի կատարման մեջ։

Սովխոզները մեծ վնասներ են ունենում կոմունալ-բնակարանային տըն-
տեսության շահագործումից։ Գտնում ենք նպատակահարմար, այդ տնտեսու-
թյունը վերցնել սովխոզներից և հանձնել տեղական սովետների գործկոմ-
ներին կամ նրա շահագործումից առաջացած վնասը դուրս գրել պետական
բյուջեի հաշվին։

# Դեպի ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ 50-ԱՄՅԱԿԸ

## ՀԱՆՈՒՆ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ

Մոտենում է Հայաստանում սովետական կարգեր հաստատվելու 50-ամյա-
կը։ Մեր խմբագրության աշխատակիցը զրույց ունեցավ Հայկական ՍՍՀ թեթև
արդյունաբերության մինիստր ընկ. Ա. Ա. Գևորգյանի հետ, խնդրելով պատ-
մել մեր ընթերցողներին, թե անցած կես դարում հանրապետության թեթև
արդյունաբերությունը ինչպիսի նվաճումների է հասել։

ՀԱՐՑ.— Որո՞նք են հանրապետության թեթև արդյունաբերության նվա-
ճումները Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո:

ՊԱՏԱՍԽԱՆ.— Նախասովետական Հայաստանում 1912 թ. կային 35 կա-
շեգործարան (դաբախանա), 25 մետաքսաթելի տնայնագործական ֆաբրիկա,
330 բամբակազտիչ կետ։ Այդ, այսպես կոչված, գործարաններից ու ֆաբրի-
կաներից յուրաքանչյուրում աշխատում էին 3—5, իսկ ամենամեծերում՝ հա-
զիվ 30—40 բանվոր։ Դրանք փաստորեն մանավոր, պրիմիտիվ արհեստա-
նոցներ էին։ Գոյություն ուներ նաև տնայնագործական գորգագործություն։
Դաշնակների տիրապետության ընթացքում այդ խղճուկ արդյունաբերությունը
համարյա լիովին քայքայվեց։

Միայն Հոկտեմբերյան հեղափոխության շնորհիվ Հայաստանի էկոնոմի-
կան փրկվեց վերջնական քայքայումից։ Սովետական Հայաստանի կառավա-
րությունն իր գոյության առաջին իսկ ամիսներից ձեռնամուխ եղավ սոցիալիս-
տական արդյունաբերության, նույն թվում և թեթև արդյունաբերության ստեղծ-
մանը։

1921 թվականին ՀՍԽՀ ժողկոմխորհը և ժողտնտխորհը Ա. Մյասնիկյանի
և Ս. Լուկաշինի ստորագրությամբ ընդունեցին մի որոշում, որով պետակա-
նացվեցին մասնավոր երկու կաշվի գործարանները, ուր աշխատում էին ըն-
դամենը 80—90 բանվոր։ Սա, փաստորեն, Սովետական Հայաստանի թեթև
արդյունաբերության ստեղծման առաջին ակտն էր։ Նույն թվականին բացվում
է կոշիկի առաջին գործարանը՝ տարեկան տարբեր տեսակի 19.000 զույգ կո-
շիկի արտադրության կարողությամբ. 1922 թվականին ռուս ժողովրդի եղբայ-
րական օգնությամբ, հիմնադրվում է տեքստիլ արդյունաբերությունը։ Վ. Ի.
Լենինի ցուցումով Իվանովոյի մարզի Վիչուգա քաղաքի տեքստիլագործները
Ալեքսանդրապոլի (Լենինականի) աշխատավորներին նվիրեցին 1.600 իլիկ
ունեցող մանող մեքենաներ և 32 գործող հաստոց։ Ռուս բանվորների ուղար-
կած նամակում գրված էր. Սիրելի հայ ընկերներ, ընդունեցեք մեր համեստ

նվերը Ձեր հայրենական արդյունաբերության զարգացման համար։ Դարերով
տանջված հայ աշխատավորները թող այժմ լենինյան կուսակցության ղեկա-
վարությամբ և ռուս մեծ ժողովրդի օգնությամբ կառուցեն իրենց նոր, սոցիա-
լիստական կյանքն ու երջանիկ ապագան։

1924 թվականին Լենինականի տեքստիլագործները թողարկում են բամ-
բակյա գործվածքեղենի առաջին 94 հազար մետրը։

Հետագա տարիներին, դժվար պայմաններում, հայ ժողովուրդը հսկա-
յական ճիգեր է թափում քայքայված տնտեսությունը վերականգնելու և ար-
դյունաբերության նոր ճյուղեր ստեղծելու ասպարեզում։ Այդ աշխատանքը
ծավալվում է ինչպես պետության, այնպես էլ արհեստագործական կոոպերա-
ցիայի կողմից. վերջինս զգալի աշխատանք կատարեց նաև թեթև արդյունա-
բերության մի շարք ճյուղերի, մասնավորապես, գորգագործության զարգաց-
ման համար։

Մինչպատերազմյան հնգամյակների տարիներին հանրապետությունում
վերակառուցվում և կառուցվում են մի շարք ֆաբրիկաներ, որոնց շնորհիվ թե-
թև արդյունաբերության արտադրանքի ծավալը 1940 թ. ութ անգամ գերազան-
ցեց 1913 թ. մակարդակը։

Արդյունաբերության այս ճյուղը մեծ չափով զարգացավ Հայրենական
պատերազմից հետո, առանձնապես ընթացիկ հնգամյակում։ 1946 թվականին
մահուդի ֆաբրիկայի գործարկումով Երևանում հիմք դրվեց բրդյա գործվածք-
ների արտադրությանը։ Մի քանի տարի անց, այդ ճյուղն ստանում է մի նոր
ձեռնարկություն ևս՝ նուրբ-բրդյա գործվածքների կոմբինատը։

Հայրենական պատերազմից անմիջապես հետո լայն թափ է ստանում
տրիկոտաժի արդյունաբերությունը. հիմնադրվում են Գորիսի և Կիրովականի
ֆաբրիկաները, որոնցից երկրորդն այժմ հանրապետության թեթև արդյունա-
բերության խոշորագույն ձեռնարկություններից մեկն է։ 1953 թվականին ա-
վարտվում է մետաքսի կոմբինատի առաջին հերթի շինարարությունը։ Ընթա-
ցիկ հնգամյակի սկզբին 1965 թվականին, նախապատերազմյան 1940 թ. ար-
տադրության մակարդակը գերազանցվեց 7,5, իսկ 1913 թ.՝ 60 անգամ։

Խոշոր աշխատանք կատարվեց նոր ձեռնարկությունների ստեղծման,
գործողների վերակառուցման և ընդլայնման համար։ Արմատապես վերակա-
ռուցվեցին կարի մի շարք ֆաբրիկաներ։ 1967 թ. սկսվեց «Կրասնի շվեյնիկ»
և 4-րդ կարի ֆաբրիկաների վերակառուցումը, որի ավարտումով զգալիորեն
կավելանան այդ ձեռնարկությունների արտադրական կարողությունները, 1968
թվականին Կիրովականի կարի ֆաբրիկայի նոր արտադրական կորպուսի շա-
հագործմամբ մեծ չափով բարելավվեցին բանվորների աշխատանքային պայ-
մանները, իսկ 1969 թ. վերջում գործարկվեց Ալավերդու կարի ֆաբրիկան՝
տարեկան 2 մլն կապրոնե թիկնոցների արտադրական կարողությամբ։ 1968
թվականին կաշվի գործարանը լրիվ վերակառուցվեց ու կերպարանափոխվեց,
որի շնորհիվ դարձավ տեխնիկայի վերջին խոսքով հագեցված և արտադրական
կուլտուրայի բարձր մակարդակի վրա գտնվող միութենական ամենաառաջա-
վոր ձեռնարկություններից մեկը։

Զգալի աշխատանք կատարվեց նաև արդյունաբերության տեքստիլ ճյուղի
ձեռնարկություններում լրացուցիչ կարողությունների ավելացման համար։
1966 թ. ավարտվեց Կիրովականի տրիկոտաժի ֆաբրիկայի վերակառուցումը,
որը հնարավորություն ընձեռեց 7,7 մլն հատով ավելացնելու սպիտակեղեն
տրիկոտաժի արտադրական կարողությունը։ Նույն տարում Կամոյի տրիկոտա-



ժի ֆաբրիկայի վերակառուցմամբ կրկնապատկվեցին արտադրական կարողու-
թյունները։ 1967 թ. շահագործման հանձնվեց Սովետաշենի տրիկոտաժի ֆաբ-
րիկան՝ 4,5 մլն հատ վերնազգեստի տրիկոտաժ արտադրելու կարողությամբ։
1967 թ. Լենինականի մանվածքային ֆաբրիկայում շահագործման հանձնվեց
նոր արտադրական կորպուս՝ տարեկան 1.500 տոննա մանվածք տալու կա-
րողությամբ։ Նույն տարում ավարտվեց տեքստիլ գալանտերեայի ֆաբրիկայի
վերակառուցումը։ Այս տարի կավարտվի Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմ-
բինատի վերակառուցումը, որի շնորհիվ պատրաստի արտադրանքի թողարկ-
ման կարողությունը կհասնի 16 մլն մետրի։

Այս տարվա սկզբին գործարկվեց տրիկոտաժի 2-րդ ֆաբրիկայի արտա-
դրական նոր կորպուսը։ Աշխատանքային ազատ ռեսուրսների օգտագործման
նպատակով տրիկոտաժի ձեռնարկությունների մասնաճյուղեր կազմակերպվե-
ցին Արթիկում, Սպիտակում, Զարենցավանում, Արարատում, Թալինում և այլ-
ուր։ 1968 թ. կոշիկի «Մասիս» ֆիրման ստացավ ևս մի նոր, ժամանակակից
առաջավոր տեխնիկայով հագեցված ֆաբրիկա՝ տարեկան մեկ մլն զույգ կոշիկ
արտադրելու կարողությամբ։

Ձեռնարկված միջոցների շնորհիվ, անցած 50 տարիներին թեթև արդյու-
նաբերության արտադրանքի ընդհանուր ծավալը կաճի մոտ 90 անգամ։ 1970
թ., նախապատերազմյան 1940 թ. համեմատությամբ, ավելի կթողարկվի բո-
լոր տեսակի տրիկոտաժեղեն՝ 21, պատրաստի հագուստ՝ 18, կաշվե կոշիկ՝
17, գործվածքեղեն՝ 4,5, գուլպա նասկեղեն՝ 4,6 անգամ։ Թողարկվող արտա-
դրանքի ծավալի հսկայական աճը թեթև արդյունաբերությունը դարձրեց ժո-
ղովրդական տնտեսության կարևոր ճյուղերից մեկը։

ՀԱՐՑ.— Որպիսի՞ն է թեթև արդյունաբերության տեխնիկական վերազին-
ման մակարդակը։

ՊԱՏԱՍԽԱՆ.— Արտադրության զարգացմանը զուգահեռ, ճյուղային ար-
տադրական միավորումների կազմակերպման ճանապարհով, կատարելագործ-
վեց արտադրության կառավարումը։ Պրակտիկան ցույց տվեց, որ արտադրա-
կան միավորումները լինելով ղեկավարման ավելի արդյունավետ ձև, իրենց
լիովին արդարացնում են։

Ընթացիկ հնգամյակում թեթև արդյունաբերության զարգացման մակար-
դակը խոսում է աշխատանքի առաջավոր մեթոդների և արտադրական կարո-
ղությունների ամենուրեք առավել արդյունավետ օգտագործման մասին։
Վերջին տարիներին բավական գործ է կատարվել արտադրության տեխնիկա-
կան վերազինման, առաջավոր տեխնոլոգիայի ներդրման, արտադրապրոցես-
ների մեքենայացման և ավտոմատացման բնագավառներում։ Այժմ թեթև ար-
դյունաբերության ձեռնարկություններում աշխատում են 242 հոսքային և մե-
քենայացված հոսքային գծեր։ Հոսքային գծեր ունեն մինիստրության ձեռնար-
կությունների մեկ երրորդը, այդ թվում՝ կաշվի, կոշիկի արտադրության մեջ՝
88 տոկոսը։ Տեղադրված են 6.200 ավտոմատ և կիսաավտոմատ սարքավո-
րումներ, այդ թվում՝ ավելի քան 5.500 միավոր ավտոմատ, որը կազմում է
հանրապետության ամբողջ արդյունաբերության մեջ գործարկված ավտոմատ
սարքավորումների մոտ 67 տոկոսը։ Բացի այդ, կոմպլեքսային մեքենայաց-
ման են ենթարկվել մի քանի արտադրամասեր։ Միայն վերջին երեք տարում
ներդրված են 1950 նոր սարքավորումներ, որից 500-ը՝ ծանր և աշխատա-
տար պրոցեսները մեքենայացնելու համար։

Բարձր արտադրողականություն ունեցող սարքավորումներ են ներդրվել

Լենինականի գուլպայի, Սովետաշենի և Կիրովականի տրիկոտաժի ֆաբրիկաներում, կաշվի արտադրական միավորման մեջ, կոշիկի «Մասիս» ֆիրմայում, 1-ին, 3-րդ և 4-րդ կարի ֆաբրիկաներում և այլն։ Տրիկոտաժի և կաշվի կոշկեղենի ձեռնարկություններում նոր սարքավորումներ ու տեխնոլոգիական գծեր են տեղադրվել՝ գուլպաներ, տրիկոտաժի վերնահագուստներ, կոշկեղեն արտադրելու և կաշի մշակելու համար։ Կարի ձեռնարկություններն իրացրին նոր դասի ունիվերսալ մեքենաներ և մամլիչներ, որոնք բարելավեցին արտադրանքի որակն ու տեսքը։ Արտադրապրոցեսների մեքենայացման շնորհիվ մինիստրության ձեռնարկությունների արտադրապրոցեսների մեքենայացման մակարդակը հասավ մինչև 60, այդ թվում՝ տեքստիլ արդյունաբերության մեջ՝ մոտ 70 տոկոսի, 1965 թ. համապատասխանաբար՝ 48 և 45 տոկոսի դիմաց։

Հայկական ՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում նոր և առաջնակարգ սարքավորում ու տեխնիկա ներդնելու, աշխատատար պրոցեսները մեքենայացնելու շնորհիվ զգալիորեն բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը։ Միայն վերջին տասը տարում, մեկ աշխատողի հաշվով, աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 47 տոկոսով. գրեթե նույն մակարդակով աճել է աշխատավարձը։ Աշխատանքի արտադրողականությունն ավելի բարձրացնելու նպատակով նախատեսված է մոտ ապագայում փոխել ձեռնարկությունների հնացած սարքավորումները, ներդնել բարձր արտադրողական սարքավորումներ և տեխնոլոգիական հոսքային գծեր։

ՀԱՐՑ.— Ինչպե՞ս է լուծվում արտադրանքի ասորտիմենտի ընդլայնման հարցը:

ՊԱՏԱՍԽԱՆ.— Զգալի աշխատանքներ են կատարվել տեխնոլոգիական նոր պրոցեսների ներդրման, թողարկվող արտադրանքի ասորտիմենտի ընդլայնման և որակի լավացման նպատակով։ 1966 թ. Լենինականի գուլպայի ֆաբրիկայում կազմակերպվել է էլաստիկ մանվածքի, Կիրովականի տրիկոտաժի ֆաբրիկայում՝ ժանյակի, Սովետաշենի տրիկոտաժի ֆաբրիկայում՝ կոտոն մեքենաներով վերնազգեստի արտադրությունը։ Լենինականի գուլպայի ֆաբրիկան մասսայաբար թողարկում է կանացի ծակոտկեն և նախշած գուլպաներ, երեխայի և կանացի կալգոտկաներ։ Տեքստիլ կոմբինատում յուրացվել է փայլուն մշակումով և կայուն դրոշմած գործվածքների, իսկ Երևանի մետաքսի կոմբինատում՝ ացետատային մանրաթելից մետաքսի, ինչպես նաև աստառային գործվածքների արտադրությունը։

Կահույքի դեկորատիվ գործվածքների ֆաբրիկան թողարկում է գոբելենային գործվածքներ, որոնք արժանացել են համամիութենական գեղարվեստական-տեխնիկական խորհրդի բարձր գնահատականին։ Յուրաքանչյուր տարի արտադրության մեջ ներդրվում են 100-ից ավելի նոր հյուսվածքով և նախշերով գործվածքների, 180—200 տեսակի պատրաստի հագուստների և կոշիկների 250—300 նոր մոդելներ։ Իրենց տված լավ ու գեղեցիկ արտադրանքի համար «Կոշիկ—69» միջազգային ցուցահանդեսում «Մասիս» ֆիրմայի ձեռնարկությունները պարգևատրվեցին 9 դիպլոմներով։

Այժմ մեր ձեռնարկությունների արտադրած մանկական կոշիկները, կանացի սպիտակեղեն տրիկոտաժը, վերարկուները, գուլպաներն ու ձեռնոցները, տղամարդու վերնաշապիկներն իրենց որակով կարող են բավարարել միջազգային շուկայի պահանջները։



ՀԱՐՑ.— Ի՞նչ միջոցառումներ եք իրականացնում մշտական կադրեր ունենալու նպատակով:

ՊԱՏԱՍԽԱՆ.— Արդյունաբերության առաջընթացի հետ մեծ չափով աճել է աշխատողների թիվը։ Հանրապետության թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում ներկայումս աշխատում են 57 հազար մարդ, որը 12 անգամ ավելի է, քան 1928 թվականին։ Կոլեկտիվներում կուսակցական կազմակերպությունները և արհեստակցական միությունները մեծ աշխատանք են տանում բանվորների ու բանվորուհիների, ինժեներա-տեխնիկական աշխատողների կոմունիստական և աշխատանքային դաստիարակության նպատակով։ Աշխատանքի սոցիալիստական ձևերի կիրառումը, գիտության նվաճումների և արտադրության առաջավորների փորձի ներդրումը նպաստում են պետական առաջադրանքների կատարմանը։

Գիտության և տեխնիկայի առաջընթացը բոլոր աշխատողներին պարտավորեցնում է կատարելագործելու իրենց գիտելիքները։ Դրա համար ստեղծված են անհրաժեշտ պայմաններ։ Երևանում և Լենինականում գործում են թեթև արդյունաբերության երեկոյան տեխնիկումներ, ուր բանվորներն ու բանվորուհիներն, առանց արտադրությունից կտրվելու, ստանում են մասնագիտական տեխնիկական կրթություն։ Երևանի տեխնիկումն Իջևանում ունի իր ֆիլիալը։ «Մասիս» ֆիրմայում ստեղծված է ուսումնական կոմբինատ։ Այստեղ պարբերաբար 6-ամսյա դասընթացներ են անցնում կոշիկի արդյունաբերության աշխատողները։ Նույնպիսի կոմբինատ կա և Լենինականում։

Այժմ մեր մինիստրության արդյունաբերական ձեռնարկություններում աշխատում են մոտ 3.000 բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ստացած մարդիկ։

Աշխատավորների նյութական խրախուսանքին զուգակցվում է բարոյականը, որը բարձրացնում է մարդկանց ձեռներեցությունն արտադրության մեջ։ Հանրապետության թեթև արդյունաբերության սիստեմում աշխատողներից 6.500 հոգի պարգևատրվել են Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով, երկուսն արժանացել Սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման, 11-ին շնորհվել է վաստակավոր ինժեների, իսկ 43-ին՝ վաստակավոր ռացիոնալիզատորի կոչում։

ՀԱՐՑ.— Ի՞նչ է արվում բանվորների աշխատանքի ու կենցաղի բարելավման բնագավառում:

ՊԱՏԱՍԽԱՆ.— Արտադրությունն ընդլայնելու հետ մեկտեղ մեծ ուշադրություն է նվիրվում աշխատավորության աշխատանքային և կենցաղային պայմանների բարելավմանը։ Վերջին չորս տարվա ընթացքում վերակառուցվել է ձեռնարկությունների լուսավորման ցանցը և հիմնականում լուծվել բանվորական տեղի ու նորմալ լուսավորության հարցը։ Տեղադրված են 67 կոնդիցիոներ և 17 խոնավացնող կամերա, որի շնորհիվ 36 ձեռնարկություններում լրիվ և 21-ում՝ մասնակի ստեղծված է օդային նորմալ միջավայր։ Այդ աշխատանքները շարունակվում են նաև այժմ։ Ձեռնարկությունների մեծ մասն ունի հարմարավետ հանդերձարաններ, լողարաններ, վարսավիրանոցներ, լողավազաններ, ֆաբրիկաներում գործում են 35 բժշկական կետեր, այդ թվում՝ 22-ը՝ զանազան բժշկական կաբինետներով, կանանց հիգիենայի սենյակներ են կահավորվել 35 ձեռնարկություններում։ Մինիստրության սիստեմում գործում է 3 պրոֆիլակտորիում. այս տարի դրանց թիվը կավելանա ևս երկուսով։

Մեծ ուշադրություն է նվիրվում հասարակական սննդին։ 33 ձեռնարկու-

թյուններ ունեն ճաշարաններ, իսկ 19-ը՝ բուֆետներ: Վերջին 4 տարվա ըն-
թացքում ճաշարաններում տեղերի թիվն ավելացել է 2,5 անգամ: Շատ ձեռ-
նարկություններ կազմակերպել են սնունդն ընդունելու անկյուններ: Լենինա-
կանի գուլպայի և տրիկոտաժի ֆաբրիկաներում երկրորդ հերթի աշխատողներին
ձրի սնունդ է տրվում, բազմաթիվ ձեռնարկություններում նախաճաշի ու ճաշի
(աշխատանքի օրերին) ծախսերի զգալի մասը հոգում է ձեռնարկությունը: Մի-
նիստրության ձեռնարկություններն ունեն 23 հարմարավետ մանկապարտեզ:
Արտադրության բարձր կուլտուրայի հասնելու համար, մինիստրության
մի շարք ձեռնարկություններ հաղթող դուրս եկան Վ. Ի. Լենինի ծննդյան 100-
ամյակին նվիրված համամիութենական հասարակական ստուգատեսում: ՍՍՀՄ
թեթև արդյունաբերության մինիստրությունը և ՀԱՄԿԽ-ը կաշվի արտադրա-
կան միավորման կոլեկտիվի համար պահպանեցին «արտադրական բարձր
կուլտուրայի ձեռնարկություն» կոչումը. ձեռնարկությունը նաև պարգևատրվեց
ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի դիպլոմով: Նման կոչում և ՍՍՀՄ
թեթև արդյունաբերության մինիստրության, տեքստիլ ու թեթև արդյունաբերու-
թյան բանվորների արհմիության կենտկոմի դիպլոմ ստացան տրիկոտաժ-ձեռ-
նոցների, կահույքի-դեկորատիվ գործվածքների, Կիրովականի տրիկոտաժի
ֆաբրիկայի և «Մասիս» ֆիրմայի գլխավոր ձեռնարկության կոլեկտիվները:
ՀԱՐՑ.— Որո՞նք են թեթև արդյունաբերության մոտակա հեռանկարները:
ՊԱՏԱՍԽԱՆ.— 1975 թվականին մեր հանրապետության թեթև արդյունա-
բերության արտադրանքի ծավալի աճը կկազմի 50—60 տոկոս, որից եղած
սարքավորումների և հզորությունների ավելի լավ օգտագործման, աշխատան-
քի արտադրողականության և արտադրության տեխնիկական մակարդակի հե-
տագա բարձրացման հաշվին՝ 35—40 տոկոս: Այսպիսով, աճի մոտ 70 տոկոսը
կապահովվի ներքին ռեզերվների օգտագործմամբ: Նոր հնգամյակում գոյու-
թյուն ունեցող ճյուղերի հետագա զարգացման հետ մեկտեղ, նախատեսվում է
ստեղծել թեթև արդյունաբերության նոր ճյուղեր՝ խաղալիքների, հախճապա-
կու, տեքստիլ և կաշվե գալանտերեայի, կանանց հարդարանքի իրերի և այլն:
Մասնավորապես նախատեսվում է կառուցել մանկական խաղալիքների
գործարան Մարտունիում, հախճապակու գործարան՝ Լուսակերտում, տեքստիլ-
գալանտերեայի ֆաբրիկա՝ Աբովյանում, կարի ֆաբրիկա՝ Ղափանում, ֆուրնի-
տուրայի գործարան՝ Հոկտեմբերյանում, կաշվի գալանտերեայի ֆաբրիկա՝ Ե-
րևանում: Արմատապես կվերակառուցվեն Երևանի № 1 տրիկոտաժի և № 3
կարի, Լենինականի գուլպա-նասկեղենի և № 11 կոշիկի, ոչ գործվածքային
կտորեղենի և շատ այլ ֆաբրիկաներ: Բոլոր տեսակի կտորեղենի թողարկումը
կավելանա մոտ 20, գորգերինը՝ 47, տրիկոտաժեղենինը՝ 50, կոշկեղենինը՝ 70
տոկոսով, կարի արտադրանքինը՝ ավելի քան երկու անգամ: Կարտադրվի 10
մլն ռուբլու կաշվի գալանտերեա, այս տարվա 2,3 մլն ռուբլու դիմաց և 8 մլն
ռուբլու մանկական խաղալիք:

# Հոբելյանական ՏԱՐԵԹՎԵՐ

## ԼԵՆԻՆՅԱՆ ԳՎԱՐԴԻԱՅԻ ԱՆՎԵՀԵՐ ՄԱՐՏԻԿԸ

(Ի. Ք. ԼԱԼԱՅԱՆՑԻ ԾՆՆԴՅԱՆ ՀԱՐՅՈՒՐԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

Գ. Բ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ

ՀԳԱ թղթակից-անդամ, պրոֆեսոր



Առաջին հայ հեղափոխական մարքսիստ, կոմունիստական կուսակցության ականավոր գործիչ, Վ. Ի. Լենինի մերձավոր բարեկամ ու զինակից Իսահակ Քրիստափորի Լալայանցը պատկանում է 80-ական թվականների վերջերի և 90-ական թվականների սկզբների մարքսիստների այն սերնդին, որի շարքերից դուրս եկան բոլշևիկյան կուսակցության նշանավոր գործիչները՝ Մ. Ն. Լյադովը, Ա. Վ. Լունաչարսկին, Լ. Բ. Կրասինը, Գ. Մ. Կրժիժանովսկին, Վ. Կ. Կուրնատովսկին, Վ. Լ. Շանցերը (Մարատ), Ա. Գ. Շլիխտերը, Ն. Ա. Սեմաշկոն, Պ. Ի. Ստուչկան, Մ. Ֆ. Վլադիմիրսկին, Վ. Վ. Վորովսկին, Մ. Գ. Ցխակայան, Ա. Դ. Ցյուրուպան և շատ ուրիշներ:

Նրանք ռուսաստանյան առաջին մարքսիստներն էին, Լենինի ամենահին զինակիցները, լենինյան գվարդիայի այն ջոկատը, որը ձեռնարկեց կուսակցության ստեղծման պատմական գործը: Ռումբերի ու գնդակների տարափի տակ, մեծ զոհերի գնով նրանք արթնացող պրոլետարիատի բոլոր ուժերը միացրին երկրի հեղափոխական խավերին, ստեղծեցին ամրակուռ մի կուսակցություն՝ ցարական ամրոցը խորտակելու համար:

Ի. Լալայանցն այդ սերնդի առաջին հայ գվարդիականն էր, Լենինի զինակիցը, առաջին հայ լենինյան-իսկրայականն ու պրոլետարական անվեհեր ինտերնացիոնալիստը:

Ի. Լալայանցը հայ ժողովրդի այն մեծ զավակն էր, որն իր օրինակով առաջինը ցույց տվեց, որ ինչպես Ռուսաստանի բոլոր ճնշված ժողովուրդների, այնպես էլ հայ ժողովրդի փրկության ուղին ոչ թե բուրժուական նացիոնալիզմն է, այլ պրոլետարական ինտերնացիոնալիզմը, որ հայ աշխատավորները կարող են հասնել իրենց սոցիալական ու ազգային ազատագրությանը՝ կանգնելով Լենինի դրոշի տակ, միացնելով իրենց պայքարը ռուս ժողովրդի հեղափոխական պայքարին: Այս տեսակետից Ի. Լալայանցի քաղաքական պայքարի ապրելակերպ ... 

լայանցի հեղափոխական բազմակողմանի գործունեությունը։ Նրա երկերում բազմիցս հիշատակվում է Լալայանցի անունը՝ դրական բնորոշումներով։ Նման պատվի շատերը չէ, որ արժանացել են։

Սակայն, ցավոք, Լալայանցի վաստակը և նրան տրված գնահատականը համահնչուն չեն։ Չնայած փաստաթղթերի առատությանը, նրա մասին տակավին չկան ամբողջական ուսումնասիրություններ՝ գրքեր, փաստաթղթերի ու նյութերի ժողովածուներ։ Եվ դա հասկանալի է. Լալայանցի մահից քիչ անց սկսված կամայականությունները ստվերի տակ թողեցին շատ ականավոր հեղափոխականների, որոնց բարի անունը լիովին վերականգնելու համար ժամանակ, համբերություն և հետևողականություն էր պետք։

Նրա մասին նյութերը պետք է փնտրել Հյուսիսային Կովկասում և Մոսկվայում, Պետերբուրգում, Կազանում, Եկատերինոսլավում, Թբիլիսիում, Սամարայում, Օդեսայում, Լոնդոնում, Ժնևում, Տամերֆորսում, Իրկուտսկում և այլ քաղաքներում։

Լալայանցը չի եղել Հայաստանում, չի տեսել մեր քաղաքներն ու գյուղերը, մեր լեռներն ու կիրճերը, մեր դաշտերն ու անտառները։ Չի տեսել ոչ քարաստանը, ոչ էլ վարդաստանը։ Այդ տեսակետից նա բացառություն չի կազմում։ Դա էլ իր պատճառներն ունի։ Դարեր շարունակ բախտը մեզ չի ժպտացել։ Գնալով փոքրացել է Հայաստանի տերիտորիան, և նրա շատ զավակներ հպարտ բազեների նման ճախրել են երկնքում՝ հյուսիսային աստղի տակ փնտրելով իրենց հայրենի երկրի երջանկության ուղիները։

Փնտրեցին ու գտան... Եվ ժողովուրդն էլ նրանց չմոռացավ, սիրեց երախտագիտության զգացումով ու իր սրտում վառ է պահում նրանց հիշատակը, հավատարիմ նրանց պատգամներին, առաջ է տանում մեծ գործը, հպարտանում իր իմաստուն նախնիներով։

* * *

ԼԱԼԱՅԱՆՑԸ ծնվել է 1870 թ. օգոստոսի 5-ին (հուլիսի 24), Թերեքի մարզի Ղզլար քաղաքում (այժմ Դաղստանի ԻՍՍՀ)։ Սկզբնական կրթությունն ստանում է Ղզլարի քաղաքային դպրոցում, ապա ուսումնառությունը շարունակում Թիֆլիսի և Կազանի ռեալական ուսումնարաններում։ Կազանում էլ տակավին պատանի Իսահակը 1888-ին ներգրավվում է Ն. Ե. Ֆեդոսեևի մարքսիստական խմբակը և ջանասիրաբար ուսումնասիրում մարքսիստական գրականությունը։ Մեկ տարի հետո նա ձերբակալվում է և արտաքսվում Կազանից։

Դա 1889-ին էր։ Այդ օրվանից պրոֆեսիոնալ հեղափոխականի դժվարին, դեգերումներով ու փորձություններով լի կյանք է սկսվում Ի. Լալայանցի համար։ Լինում է Ռուսաստանի տարբեր քաղաքներում (Նիժնի Նովգորոդ, Սամարա և այլն), մասնակցում բանվորական հեղափոխական շարժումներին, սոցիալ-դեմոկրատական պրոպագանդային։

Այնուհետև Ի. Լալայանցը նորից է այցելում Կազան և ծավալում հեղափոխական պրոպագանդիստական լայն աշխատանք՝ մարքսիզմի ամենահաղթ գաղափարները ներարկելով ուսանողությանը։

Ցարական ժանդարմերիան, սակայն, քնած չէր։ Կազան տեղափոխվելուց մեկ տարի անց՝ 1893-ին, երիտասարդ հեղափոխականն աքսորվում է Սամարա։

Սամարան բեկումնային նշանակություն է ունենում Ի. Լալայանցի համար։ Այստեղ նա ծանոթանում է Վ. Ի. Լենինի հետ, դառնում նրա ղեկավարած մարքսիստական անլեգալ խմբակի ակտիվ անդամներից մեկը, սերտ կապեր հաստատում տեղի մարքսիստների, մասնավորապես հայտնի հեղափոխական Ա. Պ. Սկլյարենկոյի հետ։ Լալայանցը հետագայում հետաքրքրական հիշողություն է թողել Վ. Ի. Լենինի մասին։ Այդ 23-ամյա մարդու մեջ,— գրել է նա,— զարմանալիորեն զուգորդվում էին մի կողմից՝ պարզությունը, զգայուն վերաբերմունքը, կենսուրախությունն ու կրքոտությունը, մյուս կողմից՝ գերազանց լրջությունը, գիտելիքների խորությունը, տրամաբանական անողոք հետևողականությունը, դատողության և սահմանումների պարզորոշությունն ու հստակությունը։

Ի. Լալայանցին, սակայն, վիճակված չէր հանգիստ շարունակել հեղափոխական գործունեությունը։ Շուտով՝ 1894-ին, նա ձերբակալվում է և նետվում Պետերբուրգի բանտը։ Այնտեղից դուրս է գալիս հաջորդ տարվա ապրիլին և Վ. Ի. Լենինի հանձնարարությամբ մեկնում Պենզա, շարունակում հեղափոխական գործունեությունը։

Նույն թվականի սեպտեմբերին նրան տեսնում ենք Եկատերինոսլավ քաղաքում։ Լալայանցն այստեղ է տեղափոխվում կնոջ՝ Պ. Ի. Լալայանց-Կուլյաբկոյի հետ։ Եկատերինոսլավյան շրջանը Ի. Լալայանցի հեղափոխական գործունեության պատմության փառավոր էջերից է։ Այստեղ տեղափոխվելու առաջին իսկ օրից նա եռանդագին գործունեություն է ծավալում, Ի. Վ. Բաբուշկինի և ուրիշ հեղափոխականների հետ զբաղվում տեղի մարքսիստական խմբակների վերակազմմամբ ու միավորմամբ։ Մե՛ծ է Լալայանցի ավանդը Եկատերինոսլավի «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միության» ստեղծման և



կուսակցության առաջին համագումարի նախապատրաստման գործում։ Ի. Վ. Բաբուշկինի, Գ. Ի. Պետրովսկու, Մ. Գ. Ցխակայայի, Կ. Ա. Պետրուսովիչի, Պ. Ա. Մորոզովի և ուրիշների հետ միասին նա հմտորեն ղեկավարում է «Պայքարի միությունը», ակտիվ դեր խաղում պրոլետարիատին հեղափոխական գոտեմարտերի նախապատրաստելու գործում։ Ի. Լալայանցի հեղափոխական գործունեության մեջ կարևոր տեղ է բռնում «Յուժնի Ռաբոչի» սոցիալ-դեմոկրատական անլեգալ լրագրի ստեղծումն ու լույս ընծայումը։ Այն Լալայանցի ու Բաբուշկինի ջանքերի արգասիքն էր։ Խոշոր է այդ լրագրի խաղացած դերը Ռուսաստանի հարավի պրոլետարիատի հեղափոխական շարժման վերելքի գործում։

Երբ Վ. Ի. Լենինը վերադառնում է սիբիրյան աքսորավայրից, Մոսկվայում հանդիպում է Լալայանցին և նրա հետ քննարկում սոցիալ-դեմոկրատական աշխատանքի հրատապ հարցեր։ «Իսկրա» թերթի ստեղծման և կուսակցությունը նրա շուրջը համախմբելու լենինյան կանխագծումները ջերմ պաշտպանության է արժանանում Լալայանցի կողմից։

1900 թվականին Ի. Լալայանցը շրջագայում է Ռուսաստանի մի շարք քաղաքներում և ակտիվ աշխատանք ծավալում կուսակցության երկրորդ համագումարի նախապատրաստման համար։ Օխրանկան հանգիստ չի տալիս Լալայանցին, քայլ առ քայլ հետևում է նրան և նույն թվականի ապրիլին ձերբակալում։ Աննկուն հեղափոխականն սկզբում կալանավորվում է Կիևում ու Մոսկվայում, ապա՝ 1902 թ. մարտին աքսորվում Արևելյան Սիբիր։

Բայց Լալայանցն աքսորավայր չի հասնում։ Վ. Ի. Լենինը եռանդուն միջոցներ է ձեռնարկում և կազմակերպում նրա փախուստն արտասահման։ 1902-ի հուլիսին նա արդեն Բեռլինում էր։

Հետագայում Լալայանցը տեղափոխվում է Ժնև։ Դա Լենինի ցանկությունն էր, որովհետև «Իսկրայի» խմբագրությունը պետք է տեղափոխվեր այնտեղ։ Ժնևում Լալայանցի համար բացվում է գործունեության լայն ասպարեզ։ Նրան ընդունում են «Ռուսական հեղափոխական սոցիալ-դեմոկրատիայի արտասահմանյան լիգայի» անդամ և ներգրավում «Իսկրայի» կազմակերպմանն աջակցող Ժնևի խմբի մեջ։ Լենինը և կուսակցության մյուս գործիչները բացառիկ վստահությամբ էին վերաբերվում Լալայանցին, նրան է հանձնարարվում «Իսկրայի» տպարանի կառավարումը, նա է ղեկավարում ռուս սովորող երիտասարդության խմբակը և «Իսկրային» աջակցող խմբերը։ Այդպիսի վստահության ցայտուն օրինակ է նաև հետևյալ փաստը։ Երբ հայ սոցիալ-դեմոկրատների միությունը Ս. Գ. Շահումյանի, Բ. Մ. Կնունյանցի, Ա. Գ. Զուրաբյանի ջանքերով ստեղծում է իր օրգանը՝ «Պրոլետարիատ» թերթը, Վ. Ի. Լենինը հատուկ նամակով խնդրում է Լալայանցին իրեն անհրաժեշտ նյութերը հայերենից թարգմանել և ուղարկել Լոնդոն։ Թարգմանած նյութերի հիման վրա Լենինը հոդված է գրում և տպագրում «Իսկրայի» № 33-ում։

Կուսակցության երկրորդ համագումարից հետո ևս Լալայանցին տրվում են մի շարք պատասխանատու հանձնարարություններ։ Այդ ժամանակ նա կուսակցության Կենտկոմի գործակալն էր Ռուսաստանում և Լենինի խնդրանքով հարավային կոմիտեներին ծանոթացնում էր երկրորդ համագումարի որոշումներին, պարզաբանում համագումարում Լենինի դիրքավորումը։ Մյուս ականավոր հեղափոխականների հետ միասին, նա վճռական պայքար է մղում մենշևիկների պառակտողական, քայքայիչ գործունեության դեմ, ցույց տալիս դրա վնասակարությունը կուսակցության ընդհանուր գործի, բանվորական հեղափոխական շարժման համար։

1904 թվականին Ի. Լալայանցը հեղափոխական ակտիվ գործունեություն է ծավալում Ռուսաստանի հարավում։ Վ. Վ. Վորովսկու, Կ. Օ. Լևիցկու, Պ. Ի. Կուլյաբկոյի հետ նա ստեղծում է ՌՍԴԲԿ Կենտկոմի հարավային բյուրոն, որի ղեկավարության տակ են անցնում Օդեսայի, Եկատերինոսլավի, Նիկոլաևի սոցիալ-դեմոկրատական կոմիտեները։ Մեծ է հարավային բյուրոյի ավանդը կուսակցության երրորդ համագումարը նախապատրաստելու գործում։ Լալայանցի միջոցով ծանոթանալով երրորդ համագումար հրավիրելու մասին Օդեսայում կազմված բանաձևին՝ Վ. Ի. Լենինը ջերմ հավանություն է տալիս նրան, մի քանի անգամ կրկնելով՝ sehr richtig (միանգամայն ճիշտ է)։

1904-ի ամռանը Լալայանցին ձերբակալում և հինգ տարով աքսորում են Վոլոգդայի նահանգ։ Շուտով կուսակցության հավատարիմ զավակը փախչում է Պետերբուրգ և նետվում ռուսական առաջին հեղափոխության հորձանուտը։

Վ. Ի. Լենինը բարձր էր գնահատում Ի. Լալայանցի կազմակերպչական ունակությունները։ Կենտկոմին հղած նամակում Լալայանցին վստահորեն երաշխավորելով որպես Կենտկոմի գործակալ՝ Լենինը նրա մասին գրում էր, որ Օդեսայում և Հարավային բյուրոյում դրսևորել է կազմակերպչական արտասովոր ունակություններ, բոլորի կարծիքով հիանալի է կազմակերպել կենդանի գործը, եղել է տեղական ամբողջ աշխատանքի ոգին... Վերջապես, նա չափազանց կայուն, սկզբունքային մարդ է։

Այդպիսի արձագանքների համար է, որ Վ. Ի. Լենինի անմիջական նախաձեռնությամբ, Ի. Լալայանցը կոոպտացիայի կարգով մտնում է բոլշևիկյան Կենտկոմի կազմում։

Բազմաբովանդակ է Ի. Լալայանցի հեղափոխական գործունեությունը 1906 թվականին։ Այդ ժամանակ նա բոլշևիկների կողմից ընտրվել էր կուսակցության միացյալ Կենտկոմի կազմում և ակտիվ աշխատանք էր ծավալում ՌՍԴԲԿ զինվորական կազմակերպություններում։ Նրան ճանաչում էին որպես կուսակցության Պետերբուրգի կազմակերպության ականավոր գործիչ։ Նա այդ կազմակերպության կոմիտեի և բոլշևիկների գրական հանձնաժողովի անդամ էր, ինչպես նաև «Կազարմա» զինվորական լրագրի խմբագիրներից մեկը։

Ռուսական առաջին հեղափոխության շրջանում Լալայանցի ակտիվ գործունեության մասին հին կուսակցական Յա. Ի. Վիշնյակը գրել է, որ 1906 թվականին ինքն աշխատում էր Լալայանցի ղեկավարությամբ՝ Պետերբուրգում։ Այդ կազմակերպության բոլոր մասնակիցները սիրում և հարգում էին Նիկոլայ Իվանովիչ Կլինկին (Լալայանցի այն ժամանակվա կուսակցական ծածկանունը), որը մեծ ուշադրություն էր նվիրում երիտասարդության ինքնակրթությանը։ Մի անգամ նա ինձ առաջարկեց գնալ պրոպագանդիստների համաքաղաքային ժողովին, որն անցկացնում էր Լենինը։

Ի. Լալայանցի անմիջական նախաձեռնությամբ 1906 թվականին Տամերֆորս քաղաքում գումարվում է հեղափոխական ռազմա-մարտական կազմակերպությունների առաջին կոնֆերանսը։ Լալայանցը, որը կոնֆերանսի նախագահն էր, զեկուցում է զինված ապստամբության մեջ կուսակցության դերի մասին։ Լենինը դրական գնահատական է տալիս կոնֆերանսի աշխատանքին։

1906 թ. դեկտեմբերին Ի. Լալայանցը ձերբակալվում է և, երկու տարվա կալանքից հետո, դատապարտվում 6 տարվա տաժանակրության։ Պատիժը կրում է Պետերբուրգի բանտում և Շլիսելբուրգի ամրոցում։ Իսկ 1913-ին ցմահ աքսորվում է Արևելյան Սիբիր։ 1914 թվականից Ի. Լալայանցը բնակություն է հաստատում Իրկուտսկում։

Իր ինքնակենսագրության մեջ Լալայանցը նշել է, որ ձերբակալվել է առաջին անգամ՝ 19 տարեկան հասակում, երկրորդ անգամ՝ 22, երրորդ՝ 29, չորրորդ՝ 34, հինգերորդ՝ 36 տարեկանում, շղթայակիր է եղել 10 ամիս, մինչև 1917 թ. բանտարկվել է 11 տարի։

* * *

ՀԱՃԱԽԱԿԻ հանդիպումներ ունենալով Լալայանցի հետ՝ Վ. Ի. Լենինը ուղղություն էր տալիս նրա գործունեությանը, ըստ արժանվույն գնահատում այն։ Սակայն Լալայանցի վերջին ձերբակալությունից հետո նրանց կապերն ընդհատվում են մինչև 1921 թվականը։

* * *

ՆԿԱՏԻ ունենալով, որ Լալայանցի կյանքի վերջին տարիները շատ թույլ և հակասական են լուսաբանված մեր գրականության մեջ, հարկ ենք համարում խոսել այդ մասին փաստաթղթերի լեզվով։

1918 թ. Իրկուտսկում հանդիպելով Լալայանցին, նրա կուսակցական հին ընկեր Յա. Ի. Վիշնյակը, որն այդ ժամանակ զինվորական պատասխանատու աշխատանքի էր Սիբիրում, մտերմաբար և խոր հուզմունքով զրուցում է նրա հետ։ Վերադառնալով Մոսկվա՝ նա 1921-ի սկզբին այդ մասին նամակով հայտնում է Լենինին և նշում, որ Լալայանցը կենդանի է, առողջ, աշխատում է Իրկուտսկի կոոպերատիվի վարչությունում և պատահական պատճառներով դուրս է մնացել կուսակցությունից։ Վիշնյակն այնուհետև եզրակացնում է, որ նրան կարելի է վերադարձնել կուսակցության շարքերը սովետական աշխատանքի միջոցով, նամանավանդ, որ Լալայանցը ոչ միայն չի հարել և ոչ մի թշնամական խմբավորման, այլ նրանց բոլորին վերաբերվել է բացասաբար և անհաշտ։

Անմիջապես կարդալով Վիշնյակի նամակը՝ Լենինը մակագրում է. «Վիշնյակը Լալայանցի մասին։ 5/9. 1921 թ.» և նույն օրը, Վիշնյակին գրած նամակում շնորհակալություն հայտնելով Լալայանցի մասին տված տեղեկությունների համար, խնդրում է մանրամասնորեն գրել Սիբիրում նրա կյանքի ու հետագա աշխատանքի հնարավորությունների մասին։

Վիշնյակը կատարում է Լենինի հանձնարարությունը՝ 1921 թ. սեպտեմբերի 10-ին նրան պատասխանում է ծավալուն նամակով, որում ընդգծում է, որ Իրկուտսկում Լալայանցը մնացել է որպես գաղափարական, կարծրաքար բոլշևիկ, ամեն մի պատրանքի թշնամի, ինչպես նախկինում, այնպես էլ այժմ նա չի հանդուրժում ոչ էսեռական, ոչ էլ մենշևիկյան շաղակրատանքն ու տատանումները։ Բոլշևիկների փրակցիայից նա երբեք դուրս չի եկել, բայց Ռուսաստանի կոմունիստական կուսակցությանն էլ չի հարել, տեղեկացնում է Վիշնյակը և կարծիք հայտնում, որ լավ կլինի Լալայանցին տեղավորել Մոսկվայում, կենտրոնական հիմնարկներից մեկում և օգնել, որ նա դուրս գա Իրկուտսկից՝ ընտանիքի հետ միասին։



Վիշնյակի նամակի վրա Վ. Ի. Լենինը գրում է.

«Ընկ. Ստալին. Խնդրում եմ, աչքի անցկացնեք և, եթե կարելի է, հարցրեք հին կուսակցականներից ոմանց, գուցե հայերին։ **Ես Լալայանցին ճանաչում եմ 1890-ական թվականներից, իբրև մարքսիստի և հետո՝ բոլշևիկի:** Անկասկած, նվիրված հեղափոխական է, որին պետք է օգտագործել չնայած քաղաքական տարաձայնություններին» (Երկեր, հ. 45, էջ 353)։

Լենինի երկերի ռուսերեն հրատարակության 53-րդ հատորում (էջ 438) այս նամակի մասին ծանոթագրության մեջ ասված է.

«Խոսելով քաղաքական տարաձայնությունների մասին, Վ. Ի. Լենինը նկատի ուներ Յա. Ի. Վիշնյակի նամակի հետևյալ տեղը. «Իրկուտսկի ազատագրումից հետո ընկ. Լալայանցն աշխատում էր իրեն հաշիվ տալ այն մասին, թե ինչ է տեղի ունեցել Սովետական Ռուսաստանում այդ տարիներին, և հասկանալ ՌԿԿ-ի տակտիկան։ Նա հաճախ էր ինձ քաղվածք բերում Ստոկհոլմի համագումարում Ձեր զեկուցման ագրարային հարցին վերաբերող մասը, որտեղ Դուք ցույց եք տալիս, որ Ռուսաստանում հեղափոխության հաղթանակից հետո ռեստավրացիայի դեմ միակ երաշխիքը դա սոցիալիստական հեղափոխությունն է Արևմուտքում։ Մեր կտրվածությունը, մեր հզորության անհամապատասխանությունը տնտեսական հիմքի հետ և մի շարք այլ հարցեր, որոնց պատասխանը նա դեռ չի գտել, նրան խանգարում են մտնել ՌԿԿ-ի մեջ»։

Յա. Ի. Վիշնյակի նամակի վրա կա նաև Ի. Վ. Ստալինի պատասխանը. «Ես նույնպես կողմնակից եմ այն բանին, որպեսզի Լալայանցը հրավիրվի Մոսկվայում աշխատելու»։

Վ. Ի. Լենինի ցուցումով Լալայանցն անմիջապես հրավիրվում է Մոսկվա, նրա հետ զրույց է ունենում Ստալինը, ապա տեղավորում են Կրեմլում, հարմարավետ բնակարանում։ 1922 թ. հունվարի 13-ին Լենինը և Լալայանցը հանդիպում են Կրեմլում, Լենինի աշխատասենյակում։

Զրույցից հետո Լալայանցը Վիշնյակին պատմում է. «Եկավ սպասված օրը— 1922 թվականի հունվարի 13-ը։ Լենինի ընդունարանը լեփլեցուն է— շրջանների ներկայացուցիչներ, զինվորականներ, դիվանագետներ և ուրիշներ։ Սակայն, հարկ չեղավ երկար սպասելու։ Հենց որ հերթական այցելուն դուրս եկավ, կանչեցին Լալայանցին։ Հին բարեկամները, վերջապես հանդիպեցին, համբուրվեցին, սեղմելով միմյանց ձեռքը, ուշադիր նայում էին իրար, յուրաքանչյուրն աշխատում էր իր բարեկամի դեմքի արտահայտության մեջ գտնել շատ հարցերի պատասխանը։

Վերհիշեցին անցած տարիները, Սամարան, «գարեջրախմության դոկտորին» (Պոպով-Սկլյարենկոյին), համատեղ աշխատանքի առաջին էտապներ։ Ապա Իլյիչը սկսեց հարցափորձ անել առողջության, Իրկուտսկում վարած կյանքի մասին, թե նա ինչպես է անցել ճանապարհը։ Իմանալով, որ Լալայանցի բագաժը դեռ չի ստացվել, Իլյիչը իր մոտ ինչ-որ նշում կատարեց[1]։

Իլյիչը շատ էր հետաքրքրվում, թե տեղերում ինչպես են ընդունում կուսակցության դիրեկտիվները և ինչպես են կատարվում կուսակցության կարգադրությունները։ Լալայանցը պատմեց Իրկուտսկում դիրեկտիվների և որոշումների աղավաղման իրեն հայտնի դեպքերը։ Իլյիչը սրտանց քրքջում էր՝ ասելով. «Ահա թե ի՜նչ»։

Իլյիչը Լալայանցին չէր հարցնում, թե ինչու է նա կուսակցությունից դուրս մնացել։ Եվ առաջին կերպ խուսափում էր այն ամենից, որ կարող էր ուղղակի կամ անուղղակի դիպչել Լալայանցին և նրան դնել անհարմար դրության մեջ։ Զրույցը տևեց մոտ երկու ժամ։ Բաժանվելով, Իլյիչն ասաց, որ որոշ ժամանակ անց կշարունակի խոսակցությունը նրա հետ»։

Նույն օրը Լենինը Համառուսաստանյան Կենտգործկոմի նախագահ Աբել Ենուկիձեին հանձնարարում է օգնություն կազմակերպել Լալայանցին և նրա ընտանիքին։ Միաժամանակ Լենինը անձամբ զբաղվում է այդ հարցով։ Կարգադրություններ է անում բնակարան հատկացնել նրան, կցել համապատասխան ճաշարանի, հոգալ ընտանիքի տեղափոխության մասին։ Շուտով Լալայանցը մեկնում է Իրկուտսկ և ընտանիքը տեղափոխում Մոսկվա, ուր նրանց սկզբում սենյակ են տրամադրում «Նացիոնալ» հյուրանոցում։

1922 թվականից Լալայանցն աշխատում էր սկզբում ՌՍՖՍՀ-ի պետպլանում, իսկ ապա լուսավորության ժողովրդական կոմիսարիատի քաղաքական լուսավորության գլխավոր վարչությունում։ Լալայանցի նկատմամբ մեծ հոգատարություն են ցուցաբերում Ն. Կ. Կրուպսկայան, Մ. Ի. Ուլյանովան, Դ. Ի. Ուլյանովը, Յա. Ի. Վիշնյակը, Ն. Լ. Մեշչերյակովը և շատ այլ հին բոլշևիկներ, որոնք լավ գիտեին անցնող հեղափոխականին ընդհատակի ծանր տարիներից։ Լալայանցը բարեխղճությամբ է կատարում ՀամԿ(բ)Կ Կենտկոմին կից Լենինի

[1] *Լալայանցի հեռանալուց անմիջապես հետո Իլյիչը կարգադրում է անհապաղ գտնել կորցրած իրերը և հասցնել Լալայանցին։ Մի քանի օր անց իրերը լրիվ գտնվում են և հանձնվում ըստ պատկանելույն։*

# ՀՌԵՏՈՐԱԿԱՆ ԱՐՎԵՍՏԻ ԻՄԱՑԱԲԱՆԱԿԱՆ ԲՆՈՒՅԹԸ

Ս. Բ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

Հռետորության տեսական հիմնավորմանը ձեռնամուխ է եղել Հին աշխարհի մեծ փիլիսոփա Արիստոտելը: Հռետորության նկատմամբ փիլիսոփայական մոտեցումը նոր ձևով է դրսևորվել վերածննդի շրջանում: Հռետորությունն այն բարդ բազմատարր երևույթներից է, որի էությունը հնարավոր է բացահայտել, եթե այն քննարկվի ինչպես պատմական, սոցիալ-դասակարգային, այնպես էլ իմացաբանական-տրամաբանական առումներով:

Տվյալ հոդվածում քննարկվում են հռետորության հետ առնչվող այն փիլիսոփայական հարցերը, որոնք կարող են լույս սփռել հռետորության իմացաբանական բնույթի վրա:

Ինչպես պատմականորեն, այնպես էլ ըստ էության հռետորությունն առնչություն ունի ճշմարտության և, համապատասխանաբար, կեղծիքի պրոբլեմի հետ: Հռետորը միշտ էլ ցանկանում է որևէ միտք դարձնել համոզեցուցիչ, ինչ ինքը գիտե հաղորդել ուրիշներին: Այս դեպքում կարևորն այն հարցի պարզաբանումն է, թե հռետորությունն ի՞նչ չափով և ինչպիսի՞ առնչություն ունի ճշմարտության պրոբլեմի հետ:

Հռետորության և ճշմարտության փոխհարաբերությունը հստակ քննելու նպատակով նախ պարզենք, թե ճշմարտությունն ինչպես է առնչվում հռետորության հետ: Եթե ողջամտությամբ օժտված, բայց փիլիսոփայությանն անիրազեկ մարդուն հարցնենք, թե ճշմարիտ է, որ դրսում անձրևում է, ապա հավանաբար այս հարցին պատասխանելու համար կփորձի մոտենալ պատուհանին, նայել դուրս և ըստ այդմ պատասխանել: Ըստ էության դա առողջ բանականության տեսակետն է ճշմարտության նկատմամբ: Յուրաքանչյուր մարդ, որը փիլիսոփա չէ և միևնույն ժամանակ զուրկ չէ առողջ բանականությունից, որևէ մտքի, որևէ դրույթի ճշմարտությունը պարզելու համար վերջինս համեմատում է իրերի փաստական վիճակի հետ: Եվ եթե այդ միտքը համապատասխանում է իրականությանը, ապա նա գտնում է, որ այն ճշմարիտ է և հակառակը:

Ըստ էության այս տեսակետը դարձել է ճշմարտության վերաբերյալ մատերիալիստական ուսմունքի հիմքը:

Հիշենք Արիստոտելին, որը չնայած իմացաբանական շատ խնդիրներում տատանվում էր իդեալիզմի և մատերիալիզմի միջև, սակայն այն հարցին, թե ինչ է ճշմարտությունը, հիմնականում տալիս էր մատերիալիստական պատասխան: Այդ է վկայում ճշմարտությանը տված նրա հետևյալ բացատրությունը. «...Իրավացի է նա, ով անջատվածը համարում է անջատված և միացածը՝ միացած, և մոլորության մեջ է նա, ում կարծիքը հակադիր է իրական հանգամանքներին... Պետք է նկատի ունենալ, որ դու սպիտակ ես ոչ թե այն պատճառով, որ մենք քեզ ճիշտ կերպով սպիտակ ենք համարում, այլ (հակառակը), այն պատճառով, որ դու սպիտակ ես, մենք՝ այդ հաստատողներս, ճշմարիտ ենք» (Аристотель. Метафизика. М.-Л., Соцэкгиз, 1934, стр. 162):

Այս արդեն փիլիսոփայական ըմբռնում է, ճշմարտության փիլիսոփայական ընդհանրացում: Արիստոտելյան այս տեսությունը հաճախ անվանվում է կորեսպոնդենցիայի կամ համապատասխանության տեսություն: Համապատասխանության տեսության համար բնորոշն այն է, որ ճշմարտությունը համարվում է մտքի համապատասխանությունն իրականությանը:

Հետևողական մատերիալիզմի կամ դիալեկտիկական մատերիալիզմի տեսակետով մտքի համապատասխանությունն իրականությանը նշանակում է օբյեկտիվ, նյութական իրականության արտացոլումը գիտակցության մեջ մտքերի միջոցով: Մինչդեռ իդեալիզմի տարբեր երանգները ճշմարտության հարցում համապատասխանության տեսությունը մեկնաբանում են որպես մտքի համապատասխանությունն իդեաներին, գաղափարներին (օբյեկտիվ իդեալիզմ) կամ էլ մեր վերապրումների, մեր զգացմունքների հավաքածուներին (սուբյեկտիվ իդեալիզմ):

Ճշմարտության փիլիսոփայական քննարկման նման էքսկուրսն ամենևին էլ ինքնանպատակ չէ: Այն կոչված է օգնելու քննարկվող հարցի հետևյալ կարևոր առումը հասկանալուն: Երբ հռետորն առաջադրում է որևէ դրույթ և խոսում է ճշմարտության անունից կամ էլ իրոք ցանկանում է բացահայտել ճշմարտությունը, ապա հաճախ նա վերանում է հարցի փիլիսոփայական կողմից: Հռետորության գործնական կիրառման տեսակետից կարևորը երբեմն այն չէ, թե ճշմարտության ինչպիսի համապատասխանության մասին է խոսքը, այլ այն, որ երկու դեպքում էլ հարցը վերաբերում է մտքերի համապատասխանության ինչ-որ իրավիճակի: Միայն հարցի փիլիսոփայական քննարկմանը կարող է հետաքրքրել, թե ինչ է ներկայացնում այդ իրավիճակը: Ուստի կարելի է նկատել, որ երբ հռետորն առաջադրում է այն դրույթը, թե միտքը պետք է համապատասխանի փաստական իրավիճակին, ապա պետք է ենթադրել, որ կարելի է ինչ որ որոշակի սահմաններում վերանալ հարցի փիլիսոփայական կողմից և ասել, թե հռետորը ձգտում է ճշմարտության:

Ուշադրություն դարձնենք նաև հետևյալ կարևոր պարզաբանման վրա: Հռետորությունը գործում է կենդանի խոսակցական լեզվով և երբ խոսում ենք հռետորության ու ճշմարտության փոխհարաբերության պրոբլեմի մասին, պետք է նկատի ունենանք փաստական և ոչ թե տրամաբանական ճշմարտությունը: Հայտնի է, որ արիստոտելյան տրամաբանությունը որպես ձևական տրամաբանություն, այնուամենայնիվ գործ ունի կենդանի խոսակցական լեզվի հետ: Հռետորը, առաջադրելով որևէ դրույթ և ցանկանալով ապացուցել դրա ճշմարտությունը, անպայման պետք է ձգտի անթերի տրամաբանական փաստարկման: Նա պետք է օգտագործի ձևական-տրամաբանական տեսակետից անաղարտ դատողություններ և անաղարտ մտահանգումներ: Այս իմաստով հռետորի խոսքը պետք է լինի կանոնավոր: Դժվար է հավատալ հռետորին, որը տրամաբանական սխալներ է կատարում, հենց այն պատճառով, որ նվազ է նրա տրամաբանական կուլտուրան: Չնայած «կանոնավորություն» հասկացությունը փաստորեն առնչվում է «տրամաբանական ճշմարտություն» հասկացության հետ, այնուամենայնիվ պետք է տվյալ հարցում տարբերակված մոտեցում ցուցաբերել: Երբ կանոնավորությունը կիրառվում է կենդանի խոսակցական լեզվի հիման վրա ըստեղծված տրամաբանական կշռադատություններում, ապա այն բոլորովին այլ իմաստ ունի, քան այն դեպքում, երբ կանոնավորությունը վերաբերում է տրամաբանական ճշմարտությանը: Վերջինս կիրառվում է ձևականացված համակարգերում, որոնց համար բնորոշն այն է, որ դրանք ստեղծվում են արհեստական լեզուների հիմքի վրա: Այսպիսով, երբ խոսում ենք հռետորության մասին, նկատի ունենք ճշմարտությունը որպես փաստական ճշմարտություն և կանոնավորությունը, որը, անշուշտ, առնչություն ունի ճշմարտության հետ: Տեղին է հիշել Էնգելսի խոսքերն այն մասին, որ երբ մեր նախադրյալները ճշմարիտ են, և մենք դրանց նկատմամբ ճիշտ (կանոնավոր) ենք կիրառում տրամաբանության օրենքները, ապա արդյունքը պետք է համապատասխանի իրականությանը:

Անդրադառնալով փաստական ճշմարտության և հռետորության միջև եղած կապին, այդ հարցի լուծման բանալին գտնում ենք այն բնութագրման մեջ, որը Լենինը տվել է խոսքի ճկունությանը և այն դերին, որ նա հատկացրել է դրան մի դեպքում դիալեկտիկայի, մի այլ դեպքում՝ սոփեստության հետ առնչված: Ահա այդ սկզբունքային նշանակություն ունեցող մեկնաբանությունը. «Հասկացությունների համակողմանի, ունիվերսալ ճկունություն, մի ճկունություն, որ հասնում է հակադրությունների նույնության,— ահա՛ թե որն է էությունը: Այդ ճկունությունը՝ կիրառված սուբյեկտիվորեն, = էկլեկտիկայի և սոփեստության: **Օբյեկտիվորեն** կիրառված ճկունությունը, այսինքն՝ նյութական պրոցեսի բազմակողմանիությունը և նրա միասնությունն արտացոլող ճկունությունը, դիալեկտիկա է, աշխարհի հավիտենական զարգացման ճիշտ արտացոլում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 38, էջ 125—126):

Ամբողջ հարցը հանգում է այն բանին, թե հասկացությունների օբյեկտիվորեն գոյություն ունեցող ունիվերսալ ճկունությունն ինչպես է կիրառվում:

Լենինը բացատրում է, երբ այդ ճկունությունը կիրառվում է օբյեկտիվորեն, ապա հնարավոր է լինում ճիշտ արտացոլել շրջապատող

Այս ուղևորության ընթացքում Վ. Ի. Լենինն ուշադիր ուսումնասիրում է Արևմտյան Եվրոպայի բանվորական շարժումն ու մարքսիստական հեղափոխական գրականությունը, որը հնարավոր չէր ձեռք բերել ցարական Ռուսաստանում։

Ռուսաստան վերադառնալուց մի քանի ամիս անց, 1895 թ. դեկտեմբերի 9-ի գիշերը, ձերբակալվեցին Լենինը և «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միության» մյուս ղեկավարները։ Մի տարուց ավելի Լենինը մնաց բանտախցում։ 1897 թ. նրան աքսորեցին հեռավոր Սիբիր։

Մի քանի տարի անց, 1902 թ., Վ. Ի. Լենինը և Նադեժդա Կրուպսկայան գնում են Ֆրանսիա։ Լոգիվի քաղաքում՝ ծովափի հյուսիսային մասի փոքրիկ նավահանգստում նրանք վարձում են մի ձկնորսի բնակարան։ Շուտով նրանց մոտ են գալիս Լենինի մայրը և մեծ քույրը, որոնց նա երկար տարիներ չէր տեսել։ Բայց Վլադիմիր Իլյիչի անդորրը երկար չտևեց։ Շուտով նրան տեսնում ենք Փարիզում։ Վ. Ի. Լենինը հանդես է գալիս ռուս վտարանդիների առաջ և շարադրում «Искра»-ի ագրարային ծրագիրը։ Այդ ելույթը հիացրեց նրա կուսակցական մտերիմ ընկերներին, որ անդադար բացականչում էին. «Նա գերազանցեց իրեն»։

1903 թ. սկզբներին Վ. Ի. Լենինը Փարիզի բարձրագույն կուսակցական դպրոցում դասախոսություններ էր կարդում «Մարքսիստական հայացքները ագրարային հարցի մասին Եվրոպայում և Ռուսաստանում» թեմայով։

1903—1905 թթ. Վ. Ի. Լենինը Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական կուսակցության II և III համագումարների նախապատրաստման համար բազմիցս մեկնում է Լոնդոն, Ժնև, Բրյուսել։ Զարմանալի պարզորոշությամբ նա պաշտպանում է մարքսիզմի սկզբունքներին հավատարիմ հեղափոխական կուսակցության ստեղծման անհրաժեշտությունը։

Ֆրևիլը հանգամանորեն անդրադառնում է լենինյան «Искра»-ի ստեղծման հարցերին, թերթ, որը գաղտնի թափանցում էր ցարական միապետության սահմաններից ներս և մեծ դեր խաղաց ՌՍԴԲԿ II և III համագումարների կազմակերպման գործում։

1905 թ. ապրիլի 25-ից մայիսի 10-ը Լոնդոնում կայացած ՌՍԴԲԿ III համագումարից հետո Վ. Ի. Լենինը վերադառնում է Փարիզ և մի խումբ պատվիրակների հետ գնում «Կոմունարների պատի» մոտ, «Պեր-Լաշեզ», այցելում Լուվր, բարձրանում Էյֆելյան աշտարակը և հունիսի 6-ին, հրապարակավ, ռուս վտարանդիների առաջ հանդես գալիս ՌՍԴԲԿ III համագումարի աշխատանքի արդյունքների մասին զեկուցմամբ. համագումարում որոշում էր ընդունվել նախապատրաստվել զինված ապստամբության։

1905 թ. հունիսին «Պոտյոմկին» զրահանավը բարձրացրեց կարմիր դրոշը։ Նոյեմբերի սկզբներին անլեգալ էմիգրացիայից Պետերբուրգ է վերադառնում Վ. Ի. Լենինը։ Պետերբուրգում նա ղեկավարում է կուսակցության կենտրոնական կոմիտեի գործունեությունը, գլխավորում բոլշևիկյան «Новая жизнь» լեգալ թերթի աշխատանքները։

Փարիզում Անատոլ Ֆրանսը ողջունեց ռուսական հեղափոխությունը՝ որպես համընդհանուր հեղափոխության սկիզբ. «Նևայի, Վիսլայի, Վոլգայի ափերին այժմ վճռվում է նոր Եվրոպայի բախտը և մարդկության ապագան»։

Երկրորդ վտարանդիություն— Բոնիե փողոցից Մարի-Ռոզ փողոցը— այսպես է վերնագրված Լենինը Փարիզում գրքի երրորդ գլուխը։

1905—1907 թթ. ռուսական հեղափոխության պարտությունն աննկարագրելի ծանր ռեպրեսիաների նոր ալիք առաջացրեց։ Սոցիալ-դեմոկրատական կուսակցության պատգամավորները բանտարկվեցին, հետապնդվում էին կուսակցության գործիչները։

Վ. Ի. Լենինը Ֆինլանդիայում էր, ընդհատակում։ Ցարական ոստիկանությունը նրան փնտրում էր ամենուրեք։ Շուտով բոլշևիկյան կուսակցության Կենտկոմը որոշում է Վ. Ի. Լենինին ուղարկել արտասահման։ 1908 թ. դեկտեմբերին Վլադիմիր Իլյիչը Նադեժդա Կոնստանտինովնայի հետ Ժնևից տեղափոխվում է Փարիզ։

Հեղինակը նկարագրում է Վ. Ի. Լենինի կյանքը Փարիզում։ Ազգային գրադարանի թերթերից, ամսագրերից, գրքերից օգտվելու համար Վլադիմիր Իլյիչին հաջողվում է գրադարանի տոմս ձեռք բերել։ Այդ ժամանակ օտարերկրացիները գրադարանից օգտվելու համար պետք է ունենային դեսպանատան երաշխավորությունը. բայց, քանի որ Լենինի համար դա անհնար էր, նրան հարկավոր էին «պատվավոր վարչական անդամի» օգնությունն ու աջակցությունը։ Ռոբլեն՝ Նիևրի դեպուտատ-սոցիալիստը, գրեց Լենինին անհրաժեշտ նամակը։ Այդպիսով, Վլադիմիր Իլյիչը ծայրամասից, ուր նա էժան բնակարան էր վարձել, «Ազգային գրադարան» էր գալիս հեծանվով, կտրելով համարյա ողջ քաղաքը։ Այդ շատ ժամանակ էր խլում և բացասաբար էր անդրադառնում նրա աշխատանքի վրա։ Հանգստանալու համար Լենինը երբեմն աշխատում էր դուրս գալ քաղաքից։ 1909 թ. մարտին բոլշևիկյան ֆրակցիայի անդամ Միխայիլ Տումանովը Լենինին ծանոթացնում է «Յումանիտե» թերթի թղթակից Ժակ Նուվելի հետ։

Լենինն ակտիվ մասնակցում էր փարիզյան բոլշևիկյան խմբի աշխատանքներին, Բրետան և Դանտոն փողոցների մեծ դահլիճներում, Սենժերմեն այգում և Շուազի պողոտայում զեկուցումներ կարդում Ռուսաստանի քաղաքական դրության, Փարիզյան կոմունայի և այլ հարցերի մասին։ Նա մանրամասն ուսումնասիրում էր աշխատավոր Ֆրանսիայի կյանքը, մասնակցում բանվորական ժողովներին, հաճախում բանվորական շրջաններում գտնվող թատրոնները, ուր բեմադրվում էին կենտրոնում արգելված հեղափոխական պիեսներ։

Այդ ժամանակ Ֆրանսիայում մեծ հաջողություն ուներ առավել հայտնի երգիչ Գաստոն Մոնթեգյուն։ Վլադիմիր Իլյիչը և Նադեժդա Կոնստանտինովնան հաճախ լսում էին նրա ելույթները։ Նրա երգերն արծարծում էին սոցիալական սուր թեմաներ։ Վլադիմիր Իլյիչի խնդրանքով Մոնթեգյուին համերգի էին հրավիրում ռուս բանվորների ակումբները, ուր միասին զրուցում էին ապագա հեղափոխության մասին։

1910 թ. գարնանն անցկացված ընտրական կամպանիայի ժամանակ Լենինն ու Կրուպսկայան սիստեմատիկ մասնակցում էին միտինգներին ու ժողովներին, ուր հանդես էին գալիս ֆրանսիական սոցիալիստական կուսակցության մեծ հռետորներ Ժան Ժորեսը և Էդվարդ Մարի Վայանը։

Ուրախությամբ է Լենինը նշում կուսակցական գործիչների աճը բանվորական շրջաններից, հոգում նրանց քաղաքական պատրաստականության մասին։ Լենինը Փարիզում գրքի հեղինակը պատմում է, թե ինչպես 1911 թ. գարնանը Վլադիմիր Իլյիչը Փարիզի մոտ գտնվող Լոնժյումո վայրում կուսակցական դպրոց է կազմակերպում, որի ունկնդիրները կուսակցական խոշոր կազմակերպությունների ընդհատակյա բանվորներն էին։

Ֆրևիլը հուզմունքով ու ջերմորեն է պատմում հայ նշանավոր հեղափոխական «անզուսպ Կամոյի» մասին։ Այստեղ շարադրված է Կամոյի հեղափոխական գործունեությունը. նույնիսկ ամենասոսկալի տանջանքները չփշրեցին կովկասցի մարտիկի կամքն ու հեղափոխական ոգին։ Հեղինակը նկարագրում է նրա հանդիպումը Լենինի հետ, Ֆինլանդիայում։

1911 թ. վերջերին ֆրանսիական պրոլետարիատը կորցրեց իր լավագույն որդիներից մեկին՝ Պոլ Լաֆարգին։ Հեղինակը մեջբերում է Լաֆարգի՝ մահից առաջ գրած նամակը, ապա մանրամասն նկարագրում նրա և կնոջ՝ Լաուրայի— Մարքսի աղջկա, ողբերգական մահը։ Նրանց թաղման ժամանակ ՌՍԴԲԿ անունից հանդես է գալիս Լենինը։

Իր համառոտ, բայց բովանդակալից դամբանականում Լենինը նշում է մարքսիզմի գաղափարների տաղանդավոր տարածողներից մեկի՝ Լաֆարգի ծառայությունները։ Այդ գաղափարների դրոշի ներքո,— ասում է Լենինը,— համախմբվեց ռուս բանվորների առաջավոր ջոկատը և իր կազմակերպված մասսայական պայքարով հարված հասցրեց միապետությանը, պաշտպանեց սոցիալիզմի, հեղափոխության գործը։ Վերջացնելով խոսքը, Լենինը հավաստիացնում է, որ վախճանին է մոտենում բուրժուական պառլամենտարիզմի տիրապետության դարաշրջանը, «...որպեսզի իր տեղը զիջի մարքսիզմի գաղափարների ոգով կազմակերպված ու դաստիարակված պրոլետարիատի հեղափոխական ճակատամարտերի դարաշրջանին, պրոլետարիատի, որը կտապալի բուրժուազիայի տիրապետությունը և կհաստատի կոմունիստական հասարակարգ»։

Ժան Ֆրևիլը Վլադիմիր Իլյիչին կերտել է ո՛չ միայն որպես քաղաքական արտասովոր գործիչ, այլև որպես մարդամոտ, սքանչելի մարդ, խիստ զգայուն ու հոգատար ընկերների նկատմամբ։ «Նրա անսասան կամքը,— գրում է Ֆրևիլը,— սերտորեն կապված էր նրա բացառիկ մարդկայնության հետ»։

Այս ամենը հեղինակն արտացոլում է բազմաթիվ փաստերի ու նրա ժամանակակիցների հուշերի միջոցով։ Եթե Վ. Ի. Լենինը շատ բան ստացավ Ֆրանսիայից, ապա ինքն ավելի շատ տվեց նրան,— եզրափակում է հեղինակը։ «Ֆրանսիան նրա համար ո՛չ միայն Փարիզն էր և այնտեղ ծավալած իր գործունեությունը։ Մարդկության ժառանգության մեջ վիթխարի ավանդ ունեցող մեծ ազգի հեղափոխական ողջ անցյալն էր այն»։

**Մ. Ա. ՊԱՆԿՈ**

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ «ԻՍԿՐԱՆ»

*Կառավարող հաշվիչ մեքենաների Օռլովի գործարանը վերջերս սկսել է թողարկել սեղանի* «Искра—*II*» *հաշվիչ ապարատը, որը նախատեսված է պլանային-տնտեսական, հաշվային-վիճակագրական և ինժեներական հաշվարկների համար։ Այն տարեկան տալիս է մի քանի հազար ռուբլու խնայողություն։*

## ԽՈՂՈՎԱԿԱՀՈՐԱՏԻՉԸ

*Ադրբեջանի մերձքուռյան սարահարթում արդյունաբերական փորձարկման է ենթարկվում Միության մեջ առաջին ինքնատիպ խողովակահորատիչի նմուշը։ Այն ստեղծել է հորատող տեխնիկայի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտը։ Նոր հորատիչն իր նախորդների համեմատությամբ ունի օգտակար գործողության բարձր գործակից և հզորություն։*

## ՍԱՐՔԱՎՈՐՈՒՄ ՄԻԿՐՈԿԼԻՄԱՅԻ ՀԱՄԱՐ

*Մոզերի համաձուլվածքային-մեխանիկական գործարանը թողարկում է* ТГ—*150 մակնիշի ջերմագեներատորը, որը ավտոմատ կերպով ապահովում է պահանջվող ջերմային ռեժիմ։ Ջերմագեներատորը մեկ ժամում տաքացնում է 6 հազար խորանարդ մետր օդ։ Այն նախատեսված է անասնապահական ֆերմաների և ջերմոցների համար։*

## ԼՈՂԱՑՈՂ ՕԴԱՆԱՎԱԿԱՅԱՆՆԵՐ

*Օդային տրանսպորտի զարգացմանը զուգընթաց աճում է նորանոր օդանավակայանների պահանջը։ Ժամանակակից վիթխարի ինքնաթիռներին անհրաժեշտ է մոտ 5 կմ երկարությամբ վայրէջք-թռիչքային հրապարակ։ Ինժեներները վաղուց են խորհել այն մասին, թե ինչպես օգտագործել ծովի մակերեսը իբրև վայրէջք-թռիչքային հրապարակներ։*

*Անգլո-հոլանդական «Շելլ»-ը, անգլիական «Հարիս» և «Ստերլենդ» ֆիրմաների համագործակցությամբ նախագծել են լողացող օդանավակայան՝ երկու վայրէջք-թռիչքային հրապարակներով։ Այն կկառուցվի Թեմզայի գետաբերանում, հինգ տարում։*

*«Շելլ» ֆիրմայի նախագծով տախտակամածի մոնտաժումը կատարվելու է խոշոր սնամեջ երկաթբետոնե բլոկներից, որոնք զանազանվում են ցամաքայինից։ Այնուհետև դրանք կմիացվեն մետաղյա ամրակներով. հսկա խարիսխների սիստեմը լողացող տախտակամածը պահելու է անշարժ վիճակում։*

*Լողացող օդանավակայանի ընդհանուր մակերեսը ավելի քան չորս միլիոն քառակուսի մետր է։*

## ՋԲՈՍԱՅԳԻ ԾՈՎԻ ՀԱՏԱԿՈՒՄ

*Ճապոնիայի Գոսասիմուձու քաղաքից ոչ-հեռու, Նիկոկու կղզու ծայրամասում նախատեսվում է կառուցել ստորջրյա զբոսայգի, որը կլինի աշխարհում առաջինը։ Ծովի հատակում այն կզբաղեցնի 30 հեկտար տարածություն։ Շինարարության համար ընտրված տեղամասը աչքի է ընկնում հազվադեպ գեղեցկությամբ, ուր վիթխարի ժայռերը շեշտակի կտրվածքով սուզվում են ծովի ջրերում։ Ջուրն այստեղ այնքան խաղաղ է ու թափանցիկ, որ հատակը տեսանելի է զգալի խորության վրա։ Առափնյա ֆլորան ու ֆաունան խիստ բազմազան է։*

*«Տայսեյ կոնստրակշն» կոմպանիան ստանձնել է այդ զբոսայգու կառուցումը, որը լինելու է խողովակաձև մի թունել գերամուր ապակուց և երկաթբետոնից։ Վերջինս ծովի հատակում կպահվի խարիսխների օգնությամբ։ Անջրանցիկ միջնորմներով թունելը կբաշխվի սեկցիաների։*

*Զբոսայգին կառուցվելու է հինգ տարում։ Հատուկ սարքավորված օվկիանոսագիտական նավի օգնությամբ սկսվել է ապագա շինարարության տեղանքի հետազոտությունը։*